## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание









# ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն Սովետի նախագահությունում և ՍՍՀՄ Մինիստրների Սովետում

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՖԵԴԵՐԱՏԻՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը քննարկեցին ֆեդերալ կանցլեր Վիլլի Բրանդտի հրավերով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամ ընկեր Լ. Ի. Բրեժնևի Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցի արդյունքները, լիովին հավանություն տվեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը և ԳՖՀ կատարած նրա այցի քաղաքական արդյունքներին, որոնք միջազգային կարևոր նշանակություն ունեն:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցը ամրապնդում է շրջադարձը այն պետությունների հետ ունեցած հարաբերություններում, որոնց հետ դեռ ոչ հեռավոր անցյալում գրեթե բոլոր խոշոր միջազգային հարցերում մենք կանգնած էինք հակադիր բևեռներում, ամրապնդում է շրջադարձը դեպի Սովետական Միության և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության նոր, խաղաղ ժամանակների համար նորմալ հարաբերություններն ու փոխշահավետ համագործակցությունը:

Շարունակելով այն գիծը, որ սահմանվել է Մոսկվայի 1970 թվականի պայմանագրով և մեկ տարի հետո Օրեանդայում ձեռք բերված պայմանավորվածությամբ, կանցլեր Վ. Բրանդտի հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի վարած բանակցությունները, այցի ժամանակ ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև ստորագրված համաձայնագրերը, այցի արդյունքների վերաբերյալ կողմերի համատեղ հայտարարությունը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության լավ հարաբերությունների ու բարիդրացիական համագործակցության նոր հեռանկարներ են բաց անում ի շահ խաղաղության: Դա լիովին վերաբերում է նաև երկու երկրների տնտեսական կապերին, արդյունաբերական, տեխնիկական ու կուլտուրական համագործակցությանը երկարաժամկետ հիման վրա:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը գոհունակությամբ նշում են, որ ընկեր Լ. Ի. Բրեժնևի այցի ընթացքում ԳՖՀ-ի կառավարության հետ մի շարք կարևոր հարցերի քննարկումը ընթացել է կոնստրուկտիվ ոգով: Նրանք բարձր են գնահատում այն, որ ընկեր Լ. Ի. Բրեժնևի այցի ժամանակ ԳՖՀ-ի հասարակայնության լայն շրջանները բարի զգացմունքներ արտահայտեցին սովետական պետության և սովետական ժողովրդի նկատմամբ:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցը, հանդիսանալով ՍՄԿԿ-ի և սովետական պետության արտաքին քաղաքական կուրսի ռեալ իրականացումը, մեծ նշանակություն ունի Եվրոպայում լարվածության մեղմացման, խաղաղության և մայրցամաքի բոլոր ժողովուրդների անվտանգության ամրապնդման ուղիով հետագա հաջող առաջընթացի համար: Այդ ուղղությամբ սոցիալիստական համագործակցության երկրների հետևողական, նպատակասլաց քաղաքականությունը, ԳՖՀ-ի և Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Լեհական Ժողովրդական Հանրապետության և մյուս սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների նորմալացման պրոցեսը Սովետական Միության և Ֆրանսիայի կոնստրուկտիվ, ամրապնդվող համագործակցությունը միջազգային քաղաքականության մի շարք հարցերում, այդ թվում՝ Եվրոպայի անվտանգության հարցերում, Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարության հետ ձեռք բերված փոխըմբռնումը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցի դրական արդյունքները՝ այս ամենը կարևորագույն օղակներն են այն պայքարի, որ մղվում է հանուն լարվածության հետագա մեղմացման, անվտանգության ամրապնդման և կայուն խաղաղության, որի ապահովումը հիրավի պատմական նշանակություն կունենար:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցի արդյունքները նոր, համոզիչ վկայությունն են պետությունների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականության հաղթանակի, անկախ նրանց հասարակական կարգից, քաղաքականություն, որն արդի փուլում իր առավել լիակատար արտացոլումն է գտել ՍՄԿԿ XXIV համագումարի և կուսակցության Կենտկոմի ապրիլյան պլենումի հավանությանն արժանացած խաղաղության ծրագրում: Հենց դրա համար էլ այդ այցի արդյունքները բարձր են գնահատում սովետական ժողովուրդը, սոցիալիզմի երկրները, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժումը, բոլոր երկրների խաղաղասեր և առաջադեմ ուժերը:

# ՀՕԳՈՒՏ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ

*Սովետական մարդկանց, ամբողջ աշխարհի հասարակայնության լայն շրջանների ուշադրությունը այս օրերին բևեռված էր ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամ Լ. Ի. Բրեժնևի մայիսի 18—22-ը Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցին: Այցն ամրապնդում է ԳՖՀ-ի հետ ՍՍՀՄ-ի հարաբերություններում եղած շրջադարձը դեպի նոր, խաղաղ ժամանակների համար նորմալ հարաբերություններ և փոխշահավետ համագործակցությունը:*

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը, քննարկելով այցի արդյունքները, լիովին հավանություն տվեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը և ԳՖՀ կատարած նրա այցի քաղաքական արդյունքներին, որոնք միջազգային կարևոր նշանակություն ունեն:*

*Շարունակելով Մոսկվայի 1970 թվականի պայմանագրով և մեկ տարի հետո Օրեանդայում ձեռք բերված պայմանավորվածությամբ սահմանված գիծը, կանցլեր Վ. Բրանդտի հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի վարած բանակցությունները, այցի ժամանակ ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև ստորագրված համաձայնագրերը, այցի արդյունքների վերաբերյալ կողմերի համատեղ հայտարարությունը ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի լավ հարաբերությունների ու բարիդրացիական համագործակցության նոր հեռանկարներ են բաց անում: Դա լիովին վերաբերում է նաև երկու երկրների տնտեսական կապերին, արդյունաբերական, տեխնիկական և կուլտուրական համագործակցությանը տևական հիման վրա:*

*Ինչպես նշում են ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ընկեր Լ. Ի.*

Բրեժնևի ԳՖՀ կատարած այցի արդյունքները նոր համոզիչ վկայությունն
են պետությունների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականու-
թյան հաղթանակի, անկախ նրանց հասարակարգից, քաղաքականու-
թյուն, որն արդի փուլում իր առավել լիակատար արտահայտությունն է
գտել ՍՄԿԿ XXIV համագումարի և կուսակցության Կենտկոմի ապրիլյան
պլենումի հավանությանն արժանացած խաղաղության ծրագրում։ Սովե-
տական Միության լենինյան արտաքին քաղաքական կուրսը, որը բխում
է մեր սոցիալիստական հասարակարգի բուն էությունից, համապատաս-
խանում է բոլոր ժողովուրդների կենսական շահերին։

Խաղաղության գաղափարների, սոցիալիզմի հեղինակության և միջ-
ազգային ազդեցության անշեղ աճը անխզելիորեն կապված է սոցիալիս-
տական պետությունների ամրակուռ դաշինքի գոյության հետ։ Միասնու-
թյունը, համախմբվածությունը, եղբայրական համագործակցությունը
սոցիալիզմի երկրներին օգնում են հաջողությամբ լուծելու նրանց առջև
ծառացած խնդիրները, պաշտպանելու մարդկությանն այնքան անհրա-
ժեշտ խաղաղությունը, կայունացնելու միջազգային լարվածության մեղ-
մացումը։ Սովետական Միության, սոցիալիստական համագործակցու-
թյան մյուս երկրների խաղաղասիրական արտաքին քաղաքականությու-
նը, միջազգային ասպարեզում նրանց համաձայնեցված գործողություն-
ները եղել ու մնում են համաշխարհային ասպարեզում իրադրության
դրական փոփոխությունների կարևորագույն գործոնը։

Սովետական Միության և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետու-
թյան փոխըմբռնման ու համագործակցության նոր աստիճանը, որը ձեռք
է բերվել Լ. Ի. Բրեժնևի և ԳՖՀ-ի ֆեդերալ կանցլեր Վ. Բրանդտի բա-
նակցությունների շնորհիվ, լիովին համապատասխանում է արդի միջազ-
գային դրության զարգացումը կանխորոշող միտումներին։ Ինչպես նշ-
վում է համատեղ հայտարարության մեջ, «զրույցներն անցան անկեղծ
ու գործարար մթնոլորտում, փոխըմբռնման ոգով, որը համապատաս-
խանում է երկու երկրների հարաբերությունների բնույթին»։ Բանակցու-
թյունները նպաստեցին երկու պետությունների համագործակցության
ոլորտի ընդլայնմանը։ Կողմերը արտահայտեցին իրենց վճռականությու-
նը՝ հետևողականորեն ձգտել բարելավելու և է՛լ ավելի զարգացնելու սո-
վետա-արևմտագերմանական կապերը, ապագայում նույնպես օգտագոր-
ծելով այնպիսի մի կարևոր ձև, ինչպիսիք են երկու երկրների ղեկավար
գործիչների հանդիպումներն ու կարծիքների փոխանակումը։ Սովետա-
կան մարդիկ բարձր են գնահատում ընկեր Լ. Ի. Բրեժնևի այցի ժամա-
նակ սովետական պետության և սովետական ժողովրդի նկատմամբ
ԳՖՀ-ի հասարակայնության լայն շրջանների արտահայտած բարի զգաց-
մունքները։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի այցը ԳՖՀ ՍՄԿԿ-ի և սովետական պետության



արտաքին քաղաքական կուրսի ռեալ իրականացումն է և մեծ նշանակու-
թյուն ունի լարվածության մեղմացման ուղիով հետագա հաջող առաջըն-
թացի, Եվրոպայի բոլոր ժողովուրդների անվտանգության ու խաղաղու-
թյան ամրապնդման համար։ Այդ ուղղությամբ սոցիալիստական համա-
գործակցության երկրների վարած հետևողական, նպատակասլաց քաղա-
քականությունը, ԳՖՀ-ի և ԳԴՀ-ի, ԳՖՀ-ի և ԼԺՀ-ի, մյուս սոցիալիստա-
կան երկրների հարաբերությունների նորմալացման պրոցեսը, Սովետա-
կան Միության և Ֆրանսիայի կոնստրուկտիվ, ամրապնդվող համագոր-
ծակցությունը, միջազգային քաղաքականության մի շարք հարցերի, այդ
թվում և Եվրոպայի անվտանգության հարցերի շուրջը ԱՄՆ-ի կառավա-
րության հետ ձեռք բերված փոխըմբռնումը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ
կատարած այցի դրական արդյունքները՝ այդ ամենը լարվածության հե-
տագա մեղմացման, անվտանգության ու կայուն խաղաղության ամրա-
պնդման պայքարի կարևորագույն օղակներն են, խաղաղություն, որի
ապահովումը հիրավի պատմական նշանակություն կունենար։

Բոննի բանակցությունների ընթացքում միջազգային պրոբլեմները
քննարկելիս երկու կողմերը գոհունակությամբ ընդգծեցին, որ Եվրոպա-
յում լարվածությունը մեղմացնելու պրոցեսում զգալի առաջընթաց է
ձեռք բերված։ «Եվրոպայի պետությունների անվտանգությունն ու խա-
ղաղ համագործակցությունը ապահովելու ժողովուրդների ձգտումը,—
ասել է Լ. Ի. Բրեժնևը, ելույթ ունենալով մայիսի 21-ին Բոննում կազմա-
կերպված ընդունելության ժամանակ,— ներկայումս իր կոնկրետ ար-
տահայտությունն է գտնում մասնավորապես համաեվրոպական խորհըր-
դակցության նախապատրաստման մեջ։ Խոսքն այն մասին է, որպեսզի
կոլեկտիվ ջանքերով մշակվի սկզբունքների հանրաճանաչ հուսալի սիս-
տեմ, որն օգնի հիրավի հանգիստ իրադրություն ստեղծելու մեր մայր-
ցամաքում, եվրոպացիներին հնարավորություն ընձեռի ապագային վըս-
տահ նայելու ոչ թե տարիներով, այլ մի ամբողջ պատմական դարաշըր-
ջանով»։

Բանակցություններում կարևոր տեղ գրավեցին անվտանգության ու
համագործակցության հարցերին նվիրված համաեվրոպական խորհրդակ-
ցության նախապատրաստման և անցկացման պրոբլեմները։ ՍՍՀՄ-ը և
ԳՖՀ-ն վճռականություն հայտնեցին նպաստելու այդ խորհրդակցության
հաջողությանը՝ Եվրոպայի խաղաղության, անվտանգության ու համա-
գործակցության համար կայուն հիմքեր ստեղծելու նպատակով։ Նաև
կարծիքներ փոխանակվեցին Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի
ու սպառազինությունների փոխադարձ կրճատման հետ կապված հարցե-
րի շուրջը։

Ժամանակի առումով կարճատև, բայց քաղաքական մեծ բովանդա-
կությամբ հագեցած այցն ավարտված է։ Սովետական ժողովուրդը, սո-

ցիալիզմի երկրները, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժումը, բոլոր երկրների խաղաղասեր և առաջադեմ ուժերը բարձր են գնահատում Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցի արդյունքները։ Միահամուռ հավանություն տալով այդ արդյունքներին, սովետական մարդիկ հայտարարում են, որ իրենք լիովին պաշտպանում են հարազատ կուսակցության լենինյան արտաքին քաղաքականությունը, պատրաստ են բոլոր ուժերը նվիրելու ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարմանը, խաղաղության ամրապնդման ազնիվ գործին։

(«ՊՐԱՎԴԱՅԻ» մայիսի 26-ի առաջնորդողը)

ՊԼԵՆՈՒՄԸ ԼԻԱԿԱՏԱՐ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆ Է ՀԱՅՏՆՈՒՄ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ ԶԵԿՈՒՅՄԱՆ ՄԵՋ ՏՐՎԱԾ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅԱՆԸ ԵՎ ԸՆԴԳԾՈՒՄ Է ՍՄԿԿ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌԻ ԱՅՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՀՐԱՏԱՊՈՒԹՅՈՒՆԸ, ՈՐՈՆՔ ԱՌԱՋ ԵՆ ՔԱՇՎԵԼ ԶԵԿՈՒՅՄԱՆ ՄԵՋ։

ՍՄԿԿ-Ի ԱԿՏԻՎ, ՆԱԽԱՁԵՌՆՈՂ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ, ՈՐԸ ՀԵՆՎՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ՈՒԺԻ ՈՒ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅԱՆ ՎՐԱ, ՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՋԱԿՑՈՒԹՅԱՆ ՎՐԱ, ՆՊԱՍՏՈՒՄ Է ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՏԵՂԻ ՈՒՆԵՑՈՂ ԴՐԱԿԱՆ ՏԵՂԱՇԱՐԺԵՐԻՆ։ ԶԳԱԼԻՈՐԵՆ ԱՄՐԱՊՆԴՎԵԼ ԵՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԴԻՐՔԵՐՆ ՈՒ ՆՐԱՆՑ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ, ՄԵԾԱՑԵԼ Է ՆՐԱՆՑ ՀԱՄԱՁԱՅՆԵՑՎԱԾ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆԹԱՑՔԻ ՎՐԱ, ԼԱՅՆ ՃԱՆԱՉՈՒՄ ԵՆ ՍՏԱՑԵԼ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ ՈՐՊԵՍ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՏԱՐԲԵՐ ԿԱՐԳԵՐԻ ՊԱՏԿԱՆՈՂ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆՈՐՄԱՆԵՐ, ՇՐՋԱԴԱՐՁ Է ԿԱՏԱՐՎՈՒՄ «ՍԱՌԸ ՊԱՏԵՐԱԶՄԻՑ» ԴԵՊԻ ԼԱՐՎԱԾՈՒԹՅԱՆ ՄԵՂՄԱՑՈՒՄ։ ԴԱԴԱՐԵՑՎԱԾ Է ՎԻԵՏՆԱՄԻ ԴԵՄ ՈՒՂՂՎԱԾ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԳՐԵՍԻԱՆ։

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1973 Թ. ԱՊՐԻԼՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԻՑ*

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԸՆԴԴԵՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ «ՄՈԴԵԼՆԵՐԻ» ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ

**Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ**

*Վերջին ժամանակներս բուրժուական գաղափարախոսներն ավելի ու ավելի հաճախ են արծարծում այսպես կոչված «սոցիալիզմի մոդելների» հարցը։ Այս տեսությունը, որ 60-ական թվականներին ծնունդ առավ ռևիզիոնիստների միջավայրում, անմիջապես որդեգրեցին կոմունիստական շարժման շատ հակառակորդներ՝ սկսած կապիտալիստական երկրների ամենառեակցիոն, միլիտարիստական շրջաններից մինչև լիբերալիզմի թիկնոց կրող համալսարանական պրոֆեսորներն ու «ձախ» ռադիկալները։*

*Սոցիալիզմի «մոդելների» բուրժուական և ռեֆորմիստական տեսաբանների հայացքների միջև կան երևութական որոշ տարբերություններ։ Բուրժուական քաղաքագետներն ու սոցիոլոգները, «կրեմլագետներն» ու «սովետոլոգները» սոցիալիզմի զանազան «մոդելները» դիտում են իբրև առանձինառանձին վերցրած սոցիալիստական երկրների հետ ունեցած հարաբերություններում «փոսեր փորելու», «դանդաղ հեղափոխություն» սկսելու, սոցիալիզմ կառուցող ժողովուրդների աչալրջությունը բթացնելու, ի վերջո, այդ երկրներում կապիտալիստական կարգերը վերականգնելու միջոց։ Ըստ էության նույն նպատակն են հետապնդում նաև ռևիզիոնիստները, որոնք, սակայն, հանդես են գալիս իրական սոցիալիզմը «բարելավելու» և այն «մարդասիրական դարձնելու» դեմագոգիկ կոչերով։*

*Սոցիալիզմի «մոդելների» բուրժուական մեկնաբանները տենդագին ուսումնասիրում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների տնտեսական հարաբերությունները, նպատակ ունենալով իրենց դիրքերից գնահատել սոցիալիզմի տնտեսական օրենքները, սոցիալիստական տնտեսության պլանայնությունը, ապրանքա-դրամական հարաբերությունները, սոցիալիստական վերարտադրության առանձնահատկությունները։*

*Սոցիալիստական իրականությունն ուսումնասիրող բուրժուական տեսաբանները, իբրև կանոն, ամեն քայլափոխի ցուցադրում են նոր հասարակարգի տնտեսական օրինաչափություններն ըմբռնելու իրենց անկարողությունը։ Նրանց ձևակերպումները, բնութագրություններն ու եզրակացություն-*

ները հիմնված չեն իրականության կենդանի փաստերի զգաստ հաշվառման ու մանրակրկիտ վերլուծության վրա, ինչպես նաև արդյունք չեն գիտական աբստրակցիայի։ Դրանք, ընդհակառակը, խարսխված են նախապես կազմված դեղատոմսերի վրա, որոնք գրվել են բուրժուական վոլյունտարիզմի ոգով և հրապարակ նետվել իբրև ապրիորի հաստատումներ։ Մոնոպոլիաների թելադրանքով վերջիններս մի գլխավոր ուղղություն ունեն՝ դատապարտել սոցիալիզմի պրակտիկան, խեղաթյուրված ու կեղծված ներկայացնել սոցիալիստական երկրների զարգացման օրինաչափությունները, այն երևույթները, որոնք ծնունդ են սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացի ու դրա սոցիալական արդասիքների։

Ժամանակակից կոմունիզմը ոչ թե մոնոլիտ, այլ «դեմոնոլիտ» է,— հայտարարում է Նյու-Յորք նահանգի Իտակա քաղաքի կոլեջի դասախոս Էնդրյու Էզերգայլիսը (տե՛ս Коммунист, № 11, 1970, стр. 99)։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, դուրս գալով իր երբեմնի ընդհանուր թվացող հունից, բազմաթիվ ճյուղավորումներով «հեռանում է դոկտրինայից»,— գրում է ամերիկյան պատմաբան ու սոցիոլոգ Լուիս Արագոնը։ Բացահայտ հակակոմունիստների այս դատողություններից ոչնչով չեն տարբերվում ռևիզիոնիստների հաստատումները։ Հարավսլավական ռևիզիոնիստ Գ. Պետրովիչը նշում է. «Այսպես կոչված՝ «սոցիալիստական միասնությունը» անխուսափելիորեն տեղի է տալիս ազատական հովերին» (Revolutionare Praxis. Jugoslawischer Marxismus der Gegenwart Hrsg. G. Petrovic. Freiburg, 1969, S. 17)
Հարավսլավական ռևիզիոնիստների միջավայրում է ձևակերպվել նաև այն տեսակետը, թե ժամանակակից սոցիալիստական շարժման մեջ գոյություն ունեն երկու հակադիր ուղղություններ՝ բյուրոկրատական էտատիզմ և դեմոկրատական ինքնավարություն։ Իսկ Ֆրանսիայի կոմկուսի շարքերից հեռացված Ռոժե Գարոդին այն միտքն է հայտնում, թե սոցիալիստական այնպիսի երկրներ, ինչպիսիք են՝ Չեխոսլովակիան, Հունգարիան, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, Հարավսլավիան, իրենց դեմոկրատական տրադիցիաներով, «մարդասիրական հասարակություն» ստեղծելու իրենց խնդիրներով ավելի մոտ են կանգնած կապիտալիստական Ֆրանսիային, Անգլիային կամ Ավստրիային, քան «սոցիալիստական Մոսկվային» (R. Garady. Marxismus in: 20 Jahrundert, Hamburg, 1969, S. 112)։

Սոցիալիզմի պրակտիկայի պլյուրալիստական մեկնաբանության, ասել է, թե՝ սոցիալիզմի «մոդելների» բազմավարիանտության տեսության առանցքը նրա հեղինակների խեղաթյուրված պատկերացումն է «սոցիալիզմի սովետական մոդելի» մասին։

«Սովետական մոդելի» ռևիզիոնիստ մեկնաբանները հատկապես լայնորեն են պրոպագանդում Լենինի կողմից մարքսիզմը ռուսիֆիկացնելու կեղծ թեզը։ Լենինիզմի դեմ պայքարի այդ մեթոդը, ինչպես հայտնի է, հին պատմություն ունի։ Հիշենք, թե ինչպես Երկրորդ ինտերնացիոնալի մի շարք առաջնորդներ ժամանակին բոլշևիզմը համարում էին «զուտ ռուսական» երևույթ, իսկ սովետական երկրում սոցիալիզմի կառուցումը դիտում իբրև «ռուսական կամ բոլշևիկյան փորձարարություն»։

Մարքսիզմի «ռուսիֆիկացման» գաղափարը լայնորեն պրոպագանդում են ժամանակակից ռևիզիոնիզմի առավել աչքի ընկնող այնպիսի ներկայացուցիչներ, ինչպիսիք են՝ Ա. Լեֆևրը, Ռ. Գարոդին, Լ. Կոլակովսկին, Է. Ֆիշերը, Ֆ.



Մարեկը, Օ. Շիկը, Կ. Կոսիկը, Յու. Ստրինկան, Գ. Պետրովիչը, Ս. Ստոյանովիչը, Ռ. Խավերմանը և ուրիշներ, որոնք բոլորն էլ հեռացված են կոմունիստական կուսակցությունների շարքերից։

Ելնելով այն բանից, որ սոցիալիզմի ուղին թևակոխած երկրները դրսևորում են զարգացման տարբեր ձևեր, ժամանակակից ռևիզիոնիստները առաջ են քաշում սկզբունքորեն միմյանցից տարբեր «սոցիալիզմի մոդելների» ըստեղծման պահանջ։ Նրանք խոսում են արևմտյան և արևելյան սոցիալիզմի, եվրոպական, ասիական, լատինաամերիկյան, սովետական և չինական, չեխոսլովակյան և ֆրանսիական «սոցիալիստական հասարակության տարբերակների» մասին։ Ռեալ սոցիալիզմը նրանք տրոհում են տարբեր մասերի, ելնելով ազգային և ռեգիոնալ հատկանիշներից։ Ավելին, ռևիզիոնիստները սոցիալիզմը դասակարգում են ըստ տնտեսության ղեկավարման ձևերի, հասարակության և անհատի միջև եղած փոխհարաբերությունների բնույթի և այլն։

Այդ ամենով նրանք սոցիալիզմը «հարստացնում են» «էթնիկական», «ինքնակառավարման» կամ «շուկայական» սոցիալիզմի տարատեսակներով, «բյուրոկրատական» և «դեմոկրատական», «հումանիստական» ու «հակահումանիստական» մոդելներով։

«Դեմոկրատական» կամ «մարդասիրական» սոցիալիզմի ռևիզիոնիստական մոդելը իր տեսական ու քաղաքական բովանդակությամբ ռեալ սոցիալիզմի «սոցիալ-դեմոկրատացման» մի փորձ է։ Այն հիմնվում է դասակարգային խաղաղության վերաբերյալ սոցիալ-դեմոկրատական պատկերացումների և այն կեղծ պատրանքների վրա, թե կարելի է սոցիալիզմ կառուցել բուրժուական ձևական դեմոկրատիայի միջոցներով ու մեթոդներով։ Ժամանակակից ռևիզիոնիստների վերացական հումանիզմի միակ արդյունքը ռեալ գոյություն ունեցող սոցիալիզմի հասցեին նիհիլիստական կրիտիցիզմն է։ «Ամբողջական մարդու» ստեղծման և «մարդասիրական աշխարհ» կառուցելու մասին նրանց պաթետիկ կոչերը օբյեկտիվորեն ծառայում են իմպերիալիստական ռեակցիային։

Ռևիզիոնիզմի սոցիալ-քաղաքական ֆունկցիաները չեն կարող դիտվել սոցիալիզմի և իմպերիալիզմի միջև տեղի ունեցող անզիջում պայքարից մեկուսի։ Ինչպես «հին» ռևիզիոնիզմը, այնպես և ժամանակակից, «նոր» ռևիզիոնիզմը բանվորական շարժման վրա բուրժուական ազդեցության փոխանցող ուժ է։ Այս բնութագրումը, որը նախկինում միանգամայն ճիշտ էր արտահայտում ռևիզիոնիզմի էությունը, այժմ թերի է։ Բանն այն է, որ ժամանակակից ռևիզիոնիզմը գրոհում է նաև ռեալ գոյություն ունեցող սոցիալիզմի վրա, ձգտում թուլացնել իշխանության գլուխ անցած բանվոր դասակարգին, խլել նրա քաղաքական կազմակերպությունների միասնությունը, մթագնել աշխատավորների զգոնությունն ու սոցիալիստական գիտակցությունը։

Իսկ սոցիալիստական համագործակցության դեմ ի՞նչ հիմնական ուղղություններով են հարձակումներ գործում պլյուրալիզմի և «սոցիալիզմի մոդելների» քարոզիչները, կոնվերգենտիստները և ռևիզիոնիստները։

Հանդես գալով «մարդասիրական սոցիալիզմի» պահանջով, պլյուրալիստներն ու ռևիզիոնիստները, ամենից առաջ, իրենց գրոհների թիրախ են դարձնում սոցիալիստական երկրներում կառավարման դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները, դեմագոգիկ փորձեր անում նույնացնելու դեմոկրատական ցենտրալիզմը բյուրոկրատական ցենտրալիզմին։ Նրանց երազանքն

է՝ «տանելի դարձնել» սոցիալիստական պետական իշխանությունը, մեղմացնել պրոլետարիատի դիկտատուրան, վերացնել կենտրոնացված պետական պլանավորումը։ Ռևիզիոնիստներից ոմանք, ավելի հեռուն գնալով, պահանջում են սոցիալիստական պետականության անմիջական մահ։ Սոցիալիզմը «շտկելու», «կատարելագործելու» համար նրանք առաջարկում են իրականացնել տխրահռչակ «լիբերալիզացիա», այսինքն՝ սոցիալիզմի «սահում» դեպի կապիտալիզմ, վերջին հաշվով, սոցիալիստական երկրների վերասերում կապիտալիզմի ճանապարհով։

Քաղաքական պլյուրալիզմի և սոցիալիզմի «մոդելների» մշտական հարձակումների օբյեկտ են սոցիալիստական երկրներում իշխանության գլուխ կանգնած բանվոր դասակարգի մարքսիստական-լենինյան կուսակցությունները։

Ժխտելով սոցիալիստական երկրներում կոմունիստական կուսակցությունների ղեկավար դերի անհրաժեշտությունը, քաղաքական պլյուրալիզմի ջատագովները հանդես են գալիս այնտեղ բազմակուսակցական սիստեմ հաստատելու պահանջով։ Նրանք գտնում են, որ սոցիալիստական երկրներում կարելի է այնպիսի սիստեմ ստեղծել, որտեղ տարբեր կուսակցություններից և ոչ մեկը հասարակական կյանքում չունենա ղեկավար դեր, կամ, ընդհակառակը, բոլորը հավասարապես ղեկավար դերում լինեն։ Քաղաքական պլյուրալիզմի կողմնակիցներից ոմանք էլ կարծում են, թե առանձին սոցիալիստական երկրներում կան անհրաժեշտ բոլոր պայմանները նոր կուսակցությունների ստեղծման համար։

Կյանքը, սոցիալիզմի երկրների զարգացման տենդենցները ցույց են տալիս, սակայն, որ այնտեղ գոյություն ունեցող բազմակուսակցական սիստեմը, ի վերջո, պետք է վերանա։ Դա տեղի կունենա այն բանից հետո, երբ այդ երկրների գյուղացիությունը և հասարակական մյուս շերտերը կընդունեն բանվոր դասակարգի գաղափարախոսությունը և լիովին կանգնեն նրա դիրքերը։ Այսինքն՝ կվերանան ոչ-կոմունիստական կուսակցությունների գոյության պայմանները և նրանք անխուսափելիորեն կթողնեն պատմական ասպարեզը։

Սակայն համոզվելով, որ անհավանական է սոցիալիստական երկրներում մարքսիստական-լենինյան կուսակցությունների քաղաքական պլատֆորմը չընդունող նոր կուսակցությունների երևան գալը, պլյուրալիզմի, հատկապես ռևիզիոնիստական գործիչներից շատերը ստիպված են չափավոր պահանջներ առաջադրել։ Նրանք դեմ չեն, որ սոցիալիստական հասարակության մեջ մարքսիստական-լենինյան կուսակցություններն առաջատար դեր ունենան, բայց պայմանով, եթե այն տարածվի միայն մարդկային հոգևոր գործունեության բնագավառը, որ այդ կուսակցությունները չմիջամտեն տնտեսության կառավարման գործերին։ Այլ խոսքով, նրանք պահանջում են, ինչպես արտահայտվել է Գ. Պետրովիչը, կոմունիստական կուսակցությունը վերափոխել «հոգևոր ավանդարդի»։

Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության մյուս երկրների զարգացման փորձը վկայում է, որ առանց կոմունիստական կուսակցության ամենօրյա ղեկավարության անհնարին է արմատապես լուծել տնտեսական կարևոր ու բարդ խնդիրները։

Կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական հասարակարգի այն ուժն է, որն ունակ է ժամանակին բացահայտելու հակասությունները և լու-



ծելու ստեղծված հանգույցները։ Որքան էլ կազմակերպված է ընթանում սոցիալիստական հասարակության զարգացումը, դրա ճանապարհին, այնուամենայնիվ, ծառանում են բազմաթիվ բարդություններ, որոնք պայմանավորված են այդ հասարակարգի ոչ անտագոնիստական հակասություններով։ Կանխատեսելով նմանօրինակ հակասությունները, մարքսիստական-լենինյան կուսակցություններն անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկում, որպեսզի դրանք հաղթահարվեն ժամանակին և արագանա սոցիալիստական հասարակության զարգացումը։

Այս ամենից հետևում է, որ հակառակ մարքսիստական-լենինյան կուսակցությունների ղեկավար դերի թուլացման վերաբերյալ սոցիալիզմի «մոդելների» քարոզիչների և ամեն կարգի պլյուրալիստների կանխագուշակումների, այդ կուսակցությունների առաջատար դերը ավելի ու ավելի է մեծանում. այն եղել և մնում է որպես նոր հասարակարգի կառուցման հիմնական ու անհրաժեշտ նախապայման։

Սոցիալիզմի բազմավարիանտության ստեղծման ճանապարհին սոցիալիստական համագործակցության հակառակորդների համար հիմնական խոչընդոտներից մեկը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքն է։ Ահա թե ինչու նրանք հարձակվում են այդ սկզբունքի վրա, ճգնում խարխլել բանվոր դասակարգի և սոցիալիստական երկրների միասնությունը։

Սոցիալիզմի կառուցման մեթոդներն ու ձևերը որքան էլ տարբերվեն միմյանցից, դրա իսկ կառուցման պրոցեսում երևան են գալիս ու որոշ ժամանակ պահպանվում են ընդհանուր օրինաչափություններ, որոնք այս կամ այն ձևով հատուկ են սոցիալիստական հեղափոխություն իրականացրած բոլոր երկրներին։ Հասարակական պրակտիկան լիովին հաստատել է այն ճշմարտությունը, որ անցումը սոցիալիզմին անհնար է առանց դասակարգային պայքարի, առանց մինչսոցիալիստական հետադեմ կարգերի տապալման ու պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման, որը ոչ այլ ինչ է, եթե ոչ ամենաիսկական դեմոկրատիա բնակչության հսկայական մեծամասնության, աշխատավոր ողջ ժողովրդի համար։ Սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները դրսևորվում են նաև այլ ձևերով։ Սոցիալիզմին անցնելու համար անհրաժեշտ է ջարդել հին պետական մեքենան, ճնշել շահագործողների դիմադրությունը։ Սոցիալիզմի մասին խոսք լինել չի կարող, եթե արտադրության գործիքների ու միջոցների նկատմամբ չեն վերացվում մասնավոր սեփականատիրական հարաբերությունները և դրանց փոխարեն չեն հաստատվում հասարակական սեփականության վրա խարսխված հարաբերություններ։ Ընդհանուր օրինաչափություններից մեկն էլ այն է, որ, սոցիալիստական հասարակության կառուցմանը զուգընթաց, սոցիալիստական տարբեր երկրների միջև տեղի է ունենում տնտեսական ու կուլտուրական մակարդակների հավասարեցման ինտենսիվ պրոցես։ Ինչ խոսք, որ այս անհրաժեշտ նախադրյալներից, պայմաններից ու միջոցներից որևէ մեկի բացակայությունը մեծ չափով դժվարացնում է սոցիալիզմի կառուցման գործը։

Սոցիալիզմն իր էությամբ ինտերնացիոնալ հասարակություն է, ուստի, նրա պաշտպանությունն ու ամրապնդումը բոլոր երկրների աշխատավորների, մարքսիստական-լենինյան բոլոր կուսակցությունների, սոցիալիստական բոլոր երկրների ինտերնացիոնալ պարտքն է։

Սոցիալիստական համագործակցության մեջ ընդգրկված եղբայրական

երկրները սոցիալիստական առավել հզոր երկրից՝ Սովետական Միությունից, ստանում են բազմակողմանի, անշահախնդիր օգնություն։ Սովետական երկիրը մշտապես աջակցում է եղբայրական պետություններում սոցիալիստական հասարակության ամրապնդմանն ու զարգացմանը։ Միաժամանակ սոցիալիստական համագործակցության ամրապնդումը նպաստում է ՍՍՀՄ-ում կոմունիստական հաջող շինարարությանը։ Սոցիալիստական երկրների փոխհարաբերությունները զարգանում են բոլոր բնագավառներում՝ քաղաքական, տնտեսական, գաղափարական, ռազմական, դիվանագիտական և այլն։

Սոցիալիստական համագործակցության հետագա ամրապնդումը, սոցիալիստական ինտեգրացիայի զարգացումը անգուսպ կատաղություն են առաջ բերում իմպերիալիստների շրջանում։ Բուրժուական կարգերի ջատագովները, որոնք օրն ի բուն տարփողում են կապիտալիստական երկրների ինտեգրացիայի անհրաժեշտության շուրջ, հանդես են գալիս կոնվերգենցիայի ամենաբազմապիսի պահանջներով, սակայն, երբ խոսքը վերաբերում է սոցիալիստական երկրների «կոնվերգենցիային», սոցիալիստական երկրների միջև ինտեգրացիոն պրոցեսների ուժեղացմանը, միանգամայն հակառակ դիրք են բռնում և ամեն ինչ անում են՝ կասեցնելու սոցիալիստական երկրների հետագա մերձեցման, նրանց համատեղ տնտեսական և ռազմական հզորության աճը։

Ռեալ սոցիալիզմի բազմավարիանտության, դրա տարբեր «մոդելների» մասին կոնցեպցիաների հեղինակներն ու պրոպագանդիստները, որպես դրանց առաջացման բարենպաստ պայման, սովորաբար վկայակոչում են այն տարբերությունները, որոնք սոցիալիստական շինարարության ընթացքում դրսևորվում են այս կամ այն երկրում, մեծ հույսեր են կապում այն դժվարությունների հետ, որոնք առաջանում են այդ շինարարության ընթացքում։ Սոցիալիստական համագործակցության հակառակորդների այդ փաստարկումները, սակայն, զուրկ են ռեալ հիմքից։ Բանն այն է, որ սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները բնավ չեն ժխտում սոցիալիստական առանձին երկրների զարգացման առանձնահատկությունները։

Հայտնի է, որ կապիտալիզմից սոցիալիզմին անցնող ժողովուրդները սկզբում ունեն տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման տարբեր մակարդակներ։ Բացահայտելով իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիստական երկրների տնտեսական և քաղաքական անհավասարաչափ զարգացման օրենքը, հիմնավորելով տարբեր երկրների սոցիալիզմին անցնելու ձևերի բազմազանությունը, Վ. Ի. Լենինն առանձնահատուկ ուշադրություն է նվիրել այն հարցին, թե, ելնելով ազգային առանձնահատկություններից, կոմունիստական կուսակցություններն ինչպիսի առավել նպատակահարմար միջոցներ ու մեթոդներ պետք է կիրառեն սոցիալիզմի հաջող կառուցման համար։ Մարքսիզմի ծաղրանկարի մասին աշխատության մեջ (1916 թ.) նա գրել է. «Բոլոր ազգերը կգան դեպի սոցիալիզմ՝ դա անխուսափելի է, բայց բոլորը կգան ոչ բոլորովին միատեսակ, յուրաքանչյուրը յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևի մեջ, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպի մեջ։ Չկա ոչինչ ավելի աղքատ բան թեորիապես և ավելի ծիծաղելի բան՝ գործնականապես, քան «հանուն պատմական մատերիալիզմի» ապագան նկարել այդ տե-



սակետից մեկ գորշ գույնով. դա կլիներ սուզդալյան խզմզվածք, դրանից ոչ ավելի» (Երկեր, հ. 23, էջ 81)։

Սոցիալիզմի կառուցման բազմատեսակ ձևերի ու մեթոդների մասին լենինյան այս հարցադրումը թելադրված էր ապագայում սոցիալիզմի ուղին թևակոխող երկրների միջև գոյություն ունեցող տարբերություններով՝ արտադրաուժերի զարգացման մակարդակով, ինդուստրիալ և գյուղատնտեսական արտադրության միջև եղած հարաբերություններով, գյուղատնտեսության կոոպերացման աստիճանով, ժողովրդական կրթության կազմակերպման եղանակներով, քաղաքական իշխանության գոյություն ունեցող ձևերով, այդ երկրների միջազգային դրությամբ, ռազմական հզորությամբ և այլն։

Պատմական փորձը լիովին հաստատեց սոցիալիստական նոր աշխարհի ստեղծման պրոցեսի բարդության, նրա ձևերի բազմազանության մասին լենինյան դրույթը։ Դա ամենից առաջ վերաբերում է սոցիալիզմի կառուցման, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության գլխավոր զենքին՝ պրոլետարիատի դիկտատուրային։

Ի վիճակի չլինելով խեղաթյուրել պրոլետարիատի դիկտատուրայի տարբեր ձևերի մասին լենինյան պարզ ու հստակ մտքերը, բուրժուական գաղափարախոսները գրում են, թե Լենինից հետո, «Մոսկվայի թելադրանքով», կոմունիստական կուսակցությունները հրաժարվեցին սոցիալիզմի կառուցման ձևերի բազմազանության վերաբերյալ դրույթից։

Նման տեսակետը, ինչ խոսք, ոչինչ ընդհանուր չունի իրականության հետ։ Մարքսիստական-լենինյան կուսակցություններն էին, որ Լենինից հետո զարգացրին նրա իսկ հայտնագործած օրենքը, որի համաձայն մի շարք երկրներ կարող են սոցիալիզմին անցնել շրջանցելով կապիտալիզմը։ Սոցիալիստական շինարարության խնդիրները լուծելիս, մարքսիստական-լենինյան կուսակցությունները դիմում են ստեղծագործական համարձակ որոնումների, փնտրում սոցիալիզմի կառուցման առավել արդյունավետ, նպատակահարմար միջոցներ։ Լենինիզմն ամենալայն հնարավորություններ է ստեղծում տարբեր երկրների աշխատավորների ազգային առաջավոր տրադիցիաների պահպանման ու զարգացման, պատմական փորձի ու հոգևոր ստեղծագործության լայն օգտագործման համար, բայց երբեք չի տրոհվում «ազգային տարբերակների»։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի հանրագումարային փաստաթղթում ասված է. «Կոմունիստական ու բանվորական կուսակցություններն իրենց գործունեությունը կատարում են խիստ բազմազան, առանձնահատուկ պայմաններում, որոնք պահանջում են համապատասխան մոտեցում ունենալ կոնկրետ խնդիրների լուծմանը։ Յուրաքանչյուր կուսակցություն, առաջնորդվելով մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով, հաշվի առնելով ազգային կոնկրետ պայմանները, լրիվ ինքնուրույն է մշակում իր քաղաքականությունը, որոշում պայքարի ուղղությունները, ձևերն ու մեթոդները, հանգամանքների համեմատ ընտրում սոցիալիզմին անցնելու խաղաղ կամ ոչ խաղաղ ուղին, ինչպես նաև իր երկրում սոցիալիզմի կառուցման ձևերն ու մեթոդները»։ Փաստաթղթում նշված է նաև, որ սոցիալիստական երկրների միջև ստեղծված բնականոն հարաբերությունները խարսխված են փոխադարձ հարգանքի, միմյանց տերիտորիալ ամբողջությունն ու ինքնիշխանությունը հարգելու, ներքին գործերին չմիջամտելու, իրավահավասարության ու փոխադարձ շահերի վրա։

Գաղտնիք չէ, որ իշխանության գլուխ կանգնած կոմունիստական ու բանվորական որոշ կուսակցությունների շարքերում վերջին տասնամյակում առաջ եկան սխալ պատկերացումներ, թե, ինտերնացիոնալ համախմբվածության խնդիրը երկրորդ պլան մղելով, հնարավոր է օգուտներ քաղել առանձին երկրների շրջանակներում։ Այդ հողի վրա ծագած «ազգային կոմունիզմի» զանազան տարատեսակությունների համար բնորոշը դարձավ սոցիալիստական երկրներում հասարակական զարգացման ընդհանուր օրինաչափությունների ժխտումը։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունները մեծ ջանքեր գործադրեցին, որպեսզի հաղթահարեն սոցիալիստական առանձին երկրների հարաբերություններում առաջացած լուրջ դժվարությունները, որոնք երբեմն սուր բնույթ էին ընդունում։ Այդ կուսակցություններին վիճակվեց սկզբունքային պայքար մղել նաև առանձին երկրներում առաջացած կենտրոնախույս տենդենցների, նացիոնալիզմի և շովինիզմի արտահայտությունների դեմ։

Ինչպես պետք էր սպասել, իմպերիալիստները և բուրժուական գաղափարախոսները շտապեցին օգտվել սոցիալիստական երկրների հարաբերություններում առաջացած դժվարություններից։ Նրանք փորձեցին սեպարատիզմի, նացիոնալիզմի և շովինիզմի առանձին դրսևորումները ներկայացնել իբրև պատմական անխուսափելիություն։ Սոցիալիզմի համագործակցության հակառակորդները առաջ քաշեցին այն տեսակետը, թե քանի որ նացիոնալիզմը, վերջին հաշվով, «ուժեղ դուրս եկավ» ինտերնացիոնալիզմից, ուստի, կոմունիստական աշխարհից միշտ անբաժան են լինելու ազգային թշնամանքը, պայքարը, նույնիսկ պատերազմները։

Սակայն միջազգային բուրժուազիայի, նրա գաղափարախոսների և ռևիզիոնիստների ցնծությունը կարճատև էր, իրադարձությունները չզարգացան նրանց երազած ուղիով։ 60-ական թվականների վերջին կոմունիստական շարժման մեջ վիճակը բարելավվեց։ Հաղթահարվեցին բազմաթիվ դժվարություններ և դրանցից կոմունիստական շարժումն անհրաժեշտ դասեր առավ։ Պարզ դարձավ, որ միասնությունը բանվոր դասակարգի ընդհանուր ինտերնացիոնալ շահերի ինքնաբերական արդյունք չէ, որ նրա ամրապնդումը պահանջում է գիտակից ու հետագա տևական ջանքեր։ Իրադարձությունների ընթացքը նաև ցույց տվեց, որ կոմունիստական շարժման մեջ հանդես եկած տարաձայնությունները ժամանակավոր բնույթ ունեն, որ նացիոնալիզմի աշխուժացումը անցողակի երևույթ է, որ այդ շարժման հզորությունը նրա ինտերնացիոնալ համախմբվածության մեջ է։ Եղբայրական ամեն մի կուսակցություն միայն կուռ միասնության հիման վրա կարող է ամրապնդել իր դիրքերը։

1969 թվականին Մոսկվայում տեղի ունեցած կոմունիստական և բանվորական կուսակցությունների խորհրդակցությունը՝ արտահայտելով միասնության հասնելու այդ կուսակցությունների բուռն ձգտումը, մեծապես նպաստեց համաշխարհային կոմունիստական շարժման հետագա ամրապնդմանը։ Խորհրդակցությունում նշվեց, որ կոմունիստական շարժման մեջ հանդես եկած տարաձայնությունների մի մասը համեմատաբար հեշտությամբ է հարթվել, մյուսների վերացումը պահանջում է ավելի երկարատև ժամանակ։ Բայց այդ դժվարությունները հաղթահարելի են, եթե կոմունիստական ու բանվորական կուսակցություններն ամուր են կանգնում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերում։

# ԳԻՏՆԱԿԱՆԻ ԿՈՉՈՒՄԸ

Պ. Ս. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ

**ՍՍՀՄ ԳԱ և համամիութենական «Գիտելիք» ընկերության հրատարակած Գիտությունը և մարդկությունը (1971—1972) միջազգային տարեգրքի հերթական հատորում զետեղված են գիտության բոլոր ճյուղերի ամենավերջին հասումները լուսաբանող, սովետական և արտասահմանյան ականավոր գիտնականների հույժ արժեքավոր հոդվածները։ Այդ հատորում տպագրված է սովետական ականավոր մաթեմատիկոս, ակադեմիկոս Պ. Ս. Ալեքսանդրովի «Գիտնականի կոչումը» հոդվածը, որն արտատպվում է մեր ամսագրի այս համարում։**



Ինչպիսի՞ն է ձեր պրոֆեսիան, բժի՞շկ, ինժենե՞ր, ուսուցի՞չ հարցին մարդիկ այդպես էլ պատասխանում են՝ բժիշկ, ինժեներ, ուսուցիչ (մանկավարժ)։ Գիտությամբ զբաղվողը, եթե նույնիսկ այդ զբաղմունքն իր պրոֆեսիան է, հազվադեպ իրեն գիտնական կանվանի։ «Ես գիտնական եմ» արտահայտությունը կյանքումս լսել եմ միայն մի քանի անգամ, այն էլ այնպիսի մարդկանցից, որոնց այդ կոչումը կրելու իրավունքը կասկածելի է... Մեր կարծիքով, գիտնականի պրոֆեսիա գոյություն չունի, վերոհիշյալ պրոֆեսիաների հետ մեկտեղ կա նաև գիտական աշխատողի պրոֆեսիա։ ՍՍՀՄ-ում կան կես միլիոնից ավելի գիտական աշխատողներ. հավանաբար, կարելի է ասել, որ այդ մարդիկ միևնույն պրոֆեսիան ունեն։

Գիտական ինստիտուտներում ու գործարաններում զբաղված գիտական աշխատողները լուծում են հաճախ տեսական բնույթի, բայց, գլխավորապես, պրակտիկայի հարուցած տեխնիկական կամ գյուղատնտեսական խնդիրներ. այդ էլ արդարացնում է սույն պրոֆեսիայի մասսայականությունը, որը հիմնականում մոտ է ինժեների պրոֆեսիային։

Բայց գիտական գործունեության փառապսակը, գիտական աստիճանի այդ արտացոլումը, որը հար համարվել է պատվավոր և բարոյապես պարտավորեցնող, միշտ գնահատվում է ինժեների պրակտիկ գործունեության ընթացքում, եթե իր պրոֆեսիայով նա կարող է իրեն համարել նաև գիտական աշխատող։ Սակայն չեմ կարծում, որ բժիշկը, ինչպիսի գիտական բարձր կոչում էլ ունենա, իրեն անվանի «գիտական աշխատող» և ոչ բժիշկ։ Այնքա՞ն մեծարժեք է բժշկի պրոֆեսիան մարդկանց աչքում...

Ընթացիկ հարյուրամյակի սկզբում գոյություն չուներ և «գիտական աշ-







խատող» պրոֆեսիան. գիտությամբ, որպես հիմնական մասնագիտությամբ զբաղվողները կարող էին լինել «գիտնական ինժեներներ», բայց մեծ մասամբ բարձրագույն դպրոցների ուսուցիչներ-պրոֆեսորներ, դոցենտներ էին նույնիսկ այն ժամանակ, երբ զբաղվում էին տեխնիկական գիտություններով:

Մի հատկանշական օրինակ. Ն. Ե. Ժուկովսկին թե՛ մեծ գիտնական էր, թե՛ մեծ ինժեներ, բայց, այսպես ասած՝ ըստ իր պրոֆեսիայի վիճակի համալսարանի և բարձրագույն տեխնիկական ուսումնարանի պրոֆեսոր էր: Զուր չէ, որ զինվորական-օդային ակադեմիան այժմ կոչվում է նրա անունով:

Ինչո՞վ է տարբերվում գիտական աշխատողի այժմյան պրոֆեսիան բարձրագույն դպրոցի ուսուցչի պրոֆեսիայից: Նրանով, որ երկրորդն անմիջականորեն կապված է կենդանի մարդկանց հետ, և այստեղ արդեն, ըստ էության, միևնույն է, խոսքը բարձրագույն, թե՞ միջնակարգ դպրոցի դասատուի մասին է: Մարդկային գործունեության շատ տեսակներ կապված են կենդանի մարդկանց հետ: Բայց դրանցից բժշկի, մանկավարժի, իրավաբանի պրոֆեսիաները կապված են մարդու բուն ճակատագրի հետ:

Ուզում եմ այստեղ ավելացնել նաև արտիստի պրոֆեսիան, որը, չնայած այնքան էլ անմիջականորեն չի առնչվում մարդու ճակատագրին, ինչպես մեր վկայակոչած մյուս պրոֆեսիաները, բայց հատկապես երիտասարդ մարդու, հետևաբար, նրա ճակատագրի վրա կարող է ազդել ոչ պակաս, քան դպրոցը: Ահա թե ինչու հիշատակված պրոֆեսիաներից յուրաքանչյուրը պետք է լինի ո՛չ միայն սոսկ մարդու պրոֆեսիան, այլև կոչումը, իսկ դրա ընտրությունը պետք է գիտակցորեն կատարի նա, ով կոչված է այն կիրառելու որպես կյանքի թելադրանք:

Այդ պրոֆեսիաները կապված են գիտնականի, երբեմն և նկարչի, գրողի ու կոմպոզիտորի գործունեության հետ, և այդ կապը հաճախ նշանակալի չափով կարող է փոխադարձ լինել: Այդ պրոֆեսիաները կապված են և մարդկային ամենավեհ արժանիքների հետ, որոնք կազմում են ճշմարտություն, բարություն, գեղեցկություն կլասիկ երրորդությունը...

Գիտնականի գործունեությանն ու կոչմանը վաղուց ի վեր ուղեկցող հեղինակությունն առաջացել է մի կողմից այն բանից, որ նրա գործունեությունն ուղղված է ճշմարտության որոնմանը՝ իբրև մի բարձրագույն նպատակ, որին ձգտում է մարդը, մյուս կողմից՝ որ գիտնականի գործունեությունն անբաժան է այդ ճշմարտությանն ուրիշներին, ամենից առաջ երիտասարդներին հաղորդակից դարձնելուց:

Եթե գիտությամբ զբաղվող մարդն իր գործունեությունն ընկալի վերոհիշյալ երկու ասպեկտներով՝ ճշմարտության որոնումը և դրան հաղորդակցվելը, ապա ավելի ճիշտ կլինի պայքարել, այսպես կոչված, «գիտական պրոդուկցիայի քանակական աճի» ահավոր վտանգի դեմ: Գիտական արդյունավետությունը միշտ էլ քանակի իշխանության այն մասնակի դեպքն է, որը, ինձ թվում է, մեր ժամանակի ամենատարածված ու մեծ վտանգներից մեկն է: Տակավին Գոգոլն էր բողոքում, որ գրականագետներն այնքան տարբեր երկեր են գրում, որ շուտով ողջ աշխարհում իրերը չեն բավականացնի նրանց գրոտածներով փաթաթելու համար:

Այժմ ո՛չ միայն, բառիս բուն իմաստով, գիտական աշխատողները, այլև բարձրագույն ուսումնական հաստատություններում դասավանդողները պետք է միշտ կատարեն գիտական աշխատանքների պլանները, հատկապես ըստ



հնարավորին գրեն և դիսերտացիաներ պաշտպանեն: Հաշվետվության ենթակա գիտական արդյունավետության պահանջը բնական և օրինաչափ է գիտական աշխատողների, բառիս բուն իմաստով «գիտության այն ինժեներների» համար, ովքեր կատարում են անմիջականորեն իրենց առջև դրված կոնկրետ խնդիրները, որոնց լուծումը պետք է տեխնիկայի տվյալ բնագավառի, բժշկության, ժողովրդական տնտեսության համար: Անբնական և սխալ է, երբ այդ պահանջը, որպես պարտադիր և «հաշվետու» պահանջ, կիրառվում է բարձրագույն դպրոցների դասատուների նկատմամբ և միայն նպաստում ոչ պիտանի երկերի գերարտադրությանը, որոնց մասին ես հիշատակել եմ:

Ասում են՝ «Բարձրագույն դպրոցի ի՞նչ դասատու է նա, եթե չի զբաղվում (ենթադրվում է անընդմեջ) գիտահետազոտական աշխատանքով» (ոմանք նույնիսկ ասում են «ստեղծագործական» աշխատանքով, ասես թե մանկավարժական աշխատանքն ստեղծագործակա՞ն չէ): Թերևս այդպես խոսողներն իրավացի են, և գիտական աշխատանքով չզբաղվող տվյալ մարդը, իրոք, վատ է ավանդում: Եկեք, ահա, այսպես դատենք նրա անմիջական գործի մասին. վա՞տ դասատու է նա, թե՞ լավ, լավ, թե՞ վատ է սովորեցնում ուսանողներին և ոչ թե նրանց տպագրած աշխատանքների քանակով ու «լիստաժով» (մամուլների թվով)— ժամանակակից ռուսաց լեզվում կա նաև այսպիսի հոյակապ բառ: Չկարծեք, թե ես դեմ եմ, որ բարձրագույն դպրոցներում ավանդողները զբաղվեն գիտական աշխատանքով: Ես դեմ եմ այն պարտադիր հաշվետու դարձնելուն:

Հիմնական չարիքն այն է, երբ գիտական աշխատություն գրելն իսկ, գիտական աշխատանքի ցուցակ լրացնելը, հատկապես դիսերտացիաներ գրելն ինքնանպատակ են դառնում: Ի դեպ, գիտական աշխատություն գրելու դրդապատճառն ու շարժառիթները պետք է լինեն անմիջական օգուտ տալու, պրակտիկ կարևոր խնդիրներ լուծելու ձգտումը կամ իմացության նկատմամբ անշահախնդիր հետաքրքրասիրությունը, այն կրքոտ, «գիտական հետաքրքրասիրությունը», որը մարդուն հանգիստ չի տալիս այնքան ժամանակ, քանի դեռ այն չի բավարարվում, չի լուծվում հարուցված հարցը:

Հիշենք Տոլստոյի վաղուց ասած խոսքերը, թե որևէ բան պետք է գրել ոչ թե այն ժամանակ, երբ կարելի է գրել, այլ այն ժամանակ, երբ չի կարելի չգրել:

Իհարկե, վկայակոչված երկու շարժառիթները— տվյալ խնդրի լուծումից ստացվող անմիջական օգուտը և այն, ինչ կոչում եմ գիտական հետաքրքրասիրություն, հիանալի կարող են համակցվել. այդ են ցույց տալիս Էյլերի և Հաուսի, իսկ նորագույն ժամանակներում՝ Չեբիշևի, Պուանկարեի, Ժուկովսկու, Չապլիգինի, Պավլովի օրինակները: Խոսել զուտ և կիրառական գիտության միջև եղած հակասության մասին կարող են միայն այն մարդիկ, ովքեր պարզապես հեռատես չեն, անհաղթահարելիորեն հակված են տարօրինակ դատողություններ անելու:

Համենայնդեպս, որպեսզի բնկվի գիտական ստեղծագործության կայծը, անհրաժեշտ է, որ հետաքրքրասիրությունն այդ հարցի նկատմամբ, թեկուզ շատ մասնագիտական, հասնի գագաթնակետին, երբ արդեն չզբաղվել դրանով մարդը չի կարող, և երբ այդ հարցն ու դրա լուծման ձգտումն ամբողջովին համակում են նրան: Այդ լարված հետաքրքրասիրությունը հարուցող առիթները կարող են լինել բազմազան և նույնիսկ երբեմն՝ պատահա-

կան բնույթի. նոր ժամանակի մեծագույն գիտնականներից մեկի՝ աստղագետ Կեպլերի (1571—1630) մաթեմատիկական հիանալի աշխատությունը կոչվում էր «Գինու տակառների տարածաչափությունը»: Այն տակառների ծավալը չափելու հարմար ձև գտնելու ցանկության արդյունք էր: Այդ երկով Կեպլերը դարձավ ինտեգրալ հաշվումների հիմնադիրներից մեկը (տալով թեք մակերեսների սահմանափակված ծավալի հաշվումները):

Վերադառնանք «գիտնական» հասկացության բովանդակությանը: Ըստ իս, գիտնականի հոգեբանության մեջ առկա էական մոմենտներից մեկն այն է, որ նա իրեն զգում է հոգևոր ողջ կյանքի, տվյալ դարաշրջանի կուլտուրայի և երկրի, առավելագույն դեպքում իր ժամանակի ողջ մարդկության հոգևոր կյանքի մասնակիցը. նա զգում է դրանով պայմանավորված իր պատասխանատվության բաժինը: Այդ պատասխանատվության, ինչպես և այն բանի գիտակցումը, թե գիտությունը մեծ ու կարևոր գործ է— իր գիտելիքներն աշակերտներին հաղորդելու ձգտման հիմքն է, ձգտում, որն, անշուշտ, նաև անմիջական էմոցիոնալ աղբյուրն է այն անմիջական ուրախության, որ հատուցված է իր աշակերտների գոյությամբ:

Օրինակ կարող են ծառայել Լոբաչևսկին և կրկին Ժուկովսկին: Ժուկովսկին ուներ իր աշակերտները՝ բառիս բուն իմաստով նրա գործի շարունակողները՝ Չապլիգինը, Լեյբենզոնը, Նեկրասովը և ուրիշներ: Կարելի է խոսել նրանց ստեղծած մեխանիկների մոսկովյան հռչակավոր դպրոցի մասին:

Լոբաչևսկին իր դպրոցը չի ստեղծել, բայց հանդիսացել է պրոֆեսոր, այդ բառի լիակատար ու բուն իմաստով և, ինչպես հայտնի է, 19 տարի եղել է համալսարանի ռեկտորը: Պրոֆեսորական գործունեությունը նրա կյանքում, հավանաբար, ավելի մեծ տեղ է գրավել, քան Ժուկովսկու, համենայնդեպս կարելի է ասել, որ այդ տեղը լիովին համապատասխանում էր նրա գիտական հանճարեղ գործունեությանը: Ե՛վ նա, և՛ մյուսը եղել են, իհարկե, ռուսական գիտության ու կուլտուրայի մեծ գործիչներ:

Այնպիսի գիտնականների համար, ինչպիսիք էին Նյուտոնը, Լոբաչևսկին, Պաստյորը, Պավլովը, գոյություն չի ունեցել նրանց գիտական արդյունքների՝ մարդկային կուլտուրայի հետ ունեցած կապի հարց. այդ կապն ակներև է: Իսկ ի՞նչ անի շարքային հետազոտողը, երբ զգում է, որ գիտությամբ զբաղվելն իր կոչումն է: Իսկ եթե այդ կոչումը կա, ուրեմն կա և սեր գիտության նկատմամբ, ինչ էլ լինի դրանցով զբաղվելու ներքին անխուսափելի ձգտում, չնայած իրականում դրանց չափազանց անհարմարավետության:

Մաթեմատիկական պարապմունքներին վերաբերող գիտական աշխատանքների «անհարմարավետություն» արտահայտությունն իմը չէ, այլ ժամանակակից հայտնի մաթեմատիկոս Կուրանտինը: Այդ անհարմարավետության մասին շատ վաղուց մեր մասնակի խոսակցության ժամանակ նա ինձ ասել է, թե ինչու մաթեմատիկոսները մեծ մասամբ շուտ են ավարտում իրենց սեփական ստեղծագործական աշխատանքները. նրանք չեն դիմանում այդ մշտական ներքին լարվածությանը: Խոսելով գիտական աշխատանքի մասին, ես ևս, անշուշտ, հենվում եմ իմ փորձի վրա, իսկ այդ մաթեմատիկոսի փորձ է: Բայց չեմ կարծում, թե այլ գիտություններում, մանավանդ, ճշգրիտ գիտություններում, այդ փորձն էականորեն տարբեր է: Այսպես կոչված հանգիստ գիտական աշխատանքը, եթե միայն խոսքը իսկական գիտական աշխատանքի մասին է, ինքնին մի առասպել է: Իսկական գիտական



աշխատանքը, այսինքն՝ որոնումն այն բանի, թե «իրականում որպիսին է հարցի էությունը», միշտ անդադրում է, միշտ ներկայացնում է անցում մի անհաջող փորձից մյուսին, մինչև, վերջապես, գտնվում է հաջող մոտեցումը, եթե այն ընդհանրապես գտնվում է:

Այդ աշխատանքը նույնքան անհանգիստ է, որչափ երաժշտինը, որը երկար ժամանակ որոնում և չի գտնում, թե ինչպես պետք է հնչի տվյալ երաժշտական փրազը: Առավել անհանգիստ կարող է լինել միայն վիրաբույժի աշխատանքը. այդ ամենի հետ մեկտեղ նա գիտակցում է, որ իր ամեն մի անհաջողություն կարող է հիվանդին զրկել կյանքից:

Բայց այն ծանր գործում, որպիսին է գիտական հետազոտությունը, թվում է թե մարդկային կուլտուրայի ընդհանուր խնդիրների հետ կապի ոչ մի զգացում չի կարող լինել, բացառությամբ, կրկնում եմ, խոշոր գիտնականներին վերաբերող դեպքերի, որոնց մասին հենց նոր խոսեցի: Մինչդեռ իրականում կապի այդ զգացումն է, որ մատչելի է գիտությամբ զբաղվող և դրան մասնակցող յուրաքանչյուր մարդու, ինչպես պետք է լինի և գիտությունն ավանդելիս: Կենսագործել և զգալ կարդացած ամեն մի դասախոսության անմիջական ազդեցությունն ուսանողների, ունկնդիրների վրա, դա հենց մեր աշխատանքի կենդանի կապն է կենդանի մարդկանց, հետևաբար՝ մեր ժողովրդի և երկրի կուլտուրայի հետ, և այդ կապն իրագործվում է, իհարկե, ո՛չ միայն դասախոսությունների, այլև մանկավարժական ողջ աշխատանքի ընթացքում:

Այս առիթով չի կարելի չհիշել մոսկովյան, պետերբուրգյան, լենինգրադյան, Կազանի, առաջին հերթին՝ Մոսկվայի և ռուսական այլ համալսարանների մեծ ու փառավոր ավանդույթները: Ծատ վաղուց այս համալսարաններն իրոք մասնակցել են ռուսական, իսկ այժմ սովետական կուլտուրայի հիմնադրմանն ու զարգացմանը: Այդ համալսարանների պրոֆեսորների դասախոսությունները մեծ լսարան ունեին և հնարավորություն էին ընձեռում շատ երիտասարդների ո՛չ միայն շատ բան իմանալու, այլև վերապրելու գիտության հետ շփվելու այն հատուկ իմացության և մարդկային ստեղծագործության հետ կապված զգացումը, որն իր բնույթով նման է մեծ վարպետների համերգների և ներկայացումների ժամանակ գեղարվեստական ստեղծագործություններին հաղորդակցվելուն: Նույնիսկ հնարավոր չէ ասել, թե երիտասարդի անհատականության զարգացման, նրա ճաշակի զարգացման, նրա հոգևոր ու գեղագիտական զարգացման համար որքա՜ն մեծ նշանակություն ունի էմոցիան, որն, ի վերջո, պարզապես հանգեցնում է հոգեկան ազնվության: Խոսելով այն ֆակուլտետի մասին, որտեղ ես կրթություն եմ ստացել և որին պարտական եմ ողջ կյանքս, չեմ կարող չհիշել ո՛չ միայն Ն. Ն. Լուզինի, այլև Բ. Կ. Մլոձևսկու դասախոսությունները (դրանց մասին կխոսեմ հետո): Թեև Բ. Կ. Մլոձևսկին այնքան մեծ մասշտաբի գիտնական չէր, ինչպես Ն. Ն. Լուզինը, բայց նրա լայն մտահորիզոնը, նվիրվածությունը գիտությանը, նրա ընդհանուր բարձր կուլտուրան, վերջապես՝ նրա դասախոսական տաղանդը ոգևորում էին ունկնդիրներին և տալիս նրանց այն «իմացության ապրումները», որոնց մասին ես հենց նոր ասացի:

Կարծում եմ՝ ընդհանուր կուլտուրայի բարձր մակարդակը նվազ պարտադիր չէ համալսարանի դասատուի համար, քան նրա սեփական գիտական նվաճումները: Եվ համարյա բոլոր, իրոք մեծ գիտնականները, այդ տիտղո-

սով մտնելով պատմության մեջ, բավարարում էին մեր նշած պահանջը: Բացառություններ կային, բայց փոքրաթիվ և միայն հաստատում էին կանոնը:

Մեր արտահայտած դրույթը կոնկրետացնելու համար ցանկանում եմ մի քանի խոսք ասել առանձին, իրոք մեծ գիտնականների մասին, որոնց ես մոտիկից ծանոթ եմ եղել: Ամենից առաջ հիշում եմ իմ ուսուցիչ Ն. Ն. Լուզինին: Առաջին անգամ նրան հանդիպեցի, երբ երկրորդ կուրսի ուսանող էի: Այդ հանդիպման տպավորությունը, կարելի է ասել, ուղղակի ցնցող էր: Դասախոսություններից հետո խորհրդի համար դիմեցի նրան, հարցնելով, թե հետագայում ինչպե՞ս ուսումնասիրեմ մաթեմատիկան: Ինձ զարմացրեց նրա ուշադրությունը, և չեմ կարող գտնել այլ խոսք՝ զրուցակցիս նկատմամբ հարգանքս հայտնելու, որքան էլ դժվար հնչի այդ բառը, երբ խոսքը վերաբերում է արդեն ականավոր, բայց տակավին երիտասարդ գիտնականի՝ 18-ամյա ուսանողի հետ ունեցած զրույցին: Լսելով ինձ, Լուզինը խելացի հարցերի միջոցով շատ շուտ կարողացավ ճանաչել մաթեմատիկական իմ հակումների բնույթը, իսկույն նեթ մատչելի ձևով բնութագրեց հիմնական ուղղությունները, որոնք նա կարող էր առաջարկել ինձ հետագա պարապմունքների համար: Նա շատ զգույշ ինձ տրամադրեց ընտրելու այդ ուղղություններից մեկը, ընդ որում, այդ ամենն արվեց նրբանկատորեն, առանց որևէ ճնշման և, այժմ արդեն կարող եմ ասել՝ ճիշտ: Այդ ժամանակ ես դարձա Լուզինի աշակերտը, և այդ նրա ստեղծագործական վերելքի ժամանակաշրջանն էր:

Լուզինն այն ժամանակ միայնակ էր ապրում կահավորված սենյակներում, ապրում էր միայն գիտությամբ: Հիշողությանս մեջ մնացել է մեր բազում հանդիպումների ժամանակ ասած նրա մի արտահայտությունը. «Զօր ու գիշեր ես մտածում եմ Ցերմելոյի աքսիոմայի մասին (մաթեմատիկայում կա այդպիսի հայտնի աքսիոմա), որն այն ժամանակ և դեռ շատ տարիներ անց, մաթեմատիկայի տրամաբանական հիմունքների հետազոտության կենտրոնում էր: Ա՜խ, գեթ մեկն իմանար, թե ի՞նչ է դա»:

Իմ ծանոթությունը Լուզինի հետ եղավ այն տասնամյակի ճիշտ կեսին, երբ նա ստացավ իր ամենանշանավոր արդյունքները: Այդ տարիներին տեսնելով Լուզինին, իրոք ես տեսա այն, ինչ կարող է կոչվել ներշնչվածություն գիտությամբ, և ես նրանից սովորեցի ո՛չ միայն մաթեմատիկա, այլև իմացա, թե ի՞նչ է նշանակում իսկական գիտնական, ինչպես նաև այն, ինչ կարող է անել և ինչպիսին պետք է լինի համալսարանի պրոֆեսորը:

Այդ ժամանակ ես հասկացա, որ գիտությունը և նոր երիտասարդներին դրան հաղորդակից դարձնելը միևնույն գործունեության՝ գիտնականի գործունեության երկու կողմերն են:

Այժմ ուզում եմ պատմել այս հարյուրամյակի առաջին կեսի արտասահմանյան երկու հայտնի մաթեմատիկոս գիտնականների՝ գերմանացի Հաուսդորֆի և հոլանդացի Բրաուերի մասին: Նրանք, ինչպես և Լուզինը ներկայացուցիչներն էին մաթեմատիկայում գոյություն ունեցող շատ ընդհանուր և աբստրակտ ուղղության, որը հայտնի էր տեսական-բազմաքանակային ուղղություն անունով, որին պատկանում եմ և ես, որին հատկապես իրենց գիտական գործունեության սկզբում պատկանում էին Մոսկվայի լուզինյան դպրոցի բոլոր մաթեմատիկոսները: Իրենց մարդկային հոգեբանությամբ Բրաուերը և Հաուսդորֆը բոլորովին նման չէին իրար: Սակայն նրանք կենսագրական ընդհանուր գծեր ունեին: Ե՛վ նա, և՛ մյուսը պատանեկության տա-



րիներին, նախքան մաթեմատիկոս դառնալը, ցանկանում էին երաժիշտ դառնալ— Հաուսդորֆը՝ կոմպոզիտոր, Բրաուերը՝ դաշնակահար: Դա անհետևանք չմնաց նրանց հետագա կյանքի ընթացքում— յուրաքանչյուրի աշխատասենյակում դրված էր դաշնամուրը և նրանք հաճախ էին նստում դրա առջև: Ինձ հաճախ է վիճակվել լսել և՛ Հաուսդորֆի և՛ Բրաուերի դաշնամուրային նվագը: Բայց հետագայում սկսվում են տարբերությունները: Բրաուերի հայրը հոլանդական համեստ գյուղական ուսուցիչ էր: Սերելով հրեական ունևոր ընտանիքից, Հաուսդորֆը նրբաճաշակ կուլտուրայի տեր էր՝ փիլիսոփայական, գրական, թատերական լայն հետաքրքրասիրություններով: Այդ հետաքրքրասիրությունները Հաուսդորֆը պահպանեց նաև մաթեմատիկոս դառնալուց հետո: Նա նույնիսկ թատերական պիեսների հեղինակ էր: Այդ պիեսներից մի քանիսը 20-ական թվականներին հաջողությամբ բեմադրվեցին գերմանական բեմում: Ինտելեկտուալ մեծ նրբությունը և, ես կասեի, փիլիսոփայական մոտեցումը մաթեմատիկայի նկատմամբ, երևում է նրա մաթեմատիկական աշխատանքներում: Մաթեմատիկական գիտության մեջ նրա հսկայական ավանդը հիմնականում այն է, որ նա առաջինը հասկացավ մաթեմատիկական մի քանի օբյեկտների, հատկապես, այսպես կոչված, տոպոլոգիական տարածությունների բովանդակությունը, դրանք վերջնականապես ներդրեց մաթեմատիկայում, դրանց հիմնական հատկությունների ուսումնասիրման սկիզբը դրեց, անմահացնելով իր անունը: Այդ չի նշանակում, թե նրան չեն պատկանում մաթեմատիկական կոնկրետ արդյունքները. ո՛չ, ունենալով մաթեմատիկական իմացության բացառիկ և լայն մտահորիզոն, մաթեմատիկայի մի քանի բնագավառներում նա հասավ հիմնարար արդյունքների: Ինչպես մաթեմատիկան, այնպես էլ ընդհանուր կուլտուրայի նկատմամբ ունեցած հետաքրքրասիրությունների համապարփակ բնույթը բացառիկ թափ ու ծավալ հաղորդեցին նրա դասախոսական գործունեությանը համալսարանում: Բայց հավանաբար, այդ իսկ պատճառով Հաուսդորֆը չուներ սեփական աշակերտների շրջանը, նա չափից ավելի էր պահանջում նրանցից և, որքան էլ դա պարադոքսային թվա, չափազանց շատ գիտեր: Այդ գիտելիքներն սկսնակ երիտասարդներին կարող էին խիստ ծանրաբեռնել և կարծես նրան անհնար էր ընդօրինակել, իսկ աշակերտները չէին կարող բոլորովին չընդօրինակել իրենց ուսուցչին: Հաուսդորֆը միաժամանակ բացառիկ նրբանկատությամբ էր վարվում մարդկանց, ինչպես և բոլորովին երիտասարդների հետ, և, եթե ասում եմ, թե նա կարող էր ճնշել նրանց իր գիտելիքներով, բայց իր վերաբերմունքով երբեք և ոչ մեկի չէր կարող ճնշել: Ընդհակառակը:

Հաուսդորֆը եղել է կյանքումս հանդիպած ամենահետաքրքրական զրուցակիցը, և իմ բոլոր ասածներից հետո զարմանալի չէ այս: Համարյա ամբողջ տասնամյակ նրա հետ գիտական և անձնական շատ աշխույժ շփման մեջ եմ եղել և անմոռաց շատ օրեր եմ անցկացրել նրա տանը՝ Բոննում, Ռեյնի վրա: Այդ կապը կտրվեց միայն Գերմանիայում Հիտլերի իշխանության օրոք: Դրանով կանխորոշվեց Հաուսդորֆի կյանքի ողբերգական վախճանը...

Հիշում եմ Հաուսդորֆի մի կարճ ասույթը մաթեմատիկայի մասին. «Մաթեմատիկայում կա մարդկային հիացմունքը հարուցող ինչ-որ բան»: Այդ ասույթին նման է և մաթեմատիկական արդյունքների բրաուերյան գնահատականը. «Լավ և ուշագրավ են մաթեմատիկական այն արդյունքները, որոնց

ծանոթ լինելն ասես թե լուսավորում, ընդլայնում, բարձրացնում է մտահորիզոնը: Մարդն սկսում է խոր շնչել, և նրա առջև բացվում են նոր հեռուներ...»:

Ինքը՝ Բրաուերն է ասել, որ մաթեմատիկայով զբաղվել է սկսել, ելնելով ընդհանուր փիլիսոփայական հետաքրքրասիրություններից և շարժառիթներից: Նրան թվում էր, թե մաթեմատիկան աշխարհի փիլիսոփայական իմացության անհրաժեշտ, բաղկացուցիչ մասն է:

Բրաուերի մաթեմատիկական ստեղծագործությունն օժտված էր բացառիկ ուժով, մաթեմատիկական դատողությունների ու մաթեմատիկական ինտուիցիայի այդքան մեծ դժվարությունների հաղթահարման ունակությամբ, և այն զարմանք էր հարուցում ու անհավանական թվում նրա անվանի ժամանակակիցներին՝ Պուանկարեին, Հիլբերտին, Վեյլին, այսինքն՝ անցյալ դարի վերջի և այս դարի առաջին քառորդի մեծագույն մաթեմատիկոսներին: Պուանկարեից հետո լինելով մաթեմատիկայի բնագավառներից մեկի՝ տոպոլոգիայի ստեղծողներից և ժամանակակից մաթեմատիկայում գրավելով առաջին տեղերից մեկը, Բրաուերը դարձավ ո՛չ միայն Հոլանդիայի, այլև ընդհանրապես նորագույն ժամանակի ամենախոշոր մաթեմատիկոսներից մեկը: Դրան մեծապես նպաստեց նաև Բրաուերի ավանդը մաթեմատիկայի և մաթեմատիկական տրամաբանության հիմունքներում, ուր նույնպես նա գրավեց առաջին տեղերից մեկը:

Այն ընդհանուրը, որ բնորոշ է իմ նշած երեք, միմյանցից խիստ տարբեր մաթեմատիկոսներին, կարելի է կոչել գիտական ոգեշնչում: Կարծում եմ, որ գիտության նկատմամբ այդ ոգեշունչ վերաբերմունքը հատուկ է ամեն մի իսկական գիտնականի, մանավանդ նրա կյանքի ակտիվ ստեղծագործական շրջանում. բայց այդ հնարավոր է միայն այն ժամանակ, երբ գիտությունն ամբողջովին կլանում է իրենով զբաղվողին: Այդ իմաստով է հենց Պավլովն ասել՝ «գիտությունը մարդուն կլանում է ամբողջովին»:

Կան, սակայն, անձնավորություններ, անշուշտ, տաղանդավոր, որոնց հաջողվում է ստանալ առանձին, անկասկած, արժեքավոր, երբեմն նույնիսկ նշանակալի գիտական արդյունքներ և, միաժամանակ, հեռու են «գիտնական» բառի այն ըմբռնումից, որը ես ջանացի շարադրել և բացատրել օրինակներով: Ցավոք, կան գիտության գործիչներ, որոնք իրենց գիտությունն ընկալում են միայն սեփական նվաճումների հայեցակետով և շրջելով արվեստի մասին Ստանիսլավսկու հայտնի խոսքերը՝ սիրում են ոչ թե իրենց մեջ եղած գիտությունը, այլ իրենց՝ գիտության մեջ: Դրա հետևանքով ծագում է գիտության նկատմամբ «սեփականատիրական» հրեշային մոտեցումը ու այն երբեմն տարածվում է և մանկավարժական գործունեության վրա, որը հաշմում է արդեն հաջորդ սերունդը՝ աշակերտների սերունդը: Այդ երևույթը հանդիպում է, ոչ այնքան հաճախ, ամեն տարիքում: Լինում է և այսպես. այն, ինչը չկար երիտասարդ տարիներին, սկսում է զարգանալ հասուն և հետագա տարիներին, երբեմն վերածվելով գիտական սնափառության, գիտական ագահության, երբ սկսում են հետաքրքրվել միայն սեփական աշխատանքների վկայակոչմամբ: Պարզվում է, որ կան և գիտության Պլյուշկիններ: Ընդհանուր և խոր կուլտուրայի պակասը և դրա հետ կապված սեփական գիտական աշխատանքի նեղ առարկայի, մասնավորապես ողջ գիտական գործունեությանը վերաբերող խնդիրների ու նպատակների մասին խորհելու



սովորույթի բացակայությունը— այս ամենը, անշուշտ, նպաստում է դեռևս գիտական աշխարհում մեր ժամանակներում նույնպես գոյություն ունեցող տարբեր այլանդակությունների զարգացմանը:

Անդրադառնալով երիտասարդ գիտնականների պատրաստմանը, թեկուզ նրանցից մի քանիսի՝ որպես ապագա գիտնականների, դաստիարակությանը, ուզում եմ շեշտել, որ կարելի է նաև չլինել գիտության մեջ մեծ մարդ, չլինել ո՛չ Լոբաչևսկի, ո՛չ Պավլով, ո՛չ Ժուկովսկի և, միաժամանակ, իրավունք ունենալ գիտնական կոչվելու ու հետք թողնելու մեր կուլտուրայում:

Ես արդեն հիշատակեցի, որ ռուսական հին ինտելիգենցիան, մասնավորապես համալսարանականը, այս առումով մեծ ծառայություններ ունի. հիշեցեք, ինչպիսի հարգանքով էր վերաբերվում Չեխովը նրան: Ռուսական ինտելիգենցիան վիթխարի կուլտուրական ուժ էր, կուլտուրայի, ես կասեի վիթխարի շտեմարան, ամենից առաջ նրա համար, որ բաղկացած էր այնպիսի մարդկանցից, ովքեր սովոր էին լայնախոհ լինել և շատ բանի մասին մտածել: Առանց այդ սովորույթի մարդն իսկական գիտնական լինել չի կարող (չնայած սեփական առանձին լավ արդյունքների առկայությանը), ինչպես չի կարող լինել իսկական երաժիշտ— դաշնակահար կամ ջութակահար, հետաքրքրվելով միայն իր գործիքի հետ կապված կատարողական տեխնիկայի պրոբլեմներով: Նա կարող է դառնալ լավ վիրտուոզ, բայց լավ երաժիշտ՝ երբեք:

Ցավոք, պատահում է, երբեմն հանդիպում ենք երիտասարդ, ընդունակ մաթեմատիկոսների, որոնց գրական և ընդհանուր կուլտուրական հետաքրքրասիրությունները հիմնականում սահմանափակվում են, այսպես կոչված, ֆանտաստիկ գրականության ընթերցանությամբ (այն էլ դեդեկտիվ) և «թե հաջողվում է»՝ կինո հաճախելով— «երեկոյան կինո կգնամ» (որևէ տեղ, ինչ էլ լինի):

Այժմ համալսարան են գալիս բնակչության ամենալայն շերտերի երիտասարդները և ո՛չ միայն սովետական ինտելիգենցիայի շրջանից: Եվ մենք ձգտում ենք մեծ չափով ընդլայնել այդ շերտը: Մեր՝ համալսարանի դասատուներիս պարտքն է լրացնել այդ երիտասարդների ընտանեկան ինտելիգենտական ավանդույթների պակասը, այն ամենը, ինչ կոչվում է տնային դաստիարակություն, ինչով այնպես հարուստ էին անցյալի ռուսական կուլտուրայի շատ գործիչներ:

Ուստի, ինձ թվում է, որ համալսարանի ոչ մի դասատու, անկախ այն բանից, կոչվում է նա պրոֆեսոր, դոցենտ կամ ասիստենտ և, թե որքան նշանակալից են նրա սեփական գիտական արդյունքները, իրավունք չունի հրաժարվելու ուսանողների ընդհանուր կուլտուրական, հասարակական դաստիարակությանը մասնակցելուց:

Երբեմն զզմում ես, թե ինչպես երիտասարդական մամուլում հրապարակվում են չափից ավելի մակերեսային, ընդհանուր տեղիներով շարադրված անկետաներ և «կուլտուրական վարվեցողության» ու ընդհանրապես կուլտուրային վերաբերող երաշխավորություններ: Շատ են գրում նաև էսթետիկական դաստիարակության մասին և, հատկապես, դրան վերաբերող ուսումնական առարկաների՝ քննությունների կամ ծայրահեղ դեպքում ստուգարքների և ուսումնական դիսցիպլինների այլ ատրիբուտների մասին— անհայտ «բոլոր չարիքների համադարմանը»: Մինչդեռ, էսթետիկական կուլտու-

րան կարդալ կարողանալն է (պոեզիան և առհասարակ գրականությունը), լսելը (երաժշտությունը), տեսնելը (բնությունը, գեղանկարչությունը), ամենից առաջ այդ ամենը զգալ կարողանալը: Կարդալ կարողանալ, նշանակում է՝ կարողանալ մտածել կուլտուրայի մասին, և ո՛չ միայն ընկալել փաստը: Կարդալ սովորելու համար (ինչպես նաև լսել, տեսնել) պետք է լավ ընտրություն և լավ փորձ, ինչպես և կրկնություն:

Բեթհովենի սոնատներին նվիրված շատ համերգներում նվագում են միայն չորս սոնատ՝ 8, 14, 21, 23-ը, երբեմն նաև 1-ը և 17-ը: Եվ այդ լավ է. թող չվիրավորվեն երաժշտության իսկական գնահատողներն ու գիտակները: Հին ռուսական ինտելիգենտ ընտանիքներում հենց այդպես էլ սովորել և մեծ հաջողությամբ լսել են երաժշտությունը. սկզբում անհրաժեշտ է իմանալ և սիրել ժամանակակից երաժշտության ոչ շատ ստեղծագործություններ, ապա աստիճանաբար ընդլայնել այդ շրջանակը:

Մեր դարը երբեմն անվանում են տեխնիկայի դար: Դա արդարացի է: Տեխնիկան հենց մեր ժամանակներում հասավ սկզբունքորեն նոր մակարդակի, որը հնարավորություն է ընձեռում լուծելու այնպիսի պրոբլեմներ, որոնց մասին մի քանի տասնամյակ առաջ կարելի էր լավագույն դեպքում լոկ երազել: Տեխնիկայի այդ վերելքում, ինչպես բոլորին հայտնի է, մեծ դեր է խաղում հաշվողական կամ, կարելի է ասել, մաթեմատիկական տեխնիկան: Այժմ արդեն պարզ է, որ ժամանակակից տեխնիկան, սոցիալական համապատասխան պայմաններում և, ամենից առաջ, պատերազմի վտանգի վերջնական լիկվիդացմամբ կարող է ապահովել մարդկության նյութական բարեկեցությունը: Այս տեսանկյունից տեխնիկան մեծ բան է, մեծ միջոց, որպեսզի յուրաքանչյուր մարդու համար անհրաժեշտ պայմաններ ստեղծվեն օգտվելու հոգևոր բարձրագույն արժեքներից, որոնցից մեկը իմացությունն է: Բայց, ինչպես արդեն ասացի, այդ նպատակին հասնելու հետագա առաջընթացն արդեն տեխնիկայի հարց չէ, այլ մարդկության սոցիալական վերափոխման, բայց որը կարող է լուծվել գուցե միայն կոմունիստական հասարակության իդեալների կենսագործման պայմաններում, որոնք և այժմ ընկալում ենք որպես սոցիալական բարձրագույն իդեալներ:

Այդ իդեալների առումով ակներև է, որ տեխնիկան, մարդկության տեխնիկական առաջընթացը ինքնանպատակ չէ, այլ միայն միջոց:

Կոմունիստական հասարակությունում տեխնիկան կհասնի այնպիսի մակարդակի, որ նրա հիմնական խնդիրը, ինչպես արդեն ասացի՝ նյութական բարեկեցության ապահովումը, կլուծվի և տեխնիկայի հետագա զարգացումը կծառայի միայն գիտության, բժշկության և հատուկ պահանջմունքներին: Ոչ-ոք չի ձգտի օդանավերի, ավտոմեքենաների և գնացքների արագության հետագա ավելացման: Տեխնիկայի հիմնական խնդիրը կլինի ո՛չ թե արագության ավելացումը, այլ դրա հետ կապված վնասի վերացումը: Արդեն առաջադրված են և, անտարակույս, կլուծվեն օդի և ջրի լիակատար մաքրման խնդիրները, որոնք տրանսպորտի և մեծ մասամբ ինդուստրիայի հետևանք են: Լիովին կլուծվի և աղմուկի դեմ պայքարելու պրոբլեմը: Ո՛չ միայն օդը փոշուց և աղմուկից, այլև մեր ճաշակն ու ընկալումը, մեր ողջ հոգեբանությունը պետք է մի կերպ մաքրել վատ գրականության, վատ երաժշտության, վատ ֆիլմերի հեղեղից, բոլոր տեսակի գռեհկություններից, որոնք այնպես առատությամբ թափվում են մեզ վրա (գլխավորապես օվկիանոսի այն կող-



մից եկող), անհավատալի քանակությամբ աշխատություններ, որոնք հավակնում են արվեստի երկեր կոչվել, բայց դրա իրավունքը բնավ չունեն: Քանակի պրոբլեմը, որը սատարվում է տեխնիկական միջոցների ողջ հարստությամբ ու բազմապատկմամբ, կրկնակի վտանգավոր է դառնում: Անհրաժեշտ է պայքարել այդ չարիքի դեմ, եթե չենք ուզում, որ ապագա հասարակության կյանքում ներխուժեն տեխնիկայացված անճաշակությունն ու գռեհկությունը: Կոմունիստական հասարակարգում աշխատանքը կլինի միայն մարդու աշխատանքի պահանջի իրականացում, և մարդկային ազատ ժամանցը արտակարգ չափով կավելանա: Դրան համապատասխան կարելի է հուսալ, որ մարդիկ, ունենալով բավական ժամանակ իրենց բոլոր գործերի համար, այլևս չեն շտապի ու շտապեցնի: Մարդիկ ձեռք կբերեն ուրախություն՝ կապված հանդարտ ինքնահայեցողության հետ: Կվերածնվի լռության զգացումը, որը, հավանաբար, անհրաժեշտ պայման է այնպիսի երաժշտության ստեղծման համար, ինչպիսիք գրել են Բախը, Բեթհովենը, Շուբերտը, Չայկովսկին: Երբեմն լսում ես, թե ժամանակակից երաժշտությունն արտացոլում է արդի դարաշրջանի՝ տեխնիկայի դարաշրջանի ռիթմը: Կարող է պատահել, որ կոմունիզմի դարաշրջանի երաժշտությունն արտացոլի դարաշրջանի ռիթմը, որով մարդկությունն իր զարգացման նոր էտապում կհասկանա, թե տպավորությունների քանակի մեջ չէ հարցի էությունը, այլ դրանց խորության ու ներքին կենտրոնացածության անդորրում է հնարավորություն ստեղծվում իրոք ընկալելու աշխարհը՝ իր բոլոր գեղեցկություններով:

Սկրյաբինի հիանալի և ամենաոգեշունչ ստեղծագործություններից մեկը նրա երրորդ սիմֆոնիան է: Այն բաղկացած է երեք մասից, համապատասխան վերնագրերով՝ պայքար, կրքեր, աստվածանվագ: Այս վերջին մասը ես միշտ պատկերացնում եմ որպես անվերջանալի ուրախության նախազգացում, այնպիսի ուրախության, որի մասին հնչում է Բեթհովենի իններորդ սիմֆոնիայում, ուրախություն, որը հորդում է նույնիսկ, կարծես թե անելանելի, ինձ հայտնի երաժշտական ամենաողբերգական ստեղծագործություններից մեկի՝ Շուբերտի «Ձմեռային ճամփա» ստեղծագործությունից. ես նկատի ունեմ այդ ցիկլի եզրափակիչ մասը («Շարմանշչիկը»), որը հաստատում է, թե երբեք և հանուն ոչ մի բանի «ոչ մի վայրկյան չի ընդհատվի երգը»:

«Աշխարհի այդ անսահման ուրախությունը», որի մասին ասել է Բլոկը, բայց որի մասին ասել և հիշատակել են իմ նշած գիտնական-մաթեմատիկոսները, մարդկությանը՝ այդ ազատագրված Պրոմեթևսին, վերջապես, մատչելի կլինի, երբ վերջնականապես կփշրվեն նրա շղթաները: Ո՛չ միայն արվեստը, այլև գիտությունը հավասարապես կկարողանա իրականացնել այդ ուրախությունը և արտահայտել մարդկային հոգու խիզախությունը:

Ես խոսում եմ կուլտուրական բարձր արժեքների ներքին միասնության մասին, որին ձգտում է մարդկությունը, ճանաչողական և էսթետիկական արժեքներ, որոնք կենսագործվում են գիտությամբ ու արվեստով: Այդ արժեքները միայն ապագայում՝ կոմունիստական հասարակարգում, կդառնան ողջ մարդկության սեփականությունը, կեցության այն ուրախության էական մասը, որը միշտ հանդիսացել է նրա լավագույն ներկայացուցիչների իդեալը:

# ՍՈՎԵՏՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Մ. Հ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Ամասիայի շրջսովետի գործկոմի նախագահ

*Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը նշում էր, որ սովետները պետք է վերածվեն երկրի ամբողջ արտադրությունը կարգավորող օղակների։ Դա մեկ անգամ ևս ընդգծվեց ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարներում, ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. մարտի 5-ի՝ «Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշման մեջ, որտեղ նշվում է. «Կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանը նոր, է՛լ ավելի մեծ պահանջներ է ներկայացնում աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային սովետների գործունեությանը, որոնք տեղերում կուսակցության ու պետության քաղաքականության պրակտիկ իրականացումն ապահովող պետական մարմինների հանգուցային օղակն են»։*

*ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հիման վրա ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով և միութենական հանրապետությունների գերագույն սովետների օրենքներում վավերագրվեցին աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային սովետների իրավունքներն ու պարտականությունները։*

*Արդեն երկու տարի է, ինչ աշխատավորների դեպուտատների Ամասիայի շրջանային սովետն իր գործունեությունը ծավալում է «Հայկական ՍՍՀ աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի մասին» օրենքի հիմունքներով։ Օրենսդրական կարգավորումը բարերար ազդեցություն է գործել։ Կատարելով օրենքի պահանջները՝ շրջանի տեղական իշխանության մարմինները նկատելիորեն ակտիվացրել են իրենց գործունեությունը, բարելավել մասսաների հետ տարվող դաստիարակչական աշխատանքը։ Շրջանային ու գյուղական սովետներն սկսել են ավելի պատասխանատվությամբ վերաբերվել հանրային արտադրության զարգացմանը, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարմանը, սոցիալ-կուլտուրական շինարարության պլանների իրագործմանը,*



*բնակչության կենցաղային սպասարկմանը, շրջկենտրոնի ու գյուղերի բարեկարգմանը։*

*Մինչև գյուղատնտեսական արտադրական վարչության վերակազմումը, իրավական որոշակի պարզություն չկար շրջանային սովետի և արտադրական վարչության փոխհարաբերությունների միջև, հստակորեն չէին ճշտված նրանց անելիքները և չէր վճռված այն պրոբլեմը, թե շրջանային օղակում ինչպես իրականացնել գյուղատնտեսության միասնական ղեկավարությունը։ Շրջանային արտադրական վարչությունը շրջսովետի գործկոմի գյուղատնտեսության վարչությամբ վերակազմելուց և կոլտնտեսությունների նոր կանոնադրության ընդունումից հետո գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում շրջանային սովետի աշխատանքը վճռականորեն բարելավվել է։*

*Չմիջամտելով տնտեսությունների օպերատիվ գործունեությանը՝ շրջանային ու գյուղական սովետները ձգտում են, ամենից առաջ, ապահովել կոլտնտեսությունների ու սովխոզների վերահսկողությունը հողի, տեխնիկայի, պարարտանյութերի ռացիոնալ օգտագործման նկատմամբ, հետևում են, որ նրանք կատարեն պետության հանդեպ ունեցած իրենց պարտավորությունները, բարձրացնեն հանրային արտադրության արդյունավետությունը, ապահովեն աշխատանքի արտադրողականության զգալի աճն ու գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցումը, արտադրության մեջ արմատավորեն գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը։ Շրջանային սովետը, նրա գործադիր կոմիտեն սկսել են ակտիվորեն մասնակցել գյուղատնտեսական արտադրության զարգացման պլանների մշակմանը։ Կոլտնտեսությունների վարչությունների և սովխոզների դիրեկցիաների հետ նրանք կազմում ու հաստատում են գյուղատնտեսության զարգացման պլաններն ըստ առանձին տնտեսությունների ու շրջանի։ Մշակում և հաստատում են նաև գյուղատնտեսական մթերքների գնումների (հանձնումների) պլաններն ու արտապլանային առաջադրանքները։*

*Շրջսովետն ամեն կերպ վերահսկում է, որպեսզի կոլտնտեսությունները, սովխոզները կատարեն հացահատիկի, մսի, կաթի և գյուղատնտեսական այլ մթերքների վաճառքի պլանները, հետևում է օրենսդրության պահանջների կիրառմանը, կոլտնտեսային կանոնադրության և ներկոլտնտեսային դեմոկրատիայի սկզբունքների կենսագործմանը։ Շրջանային ու գյուղական սովետներն ուժեղացրել են իրենց վերահսկողությունը կոլտնտեսությունների ու սովխոզների ֆինանսա-տնտեսական գործունեության նկատմամբ։ Եթե 1972 թ. շրջանի տնտեսությունները հաջողությամբ կատարեցին պետության հանդեպ ունեցած իրենց պարտավորությունները, ապա դրանում քիչ չէր տեղական սովետների ավանդը։ Անցած տարի շրջանը մսի վաճառքի տարեկան պլանը կատարեց 119,3 տոկոսով, կաթինը՝ 118,2, ձվինը՝ 101, բրդինը՝ 104,8, հացահատիկինը՝ 137 տոկոսով։*

*Այս ամենը, սակայն, չի նշանակում, թե տեղական սովետներն ամեն ինչ արել են գյուղատնտեսության արագ զարգացումն ապահովելու վերաբերյալ կուսակցության մշակած ծրագրի իրականացման համար։ Դժբախտաբար, շրջանի մի շարք գյուղական սովետների գործկոմներ լիովին չեն օգտագործում իրենց տրված իրավունքները, հաշտվում են կոլտնտեսային կյանքի դեմոկրատական սկզբունքների խախտման երևույթների հետ։ Այսպես, օրինակ՝ Մաղարաջուղի, Բալըխլիի, Օքսյուզի, Ջախմախի կոլտնտեսություններում սահմանված ժամկետներում չեն հրավիրվում կոլտնտեսականների ընդհանուր ժողով-*

ներն ու վարչությունների նիստերը։ Կոլտնտեսականների արմատական շահերը շոշափող շատ հարցեր քննության չեն առնվում ընդհանուր ժողովներում։ Այդ թերությունները պետք է վերացնել։

Շրջանային սովետն ակտիվացրել է գործունեությունն իր տերիտորիայում գտնվող բնակարանային, կոմունալ շինարարության, սոցիալ-կուլտուրական ու կենցաղային օբյեկտների կառուցման և շահագործման ասպարեզում։ Շրջանում լայն ծավալ է ստացել կապիտալ շինարարությունը։ Գյուղերում կառուցվել ու կառուցվում են բաղնիքներ, խանութներ, դպրոցներ, ակումբներ, մոտ երկու տասնյակի հասնող արտադրական օբյեկտներ։ Այս տարի պլանավորված է կենտրոնացված և ոչ կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին շրջանում կատարել մոտ 6 մլն ռուբլու շինարարություն։

Շրջանային սովետը պետական վերահսկողություն է իրականացնում նաև դերատեսչական ուղիներով կատարվող շինարարության նկատմամբ, որը հնարավորություն է ընձեռել կառույցներն ընդունել սահմանված կարգին համապատասխան և բարձր որակով։ Մինչդեռ նախկինում շինարարությունը պատվիրում էր մի կազմակերպություն, կառույցն ընդունում էր մեկ ուրիշը, իսկ թերությունների և ցածր որակի համար ողջ պատասխանատվությունը, նույնիսկ հետագա վերակառուցման հոգսն ընկնում էր շրջսովետի գործկոմի վրա։ Իսկ դրա համար գործկոմում միջոցներ չէին նախատեսվում։ Օրինակ, մոտ չորս տարի է, ինչ շրջկենտրոնում շահագործման է հանձնված ԴՕՍԱԱՖ-ի պաշտպանական տունը։ Այն կառուցել է Հայկական ՍՍՀ գյուղական շինարարության մինիստրության Ախուրյանի № 4 տրեստի Բանդիվանի № 24 ՇՄՇ-ն, շենքն ընդունել է ԴՕՍԱԱՖ-ի հանրապետական կոմիտեն՝ առանց շրջանային կազմակերպությունների։ Շենքի ջեռուցման ցանցն անցկացվել է ցածր որակով և հենց ջեռուցման առաջին օրերից այն խափանվել է։ Շրջսովետի գործկոմն ստիպված միջոցներ տրամադրեց ջեռուցման նոր սիստեմի համար։ Նման փաստեր են եղել նաև ուրիշ կազմակերպությունների ընդունած շենքերում։ Հայկական ՍՍՀ աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի մասին օրենքը նախատեսել է, որ շրջսովետը սահմանված կարգով նշանակում է պետական ընդունող հանձնաժողովներ, մասնակցում շրջանի տերիտորիայում կառուցված մյուս օբյեկտները շահագործման ընդունելուն։ Պարզ է, մենք կօգտվենք մեզ ընձեռած վերահսկողության այդ ֆունկցիայից։

ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. մարտի 5-ի որոշման մեջ նշված է, որ սովետական մարդկանց աշխատանքի, կենցաղի և հանգստի լավ պայմանների ստեղծումը սովետների կարևոր խնդիրն է, որի իրականացումը կնպաստի հանրային աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացմանը, կադրերին արտադրության մեջ ամրացնելուն, աշխատավորների կոմունիստական դաստիարակության բարելավմանը։

Ղեկավարվելով կուսակցության այդ պահանջներով՝ Ամասիայի շրջանի տեղական սովետները որոշակի գործ են արել նաև աշխատավորների նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզում։ Տարեցտարի շրջանի բյուջեի ծավալի զգալի մեծացումը, ապրանքաշրջանառության ավելացումը, կենցաղային ծառայությունների ոլորտի ընդարձակումը և բնակչության մեկ շնչին ընկնող կենցաղային ծառայությունների աճը, նպաստների, թոշակավորման համար հատկացված գումարների, թոշակավորվողների թվի ավելացումը, բնակչության կողմից ավտոմեքենա, դաշ-



նամուր, սառնարան, կահույք և թանկարժեք այլ ապրանքների ձեռք բերումը վկայում են շրջանի ազգաբնակչության բարեկեցության հետագա բարձրացման, կուլտուրական և հոգևոր պահանջների վիթխարի առաջընթացի մասին։ 1972 թ., նախորդ տարվա համեմատությամբ, շրջանում զգալիորեն ավելացել են բանվորների ու ծառայողների միջին ամսական աշխատավարձը, կոլտնտեսականների եկամուտները։ Ապրանքաշրջանառությունն աճել է 16 տոկոսով, կոոպերատիվ առևտուրը դարձել է բնակչության երբեմնի կենցաղը վերափոխող ամենաուժեղ լծակներից մեկը։

Շրջանում իրականացվում է բնակարանային շինարարության մեծ ծրագիր։ Վերջին երկու տարում շահագործման են հանձնվել շուրջ 5.000 քմ բնակելի տարածությամբ ու կոմունալ հարմարություններով շենքեր։ Շրջկենտրոնում և գյուղերում նոր բնակարաններ և առանձնատներ է կառուցել 800 ընտանիք։ Երկու տարում նոր բնակարանների կառուցման համար անհատ մարդկանց տրվել է 100 հազար ռուբլի երկարատև վարկ։ Կառուցվել է շրջկենտրոնի երկրորդ կոյուղին, ընթացքի մեջ են կոյուղու գլխավոր կոլեկտորի փոխման, սեպտիկ կայանի կառուցման, նոր ջրագծի անցկացման աշխատանքները։

Օր-օրի գեղեցկանում են շրջանի գյուղերն ու շրջկենտրոնը։ Բացվում են նոր փողոցներ, ստվարանում են ծառերն ու ընդարձակվում կանաչ տարածությունները։ Երկու տարում տնկվել է 20 հազար ծառ ու թուփ, 100 հատով ավելացել է փողոցային լուսավորության դեկորատիվ սյուների քանակը։ Շրջանում լայնորեն ծավալվում է գազի օգտագործումը։ Չկա մի գյուղ, ուր տեղադրված չլինեն գազօջախներ։ Ավարտին է մոտենում Լենինական—Ամասիա գազամուղի խողովակաշարի տեղադրումը, մինչև տարեվերջ «կապույտ հրաշքը» կմտնի շրջկենտրոն։ Նկատելի բարեփոխություններ և տեղաշարժեր են կատարվել նաև բնակչության կենցաղսպասարկման բնագավառում։ Տարեցտարի մեծանում են գործող արտադրամասերի արտադրական կարողությունները, ստեղծվում են նոր արտադրամասեր, մեծանում է բնակչության մեկ շնչին ընկնող կենցաղային ծառայությունների ծավալը։

Չնայած իրականացվող միջոցառումներին ու նկատելի փոփոխություններին՝ շրջանի աշխատավորների նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզում տարվող աշխատանքներում դեռևս շատ թերություններ կան։ ՍՄԿԿ XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ասել է. «Մենք պետք է լրջորեն բարելավենք սպասարկման ոլորտի բոլոր ճյուղերի՝ հասարակական սննդի, հագուստ կարելու, ամեն տեսակի նորոգումների , աշխատավորների հանգստի կազմակերպման աշխատանքը։ Դրանք ո՛չ թե պարզապես պլան կատարելու կոչված ճյուղեր են, այլ ծառայություններ, որոնք անմիջականորեն գործ ունեն մարդկանց հետ, նրանց ճաշակների ամբողջ բազմազանության հետ, մարդկային տրամադրության հետ։ Նրանց աշխատանքը հանգեցնել միայն պլանի և շահույթի կատարման տոկոսների, ըստ երևույթին, չի կարելի (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 71)։

Սովետների գործունեության մեջ է՛լ ավելի են զարգացել դեմոկրատական սկզբունքները։ Շրջանային սովետն ունի 8, գյուղական սովետները՝ 84 մշտական հանձնաժողովներ, որոնցում ընդգրկված են 353 դեպուտատ կամ ամբողջ դեպուտատների 80 տոկոսը։ Նրանցից շատերը ակտիվորեն մասնակցում են հանձնաժողովի աշխատանքներին։ Լավ են գործում շրջանային սովետի գյու-

ղատնտեսության և բնության պահպանության, սոցիալիստական օրինականության և հասարակական կարգի պահպանության, առողջապահության և կուլտուրայի, Գյուլլիբուլաղի, Բանդիվանի, Ջրաձորի, Ենիյոլի գյուղական սովետների մշտական հանձնաժողովները, որոնք, նիստեր գումարելու հետ միասին, զանազան հարցեր են նախապատրաստել՝ գործկոմներում կամ սեսիաներում քննարկելու համար։

Տեղական սովետների իրավունքների ընդարձակումը, նրանց դերի բարձրացումն իրենց արտահայտությունն են գտել սեսիաներում քննարկվող հարցերի շրջանակների ընդլայնման մեջ։ Շրջանային ու գյուղական սովետներն այժմ մեծ նախաձեռնություն են հանդես բերում տնտեսական, սոցիալ-կուլտուրական շինարարության, բնակչության բժշկական, կոմունալ-կենցաղային սպասարկման, առևտրի և հասարակական սննդի բարելավման ու այլ հարցերի լուծման գործում։ Բերենք մեկ օրինակ. անցած տարվա հունիսի վերջին շրջանային սովետի սեսիան քննարկեց «Բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման վիճակի և այն բարելավելու միջոցառումների մասին» հարցը, որը նախապատրաստվել էր մշտական հանձնաժողովի անդամների, դեպուտատների, ակտիվի միջոցով։ Քննարկումն ընթացավ գործարար մթնոլորտում. քննադատաբար վեր հանվեցին բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման բնագավառում տեղ գտած թերությունները և միջոցառումներ մշակվեցին դրանց վերացման համար։ Անկասկած, հարցի քննարկումն իր դրական արդյունքը տվեց։ Անհամեմատ բարելավվել է բնակելի ֆոնդի օգտագործման ու պահպանման, ջրամատակարարման, պատվերների ժամանակին կատարման, սպասարկման կուլտուրայի բարձրացման գործը։

Շրջանային սովետի գործկոմն անցած մեկ տարում գումարած իր 34 նիստերում քննության է առել շուրջ 250 հարց։ Դրանք մասնավորապես շոշափել են գյուղատնտեսության արտադրության ու մթերումների, առողջապահության, սոցապահովության, ժողովրդական կրթության և կուլտուրայի, առևտրի ու հասարակական սննդի, կոմունալ-կենցաղային, կապի սպասարկման և բարեկարգման, արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի, սոցիալիստական օրինականության, տեղական սովետների գործունեության խնդիրները։ Հարցերի քննարկումները և դրանց առթիվ ընդունված որոշումները ինքնանպատակ չեն եղել։ Յուրաքանչյուր քննարկում նպաստել է տվյալ բնագավառի աշխատանքի վիճակի բարելավմանը, այս կամ այն բաժնի, վարչության, հիմնարկ-ձեռնարկության, գյուղական սովետի ու տնտեսության առաջ կանգնած խնդիրների հաջող լուծմանը։

Շրջսովետի գործկոմն առանձնակի ուշադրություն է նվիրում գյուղսովետների գործկոմների բարձրացրած հարցերի լուծմանը։ Ունկնդրելով Բանդիվան և Բայթար, Դուզքենդ և Ջայբասար գյուղերի ազգաբնակչության պահանջները, շրջսովետի գործկոմը, բնակչության սպասարկման գործն ավելի լավ կազմակերպելու նպատակով, հարց հարուցեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության առջև՝ Դուզքենդի և Բանդիվանի գյուղական սովետներ կազմելու մասին։ Այն լուծվեց դրականորեն և հնարավորություն ընձեռեց ղեկավարությունն ավելի մոտեցնել տեղերին։

Մենք ձգտում ենք, որ անթերի կատարվի սովետների կարևոր խնդիրներից մեկը՝ աշխատանքում ապահովվի հրապարակայնությունը. յուրաքանչյուր գյուղի ընտրողները, բնակիչները միշտ իրազեկ լինեն սովետի պրակտիկ գոր-



ծերին, ակտիվորեն մասնակցեն նրա կողմից իրականացվող միջոցառումներին։ Կիրառվում է այն պրակտիկան, երբ շրջանի, գյուղի կյանքի կարևորագույն հարցերը աշխատավորության քննարկմանն են դրվում ըստ հիմնարկության, կազմակերպության, բնակության վայրի։

Գնալով ամրապնդվում է դեպուտատների կապն ընտրողների հետ, ավելի հաճախակի են դարձել շրջանային ու գյուղական սովետների գործադիր կոմիտեների, շրջսովետի գործկոմի բաժինների, վարչության հաշվետվությունները սովետների ու բնակչության առջև։ Որպես կանոն շրջսովետի գործկոմը, նրա գյուղատնտեսության վարչությունը, ժողովրդական կրթության, կուլտուրայի, ֆինանսական, սոցիալական ապահովագրության, ներքին գործերի բաժինները, բոլոր գյուղական սովետների գործկոմները ամեն տարի հաշվետվություն են տալիս բնակչությանը։ Տարեկան երկու անգամ իրենց ընտրողների առջև հաշվետվություններով հանդես են գալիս նաև շրջանային ու գյուղական սովետների դեպուտատները՝ նրանց իրազեկ դարձնելով սովետի աշխատանքին, ընդունված որոշումների և ընտրողների նակազների կատարմանը, սովետին հաղորդում բնակչության առաջարկություններն ու պահանջները։

Մենք առանձնակի ուշադրություն ենք նվիրում ընտրողների նակազների և դեպուտատների առաջարկությունների կատարմանը։ Շրջսովետի գործկոմում տեղական սովետների վերջին ընտրությունների նախապատրաստման ու անցկացման ժամանակաշրջանում ստացվել է 31 նակազ, որոնք վերաբերել են շրջանի էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա վերելքին, բնակչության սպասարկման բարելավմանը, շրջկենտրոնի ու գյուղերի բարեկարգմանը և այլն։ Ամփոփելով նախընտրական ժողովներում ընտրողների առաջադրած նակազները, ուսումնասիրելով դրանց կատարման իրական հնարավորությունները՝ շրջսովետի գործկոմը կազմեց միջոցառումների պլան և այն ներկայացրեց սեսիայի քննարկմանն ու հաստատմանը։ Պլանով հաստատված նակազներն ուղարկվեցին կատարող կազմակերպություններին։ Շրջսովետը միաժամանակ հանձնարարեց մշտական հանձնաժողովներին ու դեպուտատներին՝ ակտիվ աշխատանք ծավալել ընտրողների նակազների կենսագործման համար։ Անցած ժամանակաշրջանում շրջսովետի գործկոմը երկու անգամ անդրադարձել է ընտրողների նակազների և դեպուտատների առաջարկների կատարման ընթացքին։ Միջոցառումների պլանը գրեթե լրիվ կենսագործվել է. բարեկարգվել են մի շարք փողոցներ, նորոգվել բնակելի շենքերը, կառուցվել են նոր խանութներ, բացվել ավտոբուսային նոր երթուղիներ։

Շրջանային ու գյուղական սովետների դեպուտատների կազմը համոզիչ կերպով վկայում է պետական իշխանության օրգաններում նրա իսկական ժողովրդական և ներկայացուցչական բնույթը։ Տեղական սովետներում ընտրված է 448 դեպուտատ։ Նրանց 58 տոկոսը բանվորներ ու կոլտնտեսականներ են։ Դեպուտատների թվի 46 տոկոսը կոմունիստներ են, 46,6 տոկոսը՝ կանայք։ Նրանց 51 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն։

Սակայն շրջանային ու գյուղական սովետներում դեռևս լայն տարածում չի գտել դեպուտատների գործունեության այնպիսի բացառիկ կարևոր խնդիր, ինչպիսին հարցապնդումն է։ Դեպուտատի ստատուսի մասին օրենքում ասված է. «Դեպուտատն իրավունք ունի դեպուտատական գործունեության հետ առնչված հարցերի առթիվ դիմելու պետական ու հասարակական մարմիններին, ձեռնարկություններին, հիմնարկություններին ու կազմակերպություններին,

պաշտոնատար անձանց, որոնք պարտավոր են քննարկել առաջադրված հարցը և դեպուտատին պատասխան տալ օրենքով սահմանված ժամկետում» (հոդված 23)։ Մինչդեռ շատ հիմնարկ-ձեռնարկությունների ու տնտեսությունների ղեկավարներ, ինչպես նաև հանրապետական առանձին մինիստրություններ ու գերատեսչություններ ժամանակին ընթացք չեն տալիս ու քննարկում ո՛չ միայն դեպուտատների բարձրացրած, այլև գյուղական ու շրջանային սովետների առաջ քաշած հարցերը։ Շրջանային սովետները հաճախ հարցեր են հարուցում այս կամ այն մինիստրության ու գերատեսչության առջև, բայց դրանք չեն լուծվում Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության, գյուղական շինարարության, կապի, ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունների ու պետպլանի կողմից։

Հաջորդ հարցը, որը խանգարում է տեղական սովետների աշխատանքի կազմակերպմանը, սովետների նյութա-ֆինանսական թույլ բազան է։ Հատկապես գյուղական սովետների գործկոմները բարեկարգ շենքերով և տրանսպորտի միջոցներով ապահովելու հարցերը դեռևս լուծված չեն։

Սովետներում են հանգուցվում գյուղի կյանքի բոլոր թելերը, մեծ թե փոքր, տնտեսական թե դաստիարակչական բոլոր պրոբլեմները։ Գյուղի իշխանության մարմինները, որտեղ էլ դրանք գտնվեն, ունեն ընդհանուր շատ պրոբլեմներ, հոգսեր ու խնդիրներ։ Բարդ ու դժվարին, բազմազան ու բազմաբովանդակ է տեղական սովետների աշխատանքը։ Նրանց ամենօրյա, երբեմն սովորական թվացող գործունեությունը ներառնում է դպրոցի, հիվանդանոցի, մանկամսուրի, մանկապարտեզի, խանութի, կենցաղսպասարկման կոմբինատի, ակումբի ու գրադարանի աշխատանքը բարելավելու հարցերը։ 1971 թ. հունիսի 11-ին Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ Լ. Ի. Բրեժնևը նշել է. «Վիթխարի է այն դերը, որ նրանք պետք է խաղան ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում արտադրության վերելքն ապահովելու գործում։ Հոգատարություն բնակարանների, դպրոցների ու մանկական հիմնարկությունների շինարարության պլանների կատարման, տեղական բարեկարգման և աշխատավորներին անհրաժեշտ ապրանքներով ու ծառայություններով անխափան ապահովելու նկատմամբ. այս ամենը սովետների ուղղակի գործն է» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 514)։

Առաջնորդվելով լենինյան այն սկզբունքներով, որ բնակչությունը հաճախ սովետների աշխատանքի մակարդակով է դատում սովետական պետության ամբողջ քաղաքականության մասին, մենք ձգտում ենք ամեն ինչ անել, որպեսզի սովետները և նրանց գործկոմները, մշտական հանձնաժողովներն ու դեպուտատներն անհաշտ վերաբերմունք ցույց տան օրենսդրության ամեն մի խախտման նկատմամբ, պայքարեն բյուրոկրատական դրսևորումների դեմ, հասնեն աշխատավորների առաջարկությունների, դիմումների ու գանգատների ճիշտ ու ժամանակին լուծմանը։

Ամասիայի շրջանի աշխատավորների եռանդն ու կամքը այժմ նպատակամղվում են կուսակցության XXIV համագումարում մշակված ու հաստատված պլանների վաղաժամկետ իրականացմանը։ Հաղթահարելով բոլոր դժվարությունները՝ կուսկազմակերպությունների ղեկավարությամբ նրանք ձգտում են հնգամյակի երրորդ, վճռական տարում իրենց աշխատանքում լուրջ բեկում մտցնել, նոր բնագծեր նվաճել։

# ՀԱՅԱՍՏԱՆԸ «ՊՐԱՎԴԱ»-Ի ԷՋԵՐՈՒՄ

Գ. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Սովետական Միության բոլոր ժողովուրդների պատմության վերջին վաթսուն տարիները ցայտուն արտացոլված են «Պրավդա»-ի էջերում։ Կոմունիզմի կառուցման համար մեր օրերում ծավալված պայքարի գաղափարական հզոր զենքն է այն, ժողովրդի շահերի ու ձգտումների լավագույն արտահայտիչը։ Ինչպես սովետական բոլոր ժողովուրդների, նույնպես և հայ ժողովրդի ստեղծարար ջանքերը, աշխատանքային ամենատարբեր բնագավառներում նոր մարդու գործունեությունը, ազգերի փոխօգնությունն ու անշահախնդիր բարեկամությունն են արտացոլվում «Պրավդա»-ի էջերում, հրապարակվում են նրանց նորանոր հասումներն ու հաջողությունները գիտության, կուլտուրայի ոլորտներում։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից մի քանի օր անց՝ 1920 թ. դեկտեմբերի 4-ին, «Պրավդա»-ի առաջին էջում տպագրվեց Վ. Ի. Լենինի՝ մեր հանրապետության ռազմա-հեղափոխական կոմիտեին հղած ողջույնի տեքստը։

Հայ ժողովուրդն ընտրեց իր ուղին՝ վերածնության, ստեղծագործելու և երջանկության ուղին։

Հայաստան. 1920 թվական։

Սով, ավերածություն, աղքատություն։ Վիթխարի խնդիրներ ծառացան սովետական իշխանության հանդիման. հարկավոր էր կարգի բերել հանրապետության տնտեսությունը, կազմակերպել ժողովրդի քաղաքական, կուլտուրական ու հասարակական կյանքը։

«Պրավդա»-ն հաղորդում է 1920 թ. դեկտեմբերին Լենինի հետ Հայաստանի հեղկոմի անդամներ Ս. Տեր-Գաբրիելյանի և Ա. Մռավյանի հանդիպման մասին։ Դեկտեմբերի 13-ին ՌՍՖՍՀ ժողկոմսովետը որոշում ընդունեց Սովետական Հայաստանին նյութական ու ֆինանսական օգնություն ցույց տալու մասին։ Այդ փաստաթղթի տակ Վ. Ի. Լենինի ստորագրությունն է։

Անդրկովկասի կոմունիստների, աշխատավորության համար վիթխարի ծրագրային նշանակություն ունեցավ Վլադիմիր Իլյիչի նամակը Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին։ Այդ նամակը գրվել է 1921 թ. ապրիլի 14-ին և հրապա-

րակվել «Պրավդա Գրուզիի» լրագրում, 1921 թ. մայիսի 8-ին: Պատմական այդ փաստաթուղթն արտատպվեց «Պրավդա»-ում:

Համարից համար «Պրավդա»-ն լուսաբանում է Հայաստանի կյանքը: Ընթերցողների աչքի առջևով անցնում են ժողովուրդների լենինյան մեծ ընտանիքի հանրապետություններից մեկի վերականգնման ու բարգավաճման պատմական փուլերը: Փոքրիկ ինֆորմացիա, մեծ ուրվագիր, առաջնորդող հոդվածներ, պոեմներ, բանաստեղծություններ, կուլտուրական կյանքի խրոնիկա, նոր կյանքի շինարարների առօրյա և ամենագլխավորը՝ նոր մարդու, աշխատավորի, իր գործին նախանձախնդիր քաղաքացու բնավորության դաստիարակություն— այս ամենն արտացոլող պատումներից ստեղծվում է դարերով կեղեքված ժողովրդի սխրագործության տարեգրությունը, որը տիտանական ջանքերից հետո նվաճել է իր ազատությունը, և խորապես զգացել ստեղծագործելու բերկրանքը:

Ահա «Պրավդա»-ի առաջին էջում տպագրված մի փոքրիկ ինֆորմացիա, որը հաղորդում է Հայաստանի ոռոգիչ սիստեմի վերականգնման մասին: Մի այլ նյութում, որ կրում է «Առաջին խաղաղ բերքը» վերնագիրը, խոսվում է Արարատյան դաշտի բերքը հավաքելու մասին: Կառուցվել են նոր ջրանցքներ— Շիրակի, Սարդարապատի, Արտաշատի: Տոնական ուրախություն էր Ալեքսանդրապոլում (Լենինականում), որտեղ հիմնադրվել էր գործվածքեղենի արտադրությունը: Թողարկված էր Ալեքսանդրապոլի բամբակյա գործվածքեղենի առաջին 1.000 մետրը: Հայաստանի տեքստիլ արդյունաբերության առաջնեկի հաստոցներն ուղարկել էին Իվանովո-Վոզնեսենսկի բանվորները: Նրանք էլ հենց տեղակայեցին հաստոցները, այնուհետև իրենց հայ եղբայրներին ու քույրերին սովորեցրին «հաստոցի լեզուն»:

«Հայաստանում գործազուրկներ չկան». հաղորդում էր «Պրավդա»-ն 1928 թվականի նախօրեին:

«Սովետական Անդրկովկաս» ուրվագրում («Պրավդա», 1933 թ. դեկտեմբերի 1) «Պրավդա»-ի հատուկ բրիգադայի անդամներ Գ. Վասիլևսկին, Ի. Ռանևսկին և Ա. Ագրանովսկին ընթերցողներին պատմում են Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի առօրյայի մասին: Երկրամասի էլեկտրիֆիկացման հետաքրքրական նախագիծ ներկայացրին «Սովետական Հայաստանի համարձակ ինժեներներն ու տեխնիկները»: Սևան—Զանգու կասկադը՝ հայկական Դնեպրոգէսը, ինչպես երկրում կոչում էին այդ կառույցը, դարձավ համամիութենական հարվածային օբյեկտ. ինժեներներ էին գալիս Վրաստանից, Ռուսաստանից, Ուկրաինայից, սարքավորում էին մատակարարում Մոսկվայի, Լենինգրադի, Ուրալի և երկրի տնտեսական այլ շրջանների գործարանները:

Վերջերս «Պրավդա»-ի խմբագրությունում ստացվեց Միխայիլ Իվանովիչ Գոնչարովի նամակը: Կենսաթոշակառու է նա, ապրում է Արխանգելսկում. երեսնական թվականներին աշխատել է Սևան—Զանգու կասկադի առաջնեկի կառույցում: Մենք՝ տարբեր ժողովուրդների ներկայացուցիչներս, գիշեր ու զոր աշխատում էինք Հայաստանում: Մենք գիտեինք, որ օգնում ենք աշխարհի հնագույն ժողովուրդներից մեկին: Հայաստանը դարձավ մեր երկրորդ հայրենիքը: Սիրում էինք նրա դաժան, բայց և բարի բնությունը, տաղանդավոր, աշխատասեր մարդկանց: Հայաստանի մասին մեր տանը շատ գրքեր կան: Իմ զավակները բուռն հետաքրքրվում են հայ ժողովրդի պատմությամբ: Նրանք լավ գիտեն իմ բոլոր պատմածները այն հերոսական օրերի, այդ սքանչելի



երկրում անցկացրած իմ երիտասարդական տարիների մասին: Այժմ, երբ կարդում եմ, թե Սևանի ջրերը պակասել են, և մեծ աշխատանք է տարվում լիճը փրկելու համար, սիրտս ճմլվում է այն գիտակցությունից, որ հիմա չեմ կարող օգնել Հայաստանին: Բայց այնտեղ կմեկնի իմ որդին՝ Վոլոդյան. նա ավարտել է շինարարական ինստիտուտը, և իր հոր նման, ինքն էլ թող աշխատի այդ սքանչելի երկրի լեռներում»:

Այդպես, սիրով են աշխատել հազարավոր ռուսներ, ուկրաինացիներ, վրացիներ, ադրբեջանցիներ... վերակառուցվել է հինավուրց երկիրը, վերափոխվել է մարդը՝ դառնալով իր ճակատագրի, իր աշխատանքի տերը:

Այն հեռավոր տարիներին ևս «Պրավդա»-ի բրիգադան շրջել է Անդրկովկասի քաղաքներում, գյուղերում ու կառույցներում, ընթերցողներին հայտնել իր տպավորություններն ու խոհերը:

«Սևան—Զանգու կասկադի կառուցմամբ Միության մեջ կստեղծվի առաջին լճային ստորգետնյա հիդրոկայանը (80 մետր ջրի տակ), 24 հազար կիլովատ կարողությամբ: Այդ կայանի նախագիծը նույնպես հաստատված է Գլավէներգոյի կողմից», հաղորդում էր «Պրավդա»-ն 1934 թ. մայիսի 10-ին:

Ահա ազգերի եղբայրության մի բնորոշ օրինակ. 1931 թ. մայիս: Ուժգին, բազմիցս կրկնված երկրաշարժը մեծ ավերածություններ պատճառեց լեռնային երկրամասին՝ Զանգեզուրին: Ավերվեցին բնակավայրերը, մարդիկ մնացին անօթևան: «Պրավդա»-ն հաղորդում է, որ Մոսկվայի բանվորների նախաձեռնությամբ հաջորդ օրն իսկ մայրաքաղաքի ձեռնարկություններում սկսվում է համաժողովրդական շարժում երկրաշարժից տուժածներին օգնելու համար միջոցներ հավաքելու նպատակով: Հուզմունքով է կարդացվում «Պրավդա»-ի՝ «Օգնություն երկրաշարժից տուժածներին» խորագիրը կրող սյունակը: Համար առ համար լրագիրը հաղորդում է, թե ինչպես է գործում «օգնության ֆոնդը»:

— Մոսկվայի լուսանկարիչների «Ֆոտոմոմենտ» առաջին արտելը մուծում է 500 ռուբլի և մրցման հրավիրում «Ֆոտոսնիմոկ», «Ֆոտոպորտրետ», «Ֆոտոուվելիչիտել» արտելներին և այլ ֆոտոկազմակերպությունների:

— «Պրոլետարսկայա Պրավդա» լրագրի խմբագրությունը մուծում է 200 ռուբլի:

— Կարմիր խաչի և Կարմիր մահիկի ընկերության գործկոմը հատկացնում է 20 հազար ռուբլի: Ստեղծված է օգնության համամիութենական ֆոնդ: Ընկերության գործկոմն այդ ֆոնդն է մուծում 40 հազար ռուբլի:

— Բելոռուսական ՍՍՀ ժողկոմսովետը փոխանցում է 5 հազար ռուբլի:

— ՄԻԻՏ-ի ճանապարհաշինարարական մասնագիտության 2-րդ կուրսի 1-ին խմբի ունկնդիրները մուծում են 66 ռուբլի:

— Թաթարիայի ժողկոմսովետը՝ 5 հազար ռուբլի:

— Մոսկվայի «Իսկրա» կինոթատրոնի աշխատակիցները՝ 75 ռուբ. 33 կոպ:.

— ԱԿՎ-ի ուսանող Մամեդ Մամեդովը մուծում է 15 ռուբլի և մրցման է հրավիրում Մոսկվայում գտնվող անդրկովկասցի բոլոր ուսանողներին:

Մեկ ամիս շարունակ լրագրում հրապարակվող այդպիսի ցուցակներն արտացոլում էին սովետական մարդկանց, ժողովուրդների անշահախնդիր բարեկամությունը: Բարեկամության, համագործակցության, փոխադարձ օգնության մասին որքա՜ն նման հաղորդումներ կարելի է կարդալ «Պրավդա»-ի այլ նյութերում ևս:

Զևավորվում էր սոցիալիստական հասարակության անդամը, ձևավորվում էին ժողովրդական նոր ավանդույթներ, որոնք ընդհանուր են մեր երկրում բնակվող բոլոր ազգությունների համար։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից 14 տարի անց, հայ ականավոր գրող Շիրվանզադեն սովետական գրողների համամիութենական առաջին համագումարի ամբիոնից պատմեց մեր ժողովրդի վերջին 14—15 տարիների մեծ նվաճումների մասին։

— Հայաստանը քայլում է սոցիալիզմ կառուցողների առաջին շարքերում, մյուս բոլոր ժողովուրդների հետ համընթաց, և եթե Հայաստանում որևէ բան դեռևս ետ է մնում, այդ գրականությունն է,— ասում է Շիրվանզադեն։— Եվ դա ոչ թե այն պատճառով, որ Հայաստանում տաղանդավոր գրողներն ավելի քիչ են, քան մյուս ժողովուրդների մեջ, այլ այն, որ սոցիալիստական շինարարությունը չափազանց սրընթաց է առաջ գնում, այն սուրում է ասես ավտոմոբիլով, իսկ գրողները փորձում են հասնել նրան պարզապես յաբու նստած...

— Ես 76 տարեկան եմ, բայց ինձ երբեք այնպես ազատ, այնպես երջանիկ չեմ զգացել, ինչպես վերջին 8 տարում (Շիրվանզադեն դրանից 8 տարի առաջ էր վերադարձել Սովետական Հայաստան— Գ. Ա.)։ Ինձ հաճախ են հարցնում՝ ինչո՞ւ չեմ ծերանում։ Հարցնողները չեն հասկանում, որ ես ապրում եմ սովետական իշխանության օրոք և դեռ պիտի ապրեմ, որովհետև ուզում եմ վերջին ուժերս տալ սովետական երկրին»։

«Ընկ. Շիրվանզադեի հակիրճ, հուզումնալից ճառը բազմիցս ընդհատվում էր ողջ դահլիճի բուռն ծափահարություններով»,— հաղորդում էր «Պրավդա»-ն (1934 թ., օգոստոսի 21)։

— Ինձ համար Տարաս Շևչենկոն կամ Շոթա Ռուսթավելին հարազատ գրողներ են, թեև նրանք այլ ազգությունների են պատկանում,— ասաց Ակսել Բակունցը,— սովետական գրականություն ստեղծող գրողները, լինեն նրանք Մոսկվայում թե՛ Թբիլիսիում, Բաքվում թե՛ Կիևում, Երևանում թե՛ Մինսկում, բոլորն էլ ինձ մոտ են ու հարազատ. նրանք մեկ միասնական ընդհանուր գործ են կատարում՝ տարբեր լեզուներով։

1941 թ. գարնանը Մոսկվայում կայացավ հայկական գրականության ու արվեստի տասնօրյակ։ Մայրաքաղաք մեկնեցին Հայաստանի թատերական, երաժշտական լավագույն կոլեկտիվները, ժողովրդական երգերի կատարողներ, գրականագետներ, գրողներ։ Մոսկվացիները բուռն հետաքրքրասիրություն ցուցաբերեցին հայ մշակույթի, գրականության հանդեպ։ Մեծ թատրոնի բեմից հնչեցին «Ալմաստ», «Անուշ» օպերաները, համերգասրահներում հանդես եկան ժողովրդական երգի ու պարի անսամբլները, Հայաստանի էստրադային նվագախումբը։ ՄԽԱՏ-ի շենքում իր ներկայացումներն էր տալիս Սունդուկյանի անվան դրամատիկական թատրոնը։ Հանդիպումներ, զրույցներ, բանավեճեր... Այդ օրերին «Պրավդա»-ն հրապարակեց հայ գրականության նահապետ Ավետիք Իսահակյանի հոդվածը։ Մեծ վարպետի բերանով խոսում էր ինքը՝ ժողովուրդը։

Մեծ երջանկություն բաժին ընկավ ազատագրված Հայաստանի գրողներին— սովետական մայրաքաղաքի հասարակայնությանը ծանոթացնել հայ ժողովրդի դարավոր կուլտուրային, մեծ գրականությանը,— գրում էր Վարպետը։— Մեր գրականության մեջ արտացոլված են նրա ողջ հոգին, զգացմունքները, ձգտումներն ու խոհերը։ Մռայլ օրերին, մեր ժողովրդի ստրկության օրերին, գրականությունը փոխարինել է նրա պետականությանը։ Գրականությունն այն զինանոցն էր, որ զինում էր մեզ մեր անթիվ թշնամիների ու դժբախտությունների դեմ, մեր ազգային գոյությունը շարունակելու համար մղվող պայքարում։

Ինչպես ասաց Վարպետը, համաշխարհային գրականության մեջ հայ գրականությունն արդեն X դարից սկսած, իր պատվավոր տեղն է գրավում, որպես հումանիզմի դրոշակակիր։

— Մեր գրականության փառահեղ պատմությամբ ոգևոր՝ մենք եկել ենք Մոսկվա.— խանդավառ բացականչեց Ավետիք Իսահակյանը։

Մոսկվայի գրական հասարակայնությունը, մայրաքաղաքի աշխատավորները, մամուլը ուրախությամբ, եղբայրաբար ընդունեցին աշխարհի հին գրականություններից մեկի ներկայացուցիչներին։

«Մենք թանկ ենք գնահատում Հայաստանի գրականությունը»— հուզմունքով գրեց Կոնստանտին Ֆեդինը («Պրավդա», 1941 թ. մայիսի 17)։ Ականավոր գրողը ռուս և հայ բանաստեղծների, գրողների, գրականագետների հանդիպումն անվանեց սովետական երկու գրականությունների բարեկամական ձեռքսեղմում։

Հունիս, 1941 թվական։

Եղբայրական ժողովուրդների հետ մեկտեղ ոտքի, ֆաշիզմի դեմ Հայրենական պատերազմի ելավ նաև հայ ժողովուրդը։ Հայ դյուցազունները թշնամու դեմ մարտեր էին մղում ցամաքում, օդում, ծովում, ջրի տակ։ Հայաստանը ռազմաճակատ ճամփեց իր 300 հազար որդիներին ու դուստրերին։ Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի տարեգրության մեջ ցայտուն և հերոսական շատ էջեր են գրել հայ-ռազմիկները։ Հայաստանի որդիները քաջության, սխրագործությունների օրինակներ էին ցուցաբերում ռազմաճակատում։ Ողջ երկրով մեկ թնդում էին հայ-հերոսներ Նելսոն Ստեփանյանի, Սերգեյ Բուռնազյանի, Սամսոն Մկրտումյանի, Սերգեյ Օհանյանի, Խաչատուր Մելիքյանի, Ղուկաս Մադոյանի, Սուրեն Առաքելյանի, Ջահան Կարախանյանի և շատ ուրիշների անունները։ Հունան Ավետիսյանը կրկնեց Ալեքսանդր Մատրոսովի անմահ սխրագործությունը։

Նրանց և ուրիշ շատ հերոսների մասին էր պատմում «Պրավդա»-ն։ 1943 թ. փետրվարի 27-ին տպագրվեց հայ ժողովրդի նամակը հայ ռազմիկներին։ Հաստոցների, քիմիական ագրեգատների վրա, ապարատների առաջ, նոր կառուցվող գործարաններում, դաշտերում ու ֆերմաներում, գիտական լաբորատորիաներում աշխատող ավելի քան 335 հազար մարդ իրենց ստորագրությունը դրին պատմական այդ փաստաթղթի տակ։

«Պրավդա»-ում հաղորդում եղավ արտասահմանյան հայերի հայրենասիրական նախաձեռնության մասին. նրանց միջոցներով ստեղծվեց «Սասունցի Դավիթ» տանկային շարասյունը։ «Պրավդա»-ում տպագրվում էին հայ գրողների ռազմաճակատային երկերը— Ավետիք Իսահակյանի ատելության խոսքը, Հրաչյա Քոչարի Գեներալի բույրը հիանալի ակնարկը և այլն։

Սովետական ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմն ավարտեց պատմական հաղթանակով։ Երկիրը ձեռնամուխ եղավ տնտեսության վերականգնմանն ու զարգացմանը։ Խաղաղ, ստեղծագործ աշխատանքը վերսկսվեց նաև Հայաստանում։ Նոր ուժով արտացոլվեց ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամու-

թյան կենարար մեծ ուժը։ Ողջ երկիրը մասնակցում էր տնտեսության, քաղաքների ու գյուղերի վերականգնմանը, ապաքինում պատերազմի վերքերը։

Հայ ժողովուրդը 1945 թվականի նոյեմբերի 29-ին նշում էր հանրապետությունում սովետական իշխանության հաստատման 25-ամյակը։ Մարիետա Շահինյանի Մի էջ անցյալից հիանալի ակնարկում «Պրավդա»-ն (1945 թ. նոյեմբերի 30-ին) պատմում էր Սովետական Հայաստանի առաջին տարիների մասին։ Սովետական Միության մյուս հանրապետություններից նոր Հայաստանի վերակառուցմանը մասնակցելու եկան ինժեներներ, ճարտարապետներ, ինչպես և արտասահմանում ապրող շատ հայ մասնագետներ։ Ակնարկում պատմվում է, թե մեր հանրապետությունում ինչպես էին կենսագործվում Վ. Ի. Լենինի պատգամները։

Աշխատավորների հետպատերազմյան հերոիկան մարմնավորվեց Հրազդան գետի վրա հզոր հիդրոէլեկտրակայանների կառուցներում։ Սևանի, Գյումուշի, Արզնիի, Աթարբեկյանի, Երևանի II էլեկտրակայանները տալիս էին միլիարդավոր կիլովատ էլեկտրաէներգիա։ Այդ բազայի վրա ծավալվեցին արդյունաբերության նոր ճյուղեր։ «Պրավդա»-ն մեծ ուշադրություն էր նվիրում այդ օբյեկտներից յուրաքանչյուրին, Հայաստանի լեռնային հսկաների շինարար կոլեկտիվներին, նրանց գործերին ու հոգսերին։ Լրագրի նյութերով կարելի է վերականգնել Սովետական Հայաստանի աշխատավորների այն ժամանակվա պատմությունը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի օրգանի էջերում զետեղվել են և քննադատական շատ նյութեր Հայկական ՍՍՀ-ից։ Արծարծված հարցերի նկատմամբ կուսակցական սկզբունքային մոտեցումը օգնել է տնտեսական մարմիններին՝ արագ վերացնելու բացահայտված թերությունները, կուսակցական ու սովետական կազմակերպություններին՝ կողմնորոշվելու էկոնոմիկայի, կուլտուրայի, կուսակցական կյանքի, կոմունիստական բարոյականության նորմերի բազմազան հարցերում։

Սովետական Հայաստանը դարձել է սոցիալիստական վերափոխության ցայտուն օրինակ։

— Ով ուզում է իմանալ, թե ի՛նչ է տալիս սոցիալիզմը ժողովրդին, թող այցելի Հայաստան,— Լենինի հրապարակում հիացմունքով բացականչեց իտալական քաղաքական գործիչ Ալբերտո Յակոմիտին։

Դեռ 1945-ի հոկտեմբերի 14-ին, «Պրավդա»-ում հրապարակվեց «Ջ. Պրիստլիի Հայաստանում գտնվելու շուրջ» հոդվածը։

Մեր երկիրը նոր էր թոթափել դեռևս չտեսնված, ամենակատաղի ու ավերիչ պատերազմի աղետը։ Եվ ահա հենց այդ ժամանակ անգլիական գրող Ջոն Պրիստլին ցանկություն հայտնեց ծանոթանալու ՍՍՀՄ միութենական հանրապետություններից մեկի կյանքին. ուզում էր անձամբ համոզվել, թե ո՛րն է սովետական մարդու ուժը, արտասովոր դժվարությունների, աներևակայելի զրկանքների ու զոհողությունների միջով անցած, ֆաշիզմին հաղթած մարդու ուժը։ «Հայաստանը,— ասել է Պրիստլին,— ինձ հետաքրքրում է ոչ միայն այն պատճառով, որ հին կուլտուրայի օջախ է, այլև այն, որ նա շատ լավ է բացահայտում, թե ինչպե՛ս է Սովետական Միությունը նոր կյանք կառուցում։ Հին տնակների կողքին Երևանում բարձրացել են բնակելի կորպուսների, համալսարանի, թատրոնների մեծ շենքեր... Ինձ զարմացնում են այն վիթխարի հնարավորությունները, որ ստեղծում է Սովետական Միությունը շնորհաշատ



ու տաղանդավոր մարդկանց համար... Սովետական Միությունը մշտապես ուսանող ու ծաղկող, աճող, մյուս բոլոր ժողովուրդների համակրանքը վայելող մի հսկա է. այս է այդ երկրի ամենադիպուկ բնութագիրը»։

Իսկ 1952 թ. «Պրավդա»-ի նոյեմբերի 3-ի համարում Հրաչյա Քոչարը գրել է.

«Սովետական մարդիկ, բոլոր նրանք, ովքեր ծնվել են այն տարում, երբ հնչեցին «Ավրորայի» պատմական համազարկերը, ովքեր 1917 թվականի հոկտեմբերին մասնակցել են Ձմեռային պալատի գրոհին, ինչպես և մեր բոլորովին պատանի ժամանակակիցները, որ միայն վերջին տարիներին են անցել ինքնուրույն ստեղծագործական աշխատանքի, անձնուրաց գործունեությամբ հողագնդի ժողովուրդներին ցույց են տալիս, թե ինչպես պետք է պայքարել նոր կյանքի համար»։

1970 թվական, նոյեմբերի 29։

Հայ ժողովուրդը նշում է սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության ստեղծման 50-ամյակը։

Հայկական ՍՍՀ պետական դրոշի վրա փողփողում են Հայրենիքի երեք բարձրագույն պարգևները՝ Հոկտեմբերյան հեղափոխության և Լենինի երկու շքանշանները։ Հայերի հետ միասին այդ նշանավոր տարելիցը տոնեց Սովետական Միության ողջ ժողովուրդը։ Երևան ժամանեցին միութենական բոլոր հանրապետությունների, Մոսկվա և Լենինգրադ քաղաքների պատվիրակությունները։ Տոնակատարությանը Հայաստան եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը։

Նոյեմբերի 30-ին լույս տեսած «Պրավդա»-ի առաջին էջի խորագիրն էր՝ «Մեկ ճանապարհով դեպի մեծ նպատակը»։ Այդ էջում էլ տպագրվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի ողջույնը։

«Ժողովրդի երջանկությունը» հոդվածում («Պրավդա», 1970 թ., նոյեմբերի 29) Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը գրել է. «Հայ ժողովուրդը խորապես գիտակցում է, որ իր պատմական հաղթանակներն անխզելիորեն կապված են սովետական բոլոր եղբայրական ժողովուրդների և, ամենից առաջ՝ ռուս մեծ ժողովրդի ամենօրյա օգնության հետ։ Սովետների երկրի ժողովուրդների բարեկամություն, նրանց անխախտ միասնություն— այս է մեծ և բաղձալի նպատակը՝ կոմունիզմ տանող մեր հետագա հաղթական երթի ուժն ու գրավականը։

Դարեր կանցնեն, բայց սերունդները բարի խոսքով կհիշեն վերածնված Հայաստանի առաջին կառուցողներին, որոնք իրենց ժողովրդի բարգավաճման ու երջանկության գրանիտյա հիմքն են դրել»։

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևն իր ճառում բարձր գնահատեց Հայաստանի աշխատավորների գործունեությունը կոմունիզմի կառուցման մարզում։ Այդ ողջ ճառը համակված էր ժողովուրդների մեծ բարեկամության գաղափարներով, խոր հարգանքով հայ ժողովրդի մշակութային արժեքների, հայ ազգի սոցիալիստական ոգու և բնույթի հանդեպ։

Կկամենայի անդրադառնալ Սովետական Հայաստանի ժողովրդին հատուկ մի քանի բնորոշ գծերի,— տոնակատարության առթիվ կայացած ընդունելության ժամանակ ասաց Լեոնիդ Իլյիչը,— ամենից առաջ դա նրա բարձր կուլտուրան է կենցաղում, մարդկանց հետ շփվելիս ունեցած կուլտուրան, աշխա-

տանքային կուլտուրան, գիտական մտքի բարձր թռիչքը և արվեստի վառ ինքնատիպությունը։

Երկրորդ բնորոշ առանձնահատկությունն այն է, որ նա իր հարազատ երկիրը՝ Սովետական Սոցիալիստական Հայաստանը ջերմ խանդաղատանքով սիրող հայրենասերների ժողովուրդ է...

Վերջապես, երրորդ առանձնահատկությունն այն է, որ Սովետական Հայաստանի ժողովուրդը՝ կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորությունը, գյուղացիությունն ու մտավորականությունը, հայրենասիրական ոգին աքանչելիորեն զուգորդում են սովետական մարդու մի այլ, ոչ պակաս արժեքավոր հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ (տե՛ս Լ. Ի. Բրեժնև. Սովետական Հայաստանի 50 տարին։ «Հայաստան» հրատ., 1970, էջ 62, 63, 64)։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը կանխորոշեց սովետական հասարակության առաջընթացի նոր հորիզոններ, էկոնոմիկայի զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության վերելքի նոր հեռանկարներ։ Հայ ժողովուրդը սովետական պատմության երկրորդ հիսնամյակն է թևակոխել ստեղծագործական ուժերի չտեսնված ծաղկումով։

Սովետական Հայաստանը «Պրավդա»-ի տեսադաշտում է։ Նորակառույցներ... Արփա—Սևան ստորգետնյա ջրատար թունել։ Լեռնային-թունելագործների մասին չի կարելի խոսել առանց հուզմունքի։ Այդ խիզախ մարդիկ աշխատում են երկնամերձ բարձունքներում և լեռների ընդերքում։ Սխրագործություն է նրանց ամենօրյա աշխատանքը։

Լեռներում աշուն չի լինում։ Այստեղ ամառ էլ չի լինում։ Ծաղկում է գարունը, և ահա կրկին ձյունաբուքն է մոլեգնում։ Հնում այստեղ, կիրճում, նեղ մի արահետ ոլորաններով տանում էր լեռներն ի վեր։ Այժմ դեպի լեռներն է տանում բարեկարգ խճուղին։ Տարվա բոլոր օրերին հռնդում են մոտորները։ Վիթխարի ժայռը կախվել է սրընթաց գետի վրա. թվում է՝ նա խմում է Արփայի ջրերը, խմում ու չի հագենում։ Եվ այդ տեղում գետը պետք է շրջվի և 48 կիլոմետրանոց թունելով հոսի դեպի Սևանա լիճը։

Հրազդանը լույս է պարգևում։

Ձյունածածկ է Թեղանիս սարի գագաթը։ Թվում է, թե մեծ, ճերմակ թռչունը գրկել է սարը և իր հզոր թևերը առաջ պարզել։ Իսկ հովտում, ուր վեր են խոյանում Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի կորպուսները, զգացվում է լեռնային գարնան շունչը։ Շարք է մտել առաջին էներգակառուցահատվածը՝ 200 հազար կիլովատ-ժամ կարողությամբ։ Այստեղ լինելու է այդպիսի վեց ագրեգատ։ Մեկ միլիոն 200 հազար կիլովատ հզորություն։

Հայկական ատոմակայան։

Նոր հնգամյակում Արարատյան դաշտում կառուցվելու է ատոմային էլեկտրակայան՝ 815 հազար կիլովատ կարողությամբ։ Հայկական ԱԷԿ-ի առաջին հերթը կտա զգալիորեն ավելի շատ էլեկտրաէներգիա, քան հանրապետության բոլոր էլեկտրակայանները՝ 1969 թվականին։ Հնագույն մետաղաձուլման կենտրոն Մեծամորից ոչ հեռու շինարարները գցել են նոր քաղաքի հիմքը։

Գիտություն։ Արտադրության հետ համագործակցության կուրս։

«Պրավդա»-ում հանդես է գալիս Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Վ. Համբարձումյանը։

Սովետական Հայաստանում շատ բան է արված գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում։ Անցած (VIII) հնգամյակում Երևանում թողարկվել



է ամենամեծ էլեկտրոնային օղակաձև արագացուցիչը։ Մեր մաթեմատիկոսները, էլեկտրատեխնիկայի և էլեկտրոնիկայի մասնագետներն ստեղծել են էլեկտրոնային հաշվիչ «Նաիրի—3» մեքենան՝ ԷՀՄ-ի նոր սերնդի առաջնեկը։ Քիմիկոսները մշակել են պրակտիկայի համար կարևոր միացություններ, բուժական պատրաստուկներ։ Արագ զարգանում են քիմիայի նոր ճյուղերը։ Բյուրականի աստրոֆիզիկայի լաբորատորիայի գիտնականները հայտնաբերել են աստղային նոր համակարգեր։ Առաջիկայում այստեղ կտեղակայվի Եվրոպայի բոլոր աստղադիտակներին իր հզորությամբ գերազանցող մի աստղադիտակ։

«Պրավդա»-ն տեղեկացնում է, որ ...Հոկտեմբերի 50-ամյակի նախօրեին Երևանի ֆիզիկայի ինստիտուտում, թողարկվեց վեց միլիարդ էլեկտրոն-վոլտ հզորություն ունեցող էլեկտրոնային արագացուցիչ, որի վրա օգտագործվող փորձարարական տեղակայումներից մեկը՝ մոտ 200 տոննա կշիռ ունեցող գերճշգրիտ մագնիսային սպեկտրոմերը, հագեցած է նորագույն էլեկտրոնային տեխնիկայով։

Առաջին անգամ գազը Հայաստան մտավ տասնմեկ տարի առաջ՝ Ադրբեջանի Ղարադաղից։ Այնուհետև հանրապետության արդյունաբերության ու կենցաղային օբյեկտներին սնել սկսեց Ստավրոպոլից եկող գազը։ Վերջերս Հայաստանն սկսեց գազ ստանալ Իրանից։ Յուրաքանչյուր օր ավելի քան 16 խորանարդ միլիոն գազ է մտնում հայկական քաղաքներն ու գյուղերը։

Փոքրիկ գյուղ է Պտղնին։ Լեռներով շրջապատված։ Երկրաբաններն այստեղ կերակրի աղի մեծ հանքեր են գտել։ Եվ համարձակ միտք ծագեց. աղը լուծույթի վերածել, «աղաջուրը» արտամղել, իսկ մնացած ստորերկրյա դատարկ հանքատեղերն օգտագործել որպես գազի պահեստարաններ։ Առաջին փորձնական հերթը հնարավորություն կընձեռի ստանալու մոտ կես միլիոն խորանարդ մետրանոց գազապահեստարան։

«Պրավդա»-ն ներկայացնում է գրոհը ոսկե լեռների վրա։ Գրոհողների շարքերում են և Ուրալի, Սիբիրի, Ուկրաինայի լեռնագործները։ Շինարարները ջանք չեն խնայում Զոդի ոսկով հայրենիքի հարստությունը բազմապատկելու համար։

«Պրավդա»-ի հերոսներն են դարձել Վարպետ Մեհրաբը, որ 20 աղբյուրհուշարձան է կառուցել Լոռիում։ Շինարար կոմունիստ Պարգև Երիկյանը, որ այնքա՜ն տներ է կառուցել Երևանում։ Վարորդ Անուշավան Հայրապետյանը, ՍՍՀՄ ժողովրդական արտիստ Հրաչյա Ղափլանյանը, կոմպոզիտոր Էդգար Հովհաննիսյանը, գյուղական բժիշկ, բժշկական գիտությունների դոկտոր Արսեն Հայրյանը, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, նկարիչ Գրիգոր Խանջյանը, ականավոր գիտնական Սերգեյ Մերգելյանը, սրտաբան Ալեքսանդր Միքայելյանը, սոցիալիստական աշխատանքի հերոս Սամվել Մաթևոսյանը, «ԵՐԱԶ» ավտոմեքենայի ստեղծողները և շատ ուրիշներ...

«Պրավդա»-ի տեսադաշտում Սովետական Հայաստանն է. նրա էջերում, համար առ համար պատմվում է ՍՍՀՄ միութենական հանրապետություններից մեկի աշխատավոր մարդու հերոսագործության, գիտության, կուլտուրայի զարգացման, նորոգ կյանքի մասին։

«Պրավդա»-ի պատմությունը՝ սովետական ողջ ժողովրդի սխրանքների տարեգրությունն է— միշտ ժողովրդի, կուսակցության հետ՝ դեպի կոմունիզմ տանող նրա հաղթարշավում։

# ՄԵԾ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀՈՒՍԱԼԻ ԳՐԱՎԱԿԱՆԸ

Հ. Հ. ՍԻԼՎԱՆՅԱՆ

*Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ լենինյան գաղափարները սովետական հասարակարգի զարգացման արդի փուլում իրենց զարգացումն ու ստեղծագործական կիրառումն են գտնում Սովետական Միության կոմունիստական կուսակցության վարած քաղաքականության մեջ։ ՍՄԿԿ վերջին համագումարների որոշումներում, կուսակցական փաստաթղթերում այդ դաշինքը դիտվում է որպես կոմունիստական շինարարության գլխավոր հարցերից մեկը։*

*Մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի և կոմունիզմի կառուցմանն անցնելու շնորհիվ որակապես փոխվել է սովետական հասարակության դասակարգային կառուցվածքը։ Սակայն երկրի դասակարգային կազմում տեղի ունեցած արմատական փոփոխություններն ամենևին չեն վկայում, թե այլևս դասակարգեր չկան, թե նրանք որպես հասարակական երևույթ վերացել են։ Ներկայումս ՍՍՀՄ-ում գոյություն ունեն շահագործումից ու հակամարտությունից զերծ բարեկամական երկու դասակարգեր՝ բանվոր դասակարգը և կոլտնտեսային գյուղացիությունը։ Նրանք չեն կորցրել դասակարգաորոշիչ հատկանիշները և իրարից տարբերվում են արտադրության պատմականորեն որոշակի (սոցիալիստական) սիստեմում գրաված տեղով, արտադրամիջոցների նկատմամբ իրենց հարաբերությամբ, աշխատանքի հասարակական կազմակերպման մեջ ունեցած դերով, եկամուտների ստացման եղանակով։ Այդ երկու դասակարգերը խարսխված են կյանքի սոցիալիստական միատիպ հիմունքների վրա։ Սոցիալիստական սեփականություն հանդիսացող արտադրամիջոցները, աշխատանքի կոլեկտիվ կազմակերպումը և եկամուտների սոցիալիստական բաշխումը սոցիալապես մոտեցնում են բանվոր դասակարգին ու գյուղացիությանը, բարեկամացնում նրանց։*

*Սոցիալիստական հասարակության մեջ բանվոր դասակարգի ու գյուղացիության հետ մեկտեղ կա նաև ինտելիգենցիա։ Մեր երկրի բանվոր դասակարգը, գյուղացիությունը և մտավորականությունը միավորված են բարեկամության ու եղբայրության սերտ կապերով։ Նպատակների ու շահերի ընդհանրությամբ, միաձուլված են մարքսիզմ-լենինիզմի միասնական գաղափարախոսությամբ։*

*Սովետական հասարակարգի սոցիալ-քաղաքական պրոցեսների կառավարման գործում կարևոր մոմենտ է այսօր բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի հետագա զարգացումն ու ամրապնդումը։*

*Լինելով սոցիալիստական հասարակարգի քաղաքական հիմքը, այդ դաշինքն արդի պայմաններում ձեռք է բերում նոր բովանդակություն՝ ինչպես վերը նշեցինք, դասակարգերի ներսում տեղի ունեցած արմատական փոփոխությունների շնորհիվ։ «Այդ մեծ դաշինքի ցեմենտող ուժը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը արհեստակցական միությունների XV համագումարում արտասանած ճառում,— մնում է բանվոր դասակարգը, որը առաջատար դեր է խաղում և կխաղա կոմունիզմի կառուցման գործում։ Հենց այդ հիման վրա է տեղի ունենում սովետական հասարակության գաղափարա-քաղաքական և սոցիալական հետագա համախմբումը, երկրի ազգերի ու ազգությունների մերձեցումը»* (Լենինյան կուրսով, *հ. 3, էջ 655)։*

*Մեր երկրում ամենաբազմազգ դասակարգը բանվոր դասակարգն է։ Այն ընդգրկում է 65* մլն *մարդ։ Բանվոր դասակարգի զբաղվածությունը հանրային արտադրության վճռական ոլորտներում նրան դարձնում է մեր հասարակության արտադրողական և ստեղծագործական գլխավոր ուժը։ Նա օրգանապես կապված է ժամանակակից սոցիալիստական ինդուստրիայի հետ և աշխատանքի հասարակական կազմակերպման արդի ձևերի հիմնական կրողն է։ Այս ամենը քաղաքական կազմակերպվածության և կարգապահության հետ միասին նրան դարձնում է մեր հասարակության կյանքի առաջատար ուժը։*

*ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է դարձրել և դարձնում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում բանվոր դասակարգի առաջատար դերին։ Ներկայումս ավելի ու ավելի է բարձրանում նրա հեղինակությունը մեր հասարակության բոլոր խավերում։ Դա բացատրվում է այն բանով, որ բանվոր դասակարգի ստեղծած կոմունիստական կուսակցությունը, որն արտահայտում է բոլոր աշխատավորների շահերը, իր ղեկավարող և ուղղություն տվող գործունեությամբ օգնում է բացահայտելու բանվոր դասակարգի հեղափոխական ստեղծագործական բարձր հատկությունները։ Կոմունիստական կուսակցության ղեկավարության մեջ է իր արտահայտությունը գտնում բանվոր դասակարգի ղեկավար դերը մեր հասարակության կյանքում։*

*Կոմունիստական կուսակցությունը բանվոր դասակարգին դիտում է որպես իր գլխավոր սոցիալական հենարանը։ Քաղաքական հասունությունը, գաղափարական համոզվածությունը, բարոյական բարձր հատկությունները և ինքնակարգապահությունը հասարակության խավերի վրա բանվոր դասակարգի ներգործության վճռական պայմաններն են։ Հիրավի, վերջին տարիներս զգալիորեն բարձրացել է բանվորների պրոֆեսիոնալ որակավորումը, նրանց կրթական մակարդակը։ Այդ են վկայում մասնավորապես վերջին երկու մարդահամարների տվյալները։ Օրինակ, եթե 1969 թ. մեր երկրում յուրաքանչյուր հազար բանվորից բարձրագույն ու միջնակարգ կրթություն ուներ 386-ը, ապա 1971 թ. ավելի քան 550-ը (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 96)։ Բանվոր դասակարգի հանրակրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման գործում ՍՄԿԿ-ն կիրառում է ուսուցման գոյություն ունեցող բոլոր ձևերը՝ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությունից սկսած, որն օգնում է*

բանվորներին աշխատանքի ընդունվելուց առաջ մասնագիտություն ստանալ, մինչև բարձրագույն կրթությունը, առանց որի դժվար է հաղորդակից դառնալ գիտության ու տեխնիկայի արդի նվաճումներին։ Միայն այնպիսի անհրաժեշտ գիտելիքներ ձեռք բերելու շնորհիվ, որոնք օգնում են կատարելապես տիրապետելու սեփական մասնագիտությունը, բանվոր դասակարգը կկարողանա բարձրանալ ու հասնել գիտատեխնիկական հեղափոխության պահանջների մակարդակին, պահպանել առաջատար ուժի դիրքը հասարակության մեջ։

Քաղաքական ակտիվության աճը պայմանավորված է պետական, տնտեսական և այլ կազմակերպություններում բանվոր դասակարգի մասնակցության զգալի ուժեղացմամբ։ Այսպես, 1971 թ. տեղական սովետների կազմում ընտրված 2.000.000 դեպուտատներից 790.340-ը բանվորներ են։

Հասարակության բոլոր խավերում ու ոլորտներում բանվոր դասակարգի ներգործության ամրապնդմանն ուղղված կուսակցության ջանքերն այսօր տալիս են իրենց բեղմնավոր արդյունքները։

Կոմունիստական շինարարության ոլորտում ակտիվ ուժ է կոլտնտեսային գյուղացիությունը։ Շահագործվող և ճնշված դասակարգից, մանր սեփականատիրոջից, ինչպիսին գյուղացիությունն էր մինչհեղափոխական Ռուսաստանում, այժմ նա, բանվորների հետ միասին, դարձել է սովետական հասարակության հիմնական դասակարգը։

Գյուղատնտեսության արտադրաուժերի զարգացման, գյուղատնտեսական աշխատանքը հետզհետե ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը դառնալու, գյուղի մակարդակի բարձրացման և կենցաղի վերակառուցման շնորհիվ կոլտնտեսականների ու բանվորների մոտ առավել շատ ընդհանուր գծեր են նկատվում։ Դրան նպաստում է այն կոլտնտեսականների թվի աճը, որոնց գործունեությունն անմիջականորեն կապված է հանրային մեքենաների ու մեխանիզմների հետ։

Այսօրվա կոլտնտեսականը սոցիալիստական տիպի աշխատավոր է, որի սոցիալական դեմքը որակապես փոխվել է և որն օժտված է կոլեկտիվիստական հոգեբանությամբ։ Գիտատեխնիկական առաջադիմության շնորհիվ գյուղի կուլտուրայի մակարդակի զգալի բարձրացումը հանգեցրել է մեր հասարակարգի մեծագույն հաղթանակին. գյուղական բնակչության կեսից ավելին ներկայումս ունի միջնակարգ կամ բարձրագույն կրթություն։ Մինչդեռ 1939 թ. միայն 6 տոկոսն ուներ բարձրագույն ու միջնակարգ կրթություն։

Սովետական կոլտնտեսային գյուղացիության զարգացման գործում մեծ դեր խաղաց կոլտնտեսականների համամիութենական III համագումարը, որն ընդունեց կոլտնտեսության օրինակելի կանոնադրությունը և ընտրեց կոլտնտեսությունների միութենական խորհուրդը։ Կոլտնտեսությունների խորհուրդներ ընտրվեցին նաև շրջաններում, մարզերում, երկրամասերում, հանրապետություններում։ Դրանք շատ կարևոր միջոցառումներ են, որոնք նպաստում են կոլտնտեսային գյուղացիության զարգացմանը։

Արդի պայմաններում շարունակում է զարգանալ և թվականորեն աճել սովետական ինտելիգենցիան՝ սոցիալական այն խավը, որն ըստ մասնագիտության զբաղվում է մտավոր աշխատանքով։ Ինտելիգենցիան մեր երկրի բնակչության զգալի մասն է կազմում։ Այսպես, եթե 1926 թ. ՍՍՀՄ-ում 3 մլն-ից էլ պակաս էին անմիջականորեն մտավոր աշխատանքով զբաղվողները, ապա այն պահից ի վեր նրանց թիվը մշտապես աճել է և այժմ կազմում է



ավելի քան 30 մլն մարդ (տե՛ս СССР в цифрах, Стат. сборник, 1971, стр. 23)։

Օրինաչափորեն արագանում են գիտատեխնիկական մտավորականության թվի աճի տեմպերը, գերազանցելով սոցիալական մյուս խմբերին։ Վերջին տարիներս զգալիորեն ավելացել է գիտական աշխատողների, ինժեներների, տեխնիկների, գյուղատնտեսների, ուսուցիչների ու բժիշկների թիվը։ Միայն վերջին 20 տարում գիտական աշխատողների թիվն աճել է ավելի քան 5 անգամ և այժմ կազմում է մոտ 1002,9 հազար մարդ։

Սովետական մտավորականությունն իր էությամբ խորապես ժողովրդային է։ Նրա շահերը լիովին համընկնում են բանվորների ու գյուղացիների շահերին։ Սովետական մտավորականությունն ստեղծագործական իր ողջ եռանդը նվիրում է սոցիալիստական զարգացած հասարակարգի հիմքերի ամրապնդմանն ու հետզհետե կոմունիստականի վերաճմանը։ Մտավորականներին ղեկավարելիս մեր կուսակցությունը հետևողականորեն զուգորդում է մտավոր աշխատանքի յուրահատկությունների նկատմամբ ուշադիր վերաբերմունքը կուսակցական սկզբունքայնության, գաղափարական կայուն դիրքերի պահպանման պահանջի հետ։

Սովետական հասարակության դասակարգային կառուցվածքում տեղի ունեցած փոփոխությունները վկայում են, որ կոմունիստական շինարարության արդի պայմաններում այդ հասարակությունը բնորոշվում է սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությամբ։ Դրա կողքին և որպես վերը նշված փոփոխությունների հետևանք նոր բովանդակություն է ստանում նաև բանվոր դասակարգի ու գյուղացիության սոցիալիստական հասարակարգի հիմքը հանդիսացող դաշինքը։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ առանց այդ դաշինքի բանվոր դասակարգը չի կարողանա հաղթանակ տանել քաղաքական պայքարում և հաջողությամբ կառուցել նոր հասարակարգը։ Նա գրել է. «Ամենամարտական, ամենաէական հարցը բանվոր դասակարգի վերաբերմունքն է գյուղացիության նկատմամբ, բանվոր դասակարգի դաշինքն է գյուղացիության հետ, խոշոր ֆաբրիկայի երկարատև, ծանր, բայց ազնիվ դպրոցն անցած առաջավոր բանվորների ունակությունն է՝ գործն այնպես դնելու, որ կապիտալիզմի կողմից ճնշված գյուղացիական մասսային իրենց կողմը գրավեն... միայն այդ դաշինքում է գյուղացիության փրկությունը կալվածատերերի ու կապիտալիստների դարավոր լծից» (ППС, т. 44, стр. 305)։ Հենց այդ դաշինքում էր Լենինը տեսնում «մեր հաջողությունների ու մեր վերջնական հաղթանակի գրավականը» (ППС, т. 45, стр. 58)։

ՍՄԿԿ-ն այս հարցում ևս հավատարիմ է մնում լենինյան սկզբունքներին։ Կուսակցության ծրագրում նշված է. «ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության անխախտ դաշինքի հետագա ամրապնդումը քաղաքական և սոցիալ-տնտեսական նշանակություն ունի ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման համար» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 499)։

Մեր հասարակության զարգացման արդի փուլում առանձնապես կարևոր նշանակություն ունի այդ դաշինքի ղեկավարության հարցը։ Տվյալ պրոցեսում առաջատար դեր է կատարում մեր հասարակարգի ղեկավարման բարձրագույն սուբյեկտը՝ կոմունիստական կուսակցությունը։ Բանվոր դասակարգի և գյուղացիության քաղաքական դաշինքն անհնար է առանց կոմունիստական կու-

սակցության ղեկավարության։ Կուսակցությունը պատշաճ ակտիվությամբ է մասնակցում այդ դաշինքի ձևերի ինչպես տեսական մշակմանը, այնպես էլ դրանց պրակտիկ կենսագործմանը։

Կուսակցության ղեկավար դերը բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի ամրապնդման գործում իր արտահայտությունն է գտնում հասարակական կյանքի գրեթե բոլոր հիմնական ոլորտներում։

ՍՄԿԿ-ն բանվորների ու գյուղացիների դաշինքը ամրապնդելիս անդադրում ուշադրություն է նվիրում սոցիալիստական դասակարգերի շահերի ճիշտ հաշվառմանն ու զուգակցմանը, որոնք հսկայական նշանակություն ունեն սովետական հասարակության դասակարգային կառուցվածքի հետագա արմատական փոփոխությունների համար։

Բանվորների ու գյուղացիների դաշինքի ամրապնդումը մեծապես նպաստում է կուսակցության քաղաքական գծի մշակմանն ու իրականացմանը նրանց ակտիվ մասնակիցներ դարձնելուն։ Այդ է վկայում երկու դասակարգերի լայն ներկայացուցչությունը կուսակցության բարձրագույն մարմիններում։ Այսպես, ՍՄԿԿ XXIV համագումարի պատգամավորներ ընտրվեցին արդյունաբերության տարբեր ճյուղերի, շինարարության ու տրանսպորտի 1.195 բանվորներ։ Նրանց թվում կան անվանի մետալուրգներ և հանքագործներ, մեքենաշինարարներ ու տեքստիլագործներ, երկաթուղայիններ, շինարարներ էլեկտրոնային հաշվիչ ամենաբարդ մեքենաներ և ավտոմատ սարքեր պատրաստող բարձրորակ վարպետներ։ Համագումարի պատգամավորներ էին գյուղատնտեսության 870 աշխատողներ, որոնց երկու երրորդը շարքային կոլտնտեսականներ ու սովխոզի բանվորներ էին, օղակավարներ, բրիգադավարներ, ֆերմայի վարիչներ՝ մարդիկ, որոնք իրենց համառ աշխատանքով բարձր բերք են ստանում, ավելացնում անասնապահական մթերքների արտադրությունը, ամրապնդում կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 160)։

Բանվորների ու գյուղացիների դաշինքն այսօր աչքի է զարնում նաև հոգևոր-գաղափարական ընդհանրությամբ։ Այժմ ինչպես բանվորների, այնպես էլ գյուղացիների աշխարհայացքը մարքսիզմ-լենինիզմն է, որը բանվոր դասակարգի գաղափարախոսությունից դարձել է ՍՍՀՄ դասակարգերի ու սոցիալական խմբերի գաղափարախոսությունը։

Գյուղացիական մասսաների գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացումը, աշխատավորներին գիտական կոմունիզմի և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու նպատակով կոմունիստական կուսակցության կատարած մեծ աշխատանքը կոլտնտեսային գյուղացիությանն օգնում են բարձրանալ-հասնել բանվոր դասակարգի գիտակցականության մակարդակին։

Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության փոխհարաբերությունների զարգացման փուլերում, բոլոր առումներով բանվոր դասակարգն իր դաշնակցի նկատմամբ պահպանում է առաջատար ուժի իր դերը։ Դա է մեր հաղթանակների ու անդասակարգ կոմունիստական հասարակարգի հաջող կառուցման գրավականը։

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՓԱՌԱՏՈՆԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

(Երիտասարդության և ուսանողների համաշխարհային տասներորդ փառատոնի առթիվ)

**Վ. Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ**
Հայաստանի երիտասարդական կազմակերպությունների կոմիտեի նախագահ

Միջազգային լարվածության թուլացման, սոցիալիստական և կապիտալիստական երկրների փոխհարաբերություններում քաղաքական մթնոլորտի բարելավման արդի պայմաններում գաղափարական պայքարը ո՛չ միայն չի թուլանում, այլ, ընդհակառակը, խիստ սրվում է։

Գաղափարական սուր պայքարի պայմաններում ներկայիս գլխավոր հակամարտ ուժերն առավել մեծ չափով են հետաքրքրվում երիտասարդության և, մասնավորապես, երիտասարդական միջազգային շարժմամբ։ Ըստ ՅՈՒՆԵՍԿՈ-ի 1972 թ. տվյալների, այժմ մինչև 24 տարեկան երիտասարդները կազմում են մեր մոլորակի բնակչության ավելի քան 50 տոկոսը։ Գիտատեխնիկական հեղաշրջումը, համաշխարհային էկոնոմիկայի զարգացումն այն հիմնական գործոններն են, որոնք պայմանավորում են երիտասարդության մասնակցության ուժեղացումը արտադրությանը, արտադրապրոցեսում զբաղված երիտասարդության բացարձակ թվի, այնպես էլ աշխատավոր բնակչության մեջ նրա տեսակարար կշռի մեծացումը։

Վ. Ի. Լենինը երիտասարդությանը համարում էր հզոր ուժ պրոլետարիատի դասակարգային պայքարում։ «Մենք ապագայի կուսակցություն ենք,— գրել է Վ. Ի. Լենինը,— իսկ ապագան երիտասարդությանն է պատկանում։ Մենք նորարարների կուսակցություն ենք, իսկ նորարարների ետևից միշտ ավելի սիրով երիտասարդությունն է գնում (Երկեր, հ. 11, էջ 442)։

Մարքսիզմ-լենինիզմը երիտասարդությանը չի համարում առանձնահատուկ «դասակարգ»։ Դրա հետ մեկտեղ, երիտասարդությանը, որպես որոշակի սոցիալական կատեգորիայի, չի կարելի անջատել հասարակության դասակարգային կառուցվածքից, քանի որ երիտասարդությունն ապրում է ո՛չ թե վերա-

ցական աշխարհում, այլ կոնկրետ իրականության մեջ։ Ուստի, երիտասարդու-
թյան գործողությունները ևս ենթարկվում են դասակարգային պայքարի օրի-
նաչափություններին և այն դասակարգերի շահերին ու գործողություններին,
որոնց պատկանում է նա։

Աճող սերնդի գաղափարական և քաղաքական կողմնորոշումն ըստ էու-
թյան հասարակական առաջընթացի, ապագա հասարակության ճակատագրի
խնդիրն է։ Երիտասարդ սերնդի հասարակական-տնտեսական և հոգևոր պա-
հանջմունքների բավարարման արմատական հարցերում սկզբունքային հակա-
սություններ գոյություն ունեն կոմունիստական և բուրժուական գաղափարա-
խոսությունների միջև։

Սոցիալիզմի ժամանակ հասարակությունն առավելագույն բարենպաստ
պայմաններ է ստեղծում երիտասարդության սոցիալական ակտիվության զար-
գացման համար։ Սոցիալիստական հասարակարգն ապահովում է երիտասարդ
սերնդի իրական մասնակցությունը պետության կառավարմանը, հասարակա-
կան, տնտեսական ու կուլտուրական կյանքին։

Կապիտալիզմի պայմաններում երիտասարդությունը չի տեսնում կյանքի
հեռանկարներ, իր կենսական պրոբլեմների լուծման հնարավորություններ։
Նա ավելի շատ զգում է կապիտալիզմի սոցիալական հակասությունների ծանր
հետևանքները։ Կոմերիտմիության XVI համագումարում ունեցած իր ելույթում
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Մենք վկա ենք
կապիտալի երկրներում երիտասարդական շարժման բուռն վերելքին։ Դա կա-
պիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման կարևոր ախտանշանն է։ Երի-
տասարդությունը չի ուզում հաշտվել շահագործական հասարակարգի հետ, իմ-
պերիալիզմի արյունալի ավանտյուրաների հետ» (Լենինյան կուrսով, հ. 3,
էջ 44)։

Կապիտալիստական երկրներում տարերայնորեն ըմբոստացող երիտասար-
դության կողմնորոշումը դեպի գիտական սոցիալիզմ, երիտասարդության կո-
մունիստական կազմակերպությունների հեղինակության և ղեկավար դերի
աճը երիտասարդական շարժման մեջ տեղի են ունենում երիտասարդության և
ուսանողության հիմնական քաղաքական ուժերի դասակարգային պայքարի
հետագա սրման ու խորացման պայմաններում։

Աշխարհի դեմոկրատական երիտասարդության միասնական ճակատի
ստեղծման և ամրապնդման պատմության մեջ խոշոր նշանակություն ունե-
ցան երիտասարդության և ուսանողների համաշխարհային փառատոները,
որոնց մասնակցել են մեր հողագնդի գրեթե բոլոր աշխարհամասերի ավելի
քան 200 հազար պատանիներ ու աղջիկներ։

Համաշխարհային փառատոների գաղափարը ծնունդ առավ 1945 թ. նո-
յեմբերին, երբ Լոնդոնում համաշխարհային կոնֆերանսի էին հավաքվել հինգ
աշխարհամասերի երիտասարդության ներկայացուցիչները։ Դեռ այն ժամա-
նակ կոնֆերանսը վիժեցնելու, տարբեր երկրների պատանիների ու աղջիկների
միասնությունը խարխլելու, երիտասարդությանը ֆաշիզմի և իմպերիալիզմի
դեմ մղվող պայքարից շեղելու փորձերն արժանի հակահարված ստացան առա-
ջադիմական երիտասարդության ամենալայն խավերի կողմից։ Կոնֆերանսն
անցավ աշխարհի ազատասեր երիտասարդության համերաշխությունն ու բա-
րեկամությունն ամրապնդելու նշանաբանով և միջազգային երիտասարդական
շարժման պատմության խոշորագույն իրադարձություններից մեկը հանդիսա-



ցավ։ Այդտեղ ստեղծվեց Դեմոկրատական երիտասարդության համաշխարհա-
յին ֆեդերացիա (ԴԵՀԱՖ), որը դարձավ երիտասարդության իսկական դեմոկ-
րատական միջազգային միակ կազմակերպությունը և իր գլխավոր նպատակը
համարեց երիտասարդության միջազգային համագործակցությունը՝ տնտեսա-
կան, քաղաքական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։

Միջազգային փառատոն կազմակերպելու գաղափարն արժանացավ աշ-
խարհի դեմոկրատական երիտասարդության լայն շրջանների պաշտպանությա-
նը։ 1947 թ. մինչև այժմ անց են կացվել ինը համաշխարհային փառատոներ։
Փառատոնից-փառատոն աճել է դրանց մասնակիցների և իրենց պատվիրա-
կությունները ուղարկած երկրների թիվը։ Ավելի ու ավելի բազմազան ու բո-
վանդակալից են դարձել փառատոների ծրագրերը։

Երիտասարդության առաջին համաշխարհային փառատոնը տեղի ունեցավ
Պրագայում, 1947 թվականին։ Դրան մասնակցեցին 72 երկրների երիտասար-
դության ներկայացուցիչներ։ Այն վերածվեց մեր մոլորակի առաջադեմ երի-
տասարդության հզոր ցույցի։ «Երիտասարդություն, միավորվի՛ր կայուն խա-
ղաղության համար մղվող պայքարում» նրա գլխավոր լոզունգն իր վառ մարմ-
նավորումը գտավ պատվիրակությունների ելույթներում։

Իմպերիալիստական ռեակցիոն ուժերը, որոնք ձգտում են խանգարել ժո-
ղովուրդների միջև կուլտուրական կապերի ու բարեկամության հաստատմանը,
պետությունների խաղաղ գոյակցությանը, շատ ջանքեր են գործադրել վիժեց-
նելու համաշխարհային փառատոները։ 1949 թ. Բուդապեշտում կազմակերպ-
ված երկրորդ փառատոնի նախօրյակին ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը
մերժեց ամերիկյան շատ պատանիների և աղջիկների խնդրանքը երկրից մեկ-
նելու թույլտվություն ստանալու մասին։ Լատինական Ամերիկայի երկրների և
գաղութների շատ պատվիրակություններ Բուդապեշտի փառատոնին մասնակ-
ցելուց զրկվեցին հետապնդումների պատճառով։ Համաշխարհային երրորդ
փառատոնից հետո, որը տեղի ունեցավ Բեռլինում, 1951 թ., ամերիկյան սե-
նատոր Մակկարենը պահանջեց պատժել Բեռլինի փառատոնին մեկնած երի-
տասարդներին, որոնք, իբր, դարձել են «կոմունիստական պրոպագանդայի
զոհերը»։

Վիեննայում տեղի ունեցած VII համաշխարհային փառատոնում գաղա-
փարական պայքարն առանձնապես սուր արտահայտվեց «Երիտասարդ կյանք»
հակափառատոնային կազմակերպության ստեղծմամբ, որի ներկայացուցիչ-
ները, գլխավորապես Ավստրիայի կաթոլիկ երիտասարդական կազմակերպու-
թյունները, հայտարարեցին, թե հրաժարվում են փառատոնին մասնակցելուց։
Սակայն այդ կազմակերպության պարագլուխները վախեցան բացահայտ բա-
նավեճերից, գերադասեցին զրպարտչական պրոպագանդան և մանր պրովո-
կացիաների կազմակերպումը։ Դրանք խղճուկ քայլեր էին, որոնք ձախողվե-
ցին։ Խաղաղության ու բարեկամության գաղափարը, երիտասարդության վճռա-
կան բողոքն ընդդեմ նոր պատերազմի սպառնալիքի պաշտպանություն գտան
փառատոնի մասնակիցների և բազմահազար շարքային ավստրիացիների կող-
մից։ Վիեննայի փառատոնի հաջողությունը համոզիչ կերպով հաստատեց, որ
խաղաղության, բարեկամության, համերաշխության գաղափարը միավորում է
հողագնդի երիտասարդության լայն զանգվածներին։ 1967 թ. գարնանը, ԱՄՆ-ի
երիտասարդական կազմակերպությունների ղեկավարության հետ ամերիկյան
կենտրոնական հետախուզական վարչության խայտառակ գաղտնի կապերի

մերկացման կապակցությամբ, բացահայտվեցին փառատոնային շարժման հետ կապված նոր շատ փաստեր։ Պարզվեց, որ, Պրագայում գումարված համաշխարհային առաջին փառատոնի ժամանակներից սկսած, ԱՄՆ-ի հետախուզությունը ամերիկյան և արևմտա-եվրոպական մի շարք երիտասարդական կազմակերպությունների կաշառված պարագլուխների առջև խնդիր է դրել վիժեցնել երիտասարդների համաշխարհային հանդիպումները։ 1958 թ. ԱՄՆ-ում ստեղծվեց այսպես կոչված «Անկախ հետազոտական ծառայություն»։ Այն կոչված էր բոլոր միջոցներով վարկաբեկել փառատոները, հակակոմունիստական բազմաթիվ հրատարակությունների օգնությամբ ապակողմնորոշել երիտասարդությանը։

Սակայն ինչպիսի ջանքեր էլ գործադրեին երիտասարդության միասնության թշնամիները, ինչպիսի միջոցների էլ դիմեին հակափառատոնային իրենց գործունեության մեջ, նրանց պլանները ձախողվում էին։ Փառատոների հաղթարշավը կրկին ցույց է տալիս, թե որքան անճարակ են նրանք, ովքեր չեն հավատում երիտասարդության դեմոկրատական լայն զանգվածների ուժին, ովքեր վարակված են աղանդավորականությամբ և դիտավորյալ նեղացնում են առաջադիմական երիտասարդական շարժման բազան՝ դրանով իսկ օբյեկտիվորեն օգնելով իմպերիալիզմին։ Խաղաղության, առաջադիմության և ժողովուրդների ազատության թշնամիներին դուր չի գալիս փառատոների՝ աշխարհի խաղաղասեր ուժերի այդ մասսայական ցույցերի, խաղաղության և առաջադիմության համար պայքարի այդ միջոցի հասարակական-քաղաքական նշանակությունը։

Համաշխարհային փառատոները հստակորեն արտացոլել են ուժերի հարաբերակցությունը միջազգային երիտասարդական շարժման մեջ՝ ցույց տալով ժողովուրդների ազգային և սոցիալական ազատագրության, դեմոկրատիայի և խաղաղության համար հանդես եկող կազմակերպությունների անշեղ աճն ու ամրապնդումը։

Անդրադառնալով անցած ինը փառատոների պատմությանը՝ կարելի է նշել, որ ո՛չ միայն աճել է համաշխարհային փառատոների մասնակից երկրների և կազմակերպությունների թիվը, այլև անընդհատ որակապես կատարելագործվել է այդ շարժումը, շարունակ հարստացել նոր բովանդակությամբ, համապատասխանել դեմոկրատական երիտասարդության հասունացած խնդիրներին և միջազգային կյանքի կողմից առաջ քաշվող հրատապ պրոբլեմներին։ Փառատոների պատմության մեջ կարելի է տեսնել մեր մոլորակի առաջադիմական, դեմոկրատական բոլոր ուժերի հետպատերազմյան տարիների պայքարի կարևորագույն փուլերի արտացոլումը։ Փառատոների լոզունգները պահանջել են դադարեցնել «սառը պատերազմը», ամերիկյան ագրեսիան Կորեայում և Հնդկաչինում, արգելել միջուկային զենքի փորձարկումները, վերջ տալ գաղութային վարչաձևերին Ասիայում և Լատինական Ամերիկայում։

Համաշխարհային փառատոները մեծ չափով նպաստում են դեմոկրատիայի և խաղաղության համար երիտասարդության պայքարի ծավալմանը։ Իրենց կառուցվածքային ու ծրագրային բազմազանության շնորհիվ, փառատոները ներգրավում են երիտասարդության սոցիալական տարբեր խավերի ներկայացուցիչներին՝ բանվորներին, գյուղացիներին, մտավորականությանը, ուսանողներին, ստեղծագործական և սպորտային երիտասարդությանը, ինչպես նաև այն պատանիներին ու աղջիկներին, որոնք առայժմ հեռու են ակտիվ քաղա-



քական կյանքից։ Փառատոների քաղաքական ուղղությունը և հագեցվածությունը պայմանավորում են քաղաքականության նկատմամբ երիտասարդության ավելի ու ավելի զգալի խմբերի հետաքրքրության արթնացումը, նրանց ծանոթացնում են արդիականության հիմնական քաղաքական կոնցեպցիաներին և տենդենցներին, նպաստում ժամանակակից երիտասարդության քաղաքական ինքնագիտակցության աճին։

Ազգային անկախության և ազատության համար պայքարող երկրների երիտասարդությունը հարաճուն հետաքրքրասիրություն է ցուցաբերում համաշխարհային փառատոների նկատմամբ։ Այդ երկրների երիտասարդ սերունդը փառատոները համարում է ազգային-ազատագրական պայքարի հետ ամբողջ աշխարհի երիտասարդության համերաշխության ամրապնդման միջոցառում, համաշխարհային հասարակայնությանը երիտասարդական կազմակերպությունների ծրագրերին ծանոթացնելու ամբիոն, միջազգային դեմոկրատական երիտասարդական շարժմանը գործնականորեն մասնակցելու ասպարեզ։

Համաշխարհային փառատոները կարևոր նշանակություն ունեն զարգացող երկրների երիտասարդական կազմակերպությունների համար։ Դրանք նպաստում են հիշյալ երկրների երիտասարդության ինտերնացիոնալ հեղինակության բարձրացմանը, նրանց բացառիկ հնարավորություններ տալով մոլորակի ամբողջ երիտասարդության հետ բազմակողմանի հարաբերություններ զարգացնելու համար։

Սոցիալիստական երկրների երիտասարդական միությունների համար համաշխարհային փառատոները միջազգային շփման լրացուցիչ, շատ կարևոր ձև են և թույլ են տալիս համաշխարհային հասարակայնության ուշադրությունը հրավիրել իրենց երկրների սոցիալիստական նվաճումների, յուրահատուկ պրոբլեմների և երիտասարդական շարժման հաջողությունների վրա։

Երիտասարդության և ուսանողների հերթական տասներորդ համաշխարհային փառատոնը տեղի կունենա Գերմանական Դեմոկրատական Հանրապետության մայրաքաղաք Բեռլինում, այս տարվա հուլիսի 28-ից օգոստոսի 5-ը։ Փառատոների 25-ամյա պատմության ընթացքում ԳԴՀ-ն երկրորդ անգամ է ընդունում սոցիալիզմի և կոմունիզմի երիտասարդ շինարարներին, գաղութային լուծը թոթափած երկրների երիտասարդներին, ազգային-ազատագրական շարժման պատվիրակներին, կապիտալիստական երկրների պատանիներին ու աղջիկներին, որոնք խիզախորեն պայքարում են իրենց իրավունքների, խաղաղության, համերաշխության և բարեկամության համար։

Գերմանիայի միասնական սոցիալիստական կուսակցությունը Ազատ գերմանական երիտասարդության միությանն ամեն կերպ օգնում է փառատոնը կազմակերպելու գործում։ 1972 թ. փետրվարի 18-ին Բեռլինում ստեղծվեց ազգային նախապատրաստական կոմիտե՝ Էրիխ Հոնեկերի գլխավորությամբ։ Երիտասարդության և ուսանողների տասներորդ համաշխարհային փառատոնի միջազգային նախապատրաստական կոմիտեի հիմնադիր ժողովում ընդունվեց Դիմում՝ ուղղված ամբողջ աշխարհի երիտասարդությանը։ Այդտեղ ասված է, որ փառատոնը հետապնդում է հետևյալ նպատակները.

— միահամուռ միջազգային համերաշխություն արտահայտել Վիետնամի, Լաոսի և Կամբոջայի ժողովուրդների հերոսական պայքարին, այդ երկրների

ժողովուրդներին հնարավորություն տալ իրենց գործերը կարգավորել սեփական կամքով, առանց արտաքին միջամտության.

— դառնալ ազգային-ազատագրական շարժման, ազատության և ազգային անկախության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի համար, գաղութակալության, նեոգաղութակալության, ռասիզմի, սիոնիզմի և ապարտեիդի դեմ արաբական երկրների երիտասարդության, Պաղեստինի ժողովրդի պայքարին, պորտուգալական գաղութների, Հարավային Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի և Ասիայի ժողովուրդների ազատագրական շարժումներին համերաշխելու հզոր արտահայտություն.

— հողագնդի երիտասարդությանը և ուսանողությանը հնարավորություն ընձեռել՝ իր համերաշխությունն արտահայտելու սոցիալիստական երկրների երիտասարդությանը, որը կառուցում է սոցիալիզմ, դիմակայում իմպերիալիստական մանևրներին ու պրովոկացիաներին և վճռական ավանդ ներդնում խաղաղության, բարեկամության ու համերաշխության համար մղվող հակաիմպերիալիստական պայքարում.

— համերաշխություն արտահայտել մոնոպոլիաների շահագործման ու հալածանքների դեմ, իրենց իրավունքների ու ձգտումների բավարարման, տնտեսական ու սոցիալական խոր վերափոխումների, դեմոկրատիայի համար կապիտալիստական երկրների երիտասարդության և ուսանողության խոշոր ելույթներին.

— դառնալ ֆաշիզմի դեմ, ազատության և դեմոկրատիայի համար պայքարող երիտասարդության և ուսանողների հետ միջազգային համերաշխության նոր խոշոր արտահայտություն.

— արտահայտել աշխարհի երիտասարդության վճռականությունը՝ պայքարելու իմպերիալիզմի, մասնավորապես ԱՄՆ-ի իմպերիալիզմի և միլիտարիզմի դեմ.

— հավանություն տալ զինաթափման և խաղաղության պայքարին ակտիվորեն մասնակցելու երիտասարդության համառ ձգտմանն ու շահագրգռվածությանը, որոնց վկայությունն են անվտանգության և եվրոպական համագործակցության համար Եվրոպայի երիտասարդության լայն գործողությունները։

Այսպիսով, տասներորդ փառատոնը կարտացոլի մեր ժամանակի բոլոր այն կարևորագույն պրոբլեմները, որոնք վերաբերում են հողագնդի երիտասարդությանը և ուսանողներին։ Փառատոնի առջև դրված խնդիրների հաջող լուծումը, անկասկած, զգալի հարված կհասցնի ռեակցիոն բուրժուական գաղափարախոսությանը։ Ամբողջ աշխարհի երիտասարդական և ուսանողական կազմակերպությունների ներկայացուցիչները փառատոնի ընթացքում անմիջական շփումների ժամանակ հնարավորություն կստանան ակնառու կերպով համոզվելու սոցիալիզմի առավելությունների մեջ, եզրակացություններ անելու ժամանակակից պատմական պրոցեսի զարգացման վերաբերյալ, ճիշտ դիրք գրավելու առաջադիմական ուժերի շարքերում՝ համաշխարհային իմպերիալիզմի և ռեակցիայի դեմ։

Փառատոնի ծրագրում մեծ տեղ կգրավեն ազգային ազատագրության, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի համար պայքարող ժողովուրդներին համերաշխելու օրերը։ Փառատոնի մասնակիցներն ի լուր ամենքի կհայտարարեն, որ պաշտպանում են արաբական երկրների, Աֆրի-



կայի և Հնդկաչինի ժողովուրդներին, շահագործման, մոնոպոլիաների, միլիտարիզմի, ֆաշիզմի և հալածանքների դեմ պայքարող բոլոր ուժերին, երիտասարդներին և ուսանողությանը։ Փառատոնի ժամանակ կգործեն մի շարք համաժողովներ և սեմինարներ՝ նվիրված միջազգային քաղաքականությանը, գիտատեխնիկական հեղաշրջմանը, շրջապատող միջավայրին, կկազմակերպվեն հանդիպումներ ըստ երկրների, հետաքրքրությունների և մասնագիտությունների։ Լայն ծրագիր է նախապատրաստվում նաև ուսանողության համար. կկազմակերպվեն կրթության ռեֆորմին և դեմոկրատացմանը նվիրված ուսանողական կոնֆերանսներ, սեմինար, ազատ ամբիոն, ուսանողական ակումբ և այլն։

Ինչպես նախորդ բոլոր փառատոների ժամանակ, այս անգամ էլ կիրականացվեն բազմաթիվ կուլտուրական և սպորտային միջոցառումներ։ Պատանիներն ու աղջիկները կծանոթանան երիտասարդ արվեստագետների, կինեմատոգրաֆիստների լավագույն գործերին, Բեռլինի թատրոններում և համերգասրահներում, բազմաթիվ էստրադային բեմերում իրենց թատերական, ֆոլկլորային և երաժշտական վարպետությունը կցուցադրեն տասնյակ երկրների կոլեկտիվներ, երգիչներ, պարողներ, երաժիշտներ։ Միջազգային մեծ համերգներից բացի, ազգային համերգներով հանդես կգան բոլոր պատվիրակությունները։ Շատ հարուստ ու բազմազան կլինի նաև սպորտային ծրագիրը։

Անցած փառատոներում սովետական երիտասարդությունն անփոփոխ գրավել է բոլորի ուշադրությունը։ Գեղարվեստական կոլեկտիվների և դերասանների ելույթները վառ կերպով ցուցադրել են սովետական կուլտուրայի, կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության հայրական հոգատարությունը սովետական երիտասարդության դաստիարակության նկատմամբ։ Սովետական պատվիրակությունների գեղարվեստական խմբերի ելույթներում կներկայացվի միութենական և ինքնավար հանրապետությունների արվեստը։

Երիտասարդության և ուսանողների համաշխարհային փառատոներն ակնառու ցուցադրում են բոլոր երկրների երիտասարդության ամրապնդվող միասնությունը, ամեն անգամ հաստատելով, որ դեմոկրատական երիտասարդությունը, չնայած կրոնական, ռասայական և լեզվական տարբերություններին, կարող է գործել համատեղ։ Դեմոկրատական երիտասարդական կազմակերպություններին միմյանց հետ կապում է խաղաղության պաշտպանության, երիտասարդության սոցիալական ու տնտեսական իրավունքների համար մղվող պայքարը։

Խաղաղության համար մղվող պայքարում սոցիալիստական ճամբարի երիտասարդության կուռ միասնությունն օրինակ է ծառայում կապիտալիստական ու զարգացող երկրների պատանիների և աղջիկների համար։ Երիտասարդության և ուսանողների համաշխարհային փառատոները այդ երկրների պատանիներին մեծ հնարավորություններ են ընձեռում՝ ամրապնդելու իրենց կապերը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի աշխարհի հետ։

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՕՂԱԿԸ

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ

ՍՄԿԿ XXIV համագումարը կանխագծեց մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա վերելքի հոյակապ ծրագիրը՝ առաջին պլան մղելով հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը, գիտա-տեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության աճի արագացումը։ Այդ խնդիրները լուծելու համար նյութական բարիքներ ստեղծող մարդկանց տնտեսական գիտելիքների հարստացումը, մասնագիտական որակավորման ու պատրաստականության բարձրացումը, քաղաքական-գաղափարական կոփվածությունը և ընդհանուր կուլտուրան դառնում են հույժ անհրաժեշտություն և հաջողությունների պարտադիր պայման։ Այդ գործում անժխտելի է կոմունիստական աշխատանքի դպրոցների նշանակալի դերը։ Դրանց ունկնդիրները, որոնք հիմնականում բանվորներ ու կոլտնտեսականներ են, կուտակելով քաղաքական ու տնտեսական գիտելիքների բավարար պաշար, ավելի լավ են ըմբռնում իրենց ձեռնարկության կամ տնտեսության էկոնոմիկան, ծանոթանում հանրային արտադրության վարման գաղտնիքներին, ստեղծագործական մոտեցում ցուցաբերում արտադրական առաջադրանքների կատարման, նոր, կոմունիստական վերաբերմունք՝ աշխատանքի ու սոցիալիստական սեփականության նկատմամբ։

Մեր կուսակցությունը կոմունիստական աշխատանքի դպրոցները դիտում է որպես արդյունավետ ձև՝ արտադրական առաջավոր փորձը պրոպագանդելու, աշխատավորների շրջանում քաղաքական գործունեություն ծավալելու, նրանց սոցիալիստական մրցության մեջ ներգրավելու, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը ակտիվորեն մասնակից դարձնելու, արտադրական բարձր կարգապահությամբ դաստիարակելու, սոցիալիստական տնտեսավարման հիմունքներին ու աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդներին ծանոթացնելու համար։



Կոմունիստական աշխատանքի դպրոցները աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության արգասիք են, սովետական հայրենիքի տնտեսական բարգավաճման ու ժողովրդի բարօրության ապահովման համար նրանց դրսևորած ջերմ հայրենասիրության ակնառու արտահայտություն։ Այդ դպրոցների ստեղծման պիոներները եղան Լենինգրադի, ՍՄԿԿ XXII համագումարի անվան մետաղագործական գործարանի բանվոր-տուրբինագործները։ 1962 թ. օգոստոսին արտադրության մի խումբ նորարարներ հանդես եկան կոմունիստական աշխատանքի դպրոց ստեղծելու նախաձեռնությամբ։ Նրանք հետապնդում էին մեկ նպատակ՝ ուսումնասիրել կոմունիստական աշխատանքի համար մրցության փորձը և այն դարձնել յուրաքանչյուր բանվորի սեփականությունը։ Շուտով այդպիսի դպրոցներ են ստեղծվում նաև Լենինգրադի ուրիշ ձեռնարկություններում (տե՛ս Школы коммунистического труда, Ленииздат, 1965, стр. 4)։

Հայրենասիրական այդ նախաձեռնությունը դուրս եկավ Լենինգրադի սահմաններից և լայն արձագանք գտավ երկրի ձեռնարկություններում ու կառույցներում, տնտեսություններում ու բնակչության սպասարկման կազմակերպություններում։ Վերջին տարիներին և մասնավորապես կուսակցության XXIV համագումարից հետո այն դարձավ սովետական մարդկանց աշխատանքային դաստիարակության ու հանրային արտադրության արդյունավետության բարձրացման հզոր շարժում, ծավալվեց ու հաստատուն արմատներ ձգեց աշխատավորական կոլեկտիվներում, արժանացավ համընդհանուր ճանաչման։ Ժամանակի ընթացքում կոմունիստական աշխատանքի դպրոցներն ամենուրեք հաջողքննություն բռնեցին, դարձան օրինաչափ անհրաժեշտություն յուրաքանչյուր կոլեկտիվի համար։

Կոմունիստական աշխատանքի դպրոցների նկատմամբ աշխատավորների ցուցաբերած հետաքրքրասիրության գլխավոր չափանիշը դրանց ունկնդիրների նշանակալից աճն է։ Միայն մեկ տարում նրանց թիվը երկրում ավելացավ գրեթե երկուսուկես անգամ և 1971—1972 ուսումնական տարում հասավ 6 միլիոնի։

* * *

Կոմունիստական աշխատանքի դպրոցները մեր հանրապետությունում մասսայական բնույթ ստացան ՍՄԿԿ XXIV համագումարից հետո։ Այսպես, 1971—1972 ուստարում Հայաստանում գործում էր 2.112 դպրոց, որոնցում ընդգրկված էր 45.013 ունկնդիր։ 1972—1973 ուսումնական տարին նշանավորվեց կոմունիստական աշխատանքի դպրոցների և նրանց ունկնդիրների նշանակալի աճով։ 2.251 դպրոցներում այժմ քաղաքական ու տնտեսական գիտելիքներ են ստանում 49.474 բանվորներ ու կոլտնտեսականներ (տե՛ս ՀԱՄԽ-ի ընթացիկ հաշվետվություն)։

Վերոհիշյալ թվերը համոզիչ կերպով վկայում են, որ հանրապետության աշխատավորները բուռն հետաքրքրասիրություն են ցուցաբերում կոմունիստական աշխատանքի դպրոցների նկատմամբ։ Այս դրական պրոցեսը միաժամանակ վկայությունն է այն իրողության, որ նրանք ողջ էությամբ ձգտում են ապրել ու աշխատել կոմունիստաբար, ընթանալ ժամանակի պահանջներին

համընթաց։ Կոմունիստական աշխատանքի դպրոցների ունկնդիրները հանդես են գալիս հայրենասիրական նախաձեռնություններով, ցույց տալիս պետական առաջադրանքները բարձր ցուցանիշներով կատարելու փայլուն օրինակներ, իրենց անդադրում ու բոլորանվեր աշխատանքով խթանում ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումներն իրականացնելու համար ծավալված արտադրական հզոր վերելքը։ Այսպես, Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի կոմունիստական աշխատանքի դպրոցների բոլոր ունկնդիրներն էլ ընդգրկված են կոլեկտիվ ու անհատական սոցիալիստական մրցության մեջ և ամեն ամիս կատարում են իրենց արտադրական առաջադրանքները։ Հիսուն բանվոր-բանվորուհիներ 1972 թ. արտադրական պլանները կատարեցին ժամկետից 5—7 ամիս շուտ։ Նախնական հաշվումները ցույց են տալիս, որ 20—30 մարդ հնգամյակը կավարտի 3,5 տարում։ Հարյուրավոր բանվորներ պայքարում են հնգամյա պլանը չորս տարում կատարելու համար։ Ուրախալին այն է, որ մրցության այդ առաջավորների թվում է նաև կոմունիստական աշխատանքի դպրոցների ունկնդիրների զգալի մասը։

Երևանի «Էլեկտրաշարժիչ» գործարանի հուշանվերների արտադրամասի կոմունիստական աշխատանքի դպրոցի (պրոպագանդիստ Նազիկ Վարդանյան) ունկնդիրները մեծ հաստատակամությամբ են պայքարում հնգամյակի երրորդ՝ վճռական, տարվա պետական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար, աշխատանքի նկատմամբ դրսևորում են կոմունիստական վերաբերմունք։ Արտադրանքի որակը բարելավելու նպատակով՝ երիտասարդները խոստացել են այս տարի աշխատել տեխնիկական վերահսկողության բաժնին արտադրանքի առաջին ներկայացման սիստեմով և անձնական դրոշմ ունեցողների թիվը հասցնել ութ մարդու։ Բարձրարտադրողական աշխատանքի հիանալի օրինակ են տալիս նաև Երևանի «Պոլիվինիլացետատ», էլեկտրալամպերի, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանների և ուրիշ ձեռնարկությունների կոմունիստական աշխատանքի դպրոցների ունկնդիրները։

* * *

Կոմունիստական աշխատանքի դպրոցները կոմպլեկտավորվում են հիմնականում ըստ արտադրական-մասնագիտական բնույթի։ Ճիշտ կոմպլեկտավորումը, սակայն, հարցի միայն մի կողմն է։ Կոմունիստական աշխատանքի դպրոցների արդյունավետ գործունեության կարևոր պայմաններից մեկը նրանց աշխատանքի խելացի կազմակերպումն է, ուսումնական գործի առաջավոր մեթոդների հետևողական արմատավորումը։ Հանրապետության կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները, կոմունիստական աշխատանքի դպրոցների համար ստեղծել են լավ պայմաններ։ ՀԱՄԽ-ը այդ դպրոցների համար երաշխավորել է գիտա-հանրամատչելի և փաստա-վավերագրական կինոնկարների օրինակելի թեմատիկ պլան։ Դպրոցների պրոպագանդիստները դրանք օգտագործում են իրենց արտադրության առանձնահատկություններին համապատասխան։

Կոմունիստական աշխատանքի դպրոցներում մեծ հետաքրքրություն է առաջացրել ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի ուսումնասիրությունը։ Ունկնդիրները քաղաքական ակտիվության պայմաններում են ուսումնասիրել ՍՍՀՄ միջազգային դրության, ՍՄԿԿ արտաքին քաղաքականության պրոբլեմները, ծանոթացել համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամ-



րապնդման, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման, խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ամրապնդման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի նոր դրույթներին, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքներին։

Արդի ժամանակաշրջանում կուսակցության տնտեսական քաղաքականության գլխավոր հարցերի ուսումնասիրության ժամանակ հիմնական շեշտը դրվել է հասարակական արտադրության զարգացման, ժողովրդի բարեկեցության աճի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների, հնգամյա պլանի կատարման գլխավոր արդյունքների և դրանց միջազգային նշանակության պարզաբանման վրա։

Սովետական հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները լուսաբանելիս՝ պրոպագանդիստները խորությամբ վերլուծել են այդ ասպարեզում մեր երկրում կատարված մեծ տեղաշարժերը, պարզաբանել կուսակցության լենինյան ազգային քաղաքականության էությունը, ընդգծել ՍՍՀՄ կազմավորման հսկայական նշանակությունը ժողովուրդների սերտ դաշինքն ամրապնդելու, նրանց եղբայրական համագործակցությունն ապահովելու գործում։ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի մանարան ֆաբրիկայի նախամանող արտադրամասի կոմունիստական աշխատանքի դպրոցի պրոպագանդիստ Ա. Կիրակոսյանը, ելնելով այն իրողությունից, որ իրենց արտադրամասում աշխատում են տարբեր ազգությունների ներկայացուցիչներ՝ հայեր, ռուսներ, թաթարներ, ուկրաինացիներ, ադրբեջանցիներ, քրդեր, ավելի է խորացրել վերոհիշյալ թեման և լրացուցիչ մեկ պարապմունք նվիրել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությանը։ Նա լենինյան ազգային քաղաքականության արդյունքը հիմնավորել է ո՛չ միայն մեր երկրի, այլև իրենց արտադրամասի օրինակով, ցույց տվել, որ տարբեր ազգության պատկանող աշխատավորները ձեռք-ձեռքի տված կառուցում են կոմունիզմի հոյակերտ շենքը, անձնուրաց աշխատանքի հիանալի օրինակներ տալիս։ Դրա կոնկրետ վկայությունը համարել է իրենց արտադրամասի բանվորուհիների ու կոմունիստական աշխատանքի դպրոցի ունկնդիրներ Աստղիկ Առաքելյանի, Ելիզավետա Կուտելնիկովայի, Վալենտինա Յուդինայի և մյուս առաջավորների աշխատանքային բեղմնավոր գործունեությունը։

Ա. Կիրակոսյանը Լենինականի Մայիսյան ապստամբության տեքստիլ կոմբինատի մանարան ֆաբրիկայի նախամանող արտադրամասի պետն է, ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի քիմիական և բնական մանրաթելերի մանվածքի ֆակուլտետը։ Նրան վստահված կոմունիստական աշխատանքի դպրոցում ընդգրկված են ժապավենող ու նախամանող բանվորներն ու 12 ենթավարպետները։ Նա պարապմունքի վարման լավ փորձ է կուտակել։

Աշխատանքի արտադրողականության էությունն ու ժողովրդական տնտեսության վերելքի համար դրա հույժ անհրաժեշտության հարցը պարզաբանելիս պրոպագանդիստի համար ելակետ ծառայեցին Վ. Ի. Լենինի Մեծ նախաձեռնություն աշխատությունը, ՍՄԿԿ XXIV համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցումն ու ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի վերաբերյալ համագումարի դիրեկտիվները։ Նա ունկնդիրների ուշադրությանն արժանացրեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի.

Բրեժնևի՝ համագումարում արտահայտած այն միտքը, որ «Աշխատանքի արտադրողականության հաշվին առաջիկա հնգամյակում պետք է ստացվի ազգային եկամտի աճի առնվազն 80 տոկոսը, արդյունաբերական արտադրանքի աճի 87—90 տոկոսը, շինմոնտաժային աշխատանքների աճի 95 տոկոսը, երկաթուղային տրանսպորտի բեռնափոխադրումների ծավալի ամբողջ աճը (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 73)։

* * *

Խնայողության ռեժիմը սոցիալիստական տնտեսավարության կարևոր կողմերից է և վճռական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության զարգացման առթիվ կուսակցության մշակած հոյակապ կանխագծումներն իրականացնելու գործում։

ՍՄԿԿ XXIV համագումարն առանձնակի ուշադրություն նվիրեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում խնայողության ռեժիմի կիրառման խնդրին։ Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ արտադրության կատարելագործման հաշվին հումքի խնայողության հասնելն անհամեմատ ավելի ձեռնտու է, քան նույն քանակությամբ հումքի լրացուցիչ արտադրությունը։ «Երկրում թողարկվող արտադրանքի նյութատարության միայն մեկ տոկոսի իջեցումը,— ասաց նա,— հավասարազոր է ազգային եկամտի 3—4 մլրդ ռուբլի լրացուցիչ աճին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 77)։

«Խնայողության ռեժիմ» թեման անցնելիս կոմունիստական աշխատանքի դպրոցների պրոպագանդիստների համար նյութի պարզաբանման հենք են ծառայում Վ. Ի. Լենինի առաջ քաշած տեսական դրույթներն ու պրակտիկ եզրակացությունները, ՍՄԿԿ XXIV համագումարի նոր պահանջները։ Այդ ամենը նրանք կապում են իրենց ձեռնարկության կամ տնտեսության կոնկրետ խնդիրների հետ։ Խնդրի կարևորությունն ավելի համոզիչ դարձնելու համար նրանք վկայակոչում են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը՝ ներքին ռեզերվների հայտաբերման ու օգտագործման և խնայողության ռեժիմի ուժեղացման մասին, ցույց տալիս, թե խնայողության մեկ տոկոսը ինչ է նստում ժողովրդական տնտեսության վրա։

Երևանի էլեկտրալամպերի գործարանում խնայողության ռեժիմի անշեղ կիրառումը կենսական նշանակություն ունի։ Արտադրությունն այստեղ ամեն օր ու ամեն ժամ աշխատաժամանակի, հումքի ու օժանդակ նյութերի ռացիոնալ ու արդյունավետ օգտագործման կարիք է զգում։ Հաշվված է, որ ձեռնարկությունում մեկ րոպե աշխատաժամանակի կորուստը հավասար է 111, հումքի ու օժանդակ նյութերի կես տոկոս խնայողությունը տարվա ընթացքում՝ 690 հազար ռուբլու։ Խնայողության ռեժիմը հետևողականորեն կիրառելու, հումքը խնայողաբար օգտագործելու սովորությամբ արտադրության մարդկանց դաստիարակելու նպատակով կուսակցական ու արհմիութենական կոմիտեներն ամեն տարի անցկացնում են այդ խնդրին նվիրված մրցույթ-ստուգատեսներ, իրենց նիստերում քննարկում դրան վերաբերող հարցեր։ Անտարակույս, խնայողության ռեժիմը պատշաճ ուշադրության է արժանանում նաև կոմունիստական աշխատանքի դպրոցների պրոպագանդիստների և ունկնդիրների կողմից, մանավանդ, որ այն տեղ է գտել ուսումնական ծրագրում։



Պարույրների արտադրամասի էլեկտրոդների տեղամասի պետ Բ. Հովսեփյանը կոմունիստական աշխատանքի դպրոցի պրոպագանդիստ է։

— Ես միշտ հետևում էի,— ասում է նա,— որպեսզի բանվորները աշխատեն խնայողաբար, ձգտում էի ցույց տալ, թե ինչ է հարկավոր դրա համար մեր տեղամասում ընդհանրապես, յուրաքանչյուր աշխատատեղում՝ մասնավորապես։

Բ. Հովսեփյանը մի առանձին եռանդով ձեռնամուխ եղավ խնայողության ռեժիմին նվիրված պարապմունքի նախապատրաստմանն ու անցկացմանը, թեմայի պարզաբանմանը։ Նախ՝ նա ուսումնասիրեց Վ. Ի. Լենինի Մեծ նախաձեռնություն, Սովետական իշխանության հերթական խնդիրները աշխատությունները ու մի քանի հոդվածներ և առաջնորդի տեսական դրույթների ու եզրակացությունների, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների ու արդի պահանջների հիման վրա բացատրեց խնայողության ռեժիմի էությունը, դերն ու նշանակությունը Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման, հանրային հարստության բազմապատկման գործում, համագումարի նոր պահանջների լույսի տակ հիմնավորեց խնայողության ռեժիմի ուժեղացման անհրաժեշտությունն իններորդ հնգամյակի խնդիրների լուծման համար։ Նա ցույց տվեց, թե խնայողության մեկ տոկոսը ինչ կարող է տալ երկրին, այն ինչպես է նպաստում ժողովրդական հարստության կուտակմանը և սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը։

Պրոպագանդիստն ունկնդիրներին համոզեց, որ ամեն մի ձեռնարկությունում կան նյութական, դրամական ու աշխատանքային ռեսուրսների տնտեսման ռեզերվներ ու հնարավորություններ և նրանց համակեց այն բանի գիտակցությամբ, որ կորուստների ու վատնումների դեմ մղվող պայքարը յուրաքանչյուր բանվորի պարտքն է։ Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու աշխատանքային ծախսումների նվազեցման հարցը նա պարզաբանեց իրենց ձեռնարկության ու տեղամասի կոնկրետ փաստերով։ Օրինակ, իրենց էլեկտրոդների տեղամասում մեկ տոկոս խնայողությունը մեկ ամսում կազմում է 220 հազար հատ էլեկտրոդ, որից կարելի է պատրաստել 180 հազար լամպ։ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին տեղամասի կոլեկտիվը, որի անդամները կոմունիստական աշխատանքի դպրոցների ունկնդիրներ են, պարտավորվել էր տնտեսած նյութերի հաշվին աշխատել 1—2 օր և պատրաստել երկու միլիոն զույգից ավելի էլեկտրոդ։ Այդ խոստումը գործի վերածվեց։

Տեղամասում խնայողության կարևոր միջոց է անհատական տնտհաշվարկը. ամեն մի բանվոր լավ գիտի, թե որքան նյութ է ստացել ինքը, ծախսել ու արտադրանք տվել։ Նա ունկնդիրներին տեղեկացրել է, որ տեղամասն ամսական տնտեսում է 200 հազար ռուբլուց ավելի հումք և նյութեր։

Պրոպագանդիստը ջանում է, որպեսզի ունկնդիրները խորությամբ յուրացնեն թեման, ակտիվորեն մասնակցեն դրա քննարկմանն ու պարզաբանմանը։ Եվ դա նրան հաջողվում է։ Ունկնդիրներից Վ. Տիրեցյանը, օրինակ, պատասխանելով խնայողության էությանը վերաբերող հարցին, ասաց, որ ինքը պարապմունքին նախորդող ամսում տնտեսել է 4,7 կգ նիկել, 3,5 կգ ֆերոնիկել և այլ նյութեր, որոնց արժեքը կազմում է 48 ռուբլի։

«Խնայողության ռեժիմ» թեմայով պարապմունքի արդյունավետ անցկացման շնորհիվ կոմունիստական աշխատանքի դպրոցի ունկնդիրները ձեռք բերեցին հումքն ու օժանդակ նյութերը խնայողաբար օգտագործելու ավելի մեծ

հմտություն, սովորույթ դարձրին ամսական մի քանի անգամ՝ հնգօրյակի կամ տասնօրյակի վերջում, ստուգել նյութերի ծախսը։ Այդ պարապմունքը զգալի արդյունք տվեց տեղամասին։ Պարապմունքի հաջորդ ամսում արդեն տեղամասի կոլեկտիվը տնտեսեց 375 ռուբլու հումք, օժանդակ նյութեր ու էլեկտրաէներգիա։ Հաջորդ ամիսներին այդ մակարդակը պահպանվեց կամ բարձրացավ։

Խնայողության ռեժիմի անշեղ կիրառումը արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր աղբյուր է։ Այս հանգամանքը նկատի ունենալով՝ պրոպագանդիստ Բ. Հովսեփյանը «Արտադրանքի ինքնարժեքի իջեցման և արտադրության եկամտաբերության բարձրացման ուղիները» թեման պարզաբանելիս, օրգանական կապ ստեղծեց «Խնայողության ռեժիմ» թեմայի հետ։ Առաջին հերթին նա բացատրեց, թե ինչ է արտադրանքի ինքնարժեքը, ինչու է հարկավոր իջեցնել այն, ինչպիսի նոր պահանջներ է առաջադրել ՍՄԿԿ XXIV համագումարն այդ կապակցությամբ։ Պարզելով արտադրանքի ինքնարժեքի կառուցվածքը՝ պրոպագանդիստը նշեց դրա յուրաքանչյուր տարրի տեղն ու դերը, այդ ամենը ցույց տվեց իրենց ձեռնարկության ու տեղամասի կոնկրետ օրինակներով։ Տեղամասում ինքնարժեքի իջեցման ռեզերվները նա համարեց՝ նորագույն տեխնիկայի ներդրումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, խնայողության ռեժիմը, արտադրանքի որակի բարելավումը, ներտեղամասային ծախսերի կրճատումը և այլն։ Ապա պարզաբանեց ամեն մի տարրի դերը իրենց տեղամասում։ Այսպես, գազազոդման մեքենաները փոխարինվում են էլեկտրազոդման մեքենաներով։ Այն կավարտվի 1975 թվականին։ Բանն այն է, որ գազազոդման մեքենայով մեկ րոպեում պատրաստվում է 40 էլեկտրոդ, իսկ էլեկտրազոդման մեքենայով՝ 125—130։ Արտադրողականության բարձրացմամբ զգալի չափով կիջնի ինքնարժեքը։

Կամ մեկ ուրիշ օրինակ, որը վերաբերում է տեխնոլոգիական պրոցեսի կատարելագործմանը։ Դա նիկելապատումն է։ Նախկինում լամպերի ներքին օղակում օգտագործվող նիկելն ստացվում էր Ուրալից, ձեռնարկության վրա մեկ կիլոգրամը նստում էր 5 ռ. 70 կոպեկ։ 1972 թ. սկզբներին շահագործման հանձնվեց պողպատյա լարերի նիկելապատման տեղամասը, և, մայիս ամսից սկսած, այստեղ սկսեցին թողարկել նիկելապատված պողպատյա լարերի էլեկտրոդներ։ Այդ լարի մեկ կիլոգրամի վրա գործարանը ծախսում է մեկ ռուբլի։ Այսպիսով, յուրաքանչյուր կիլոգրամ էլեկտրոդի մեջ ձեռնարկությունը շահում է 4 ռ. 70 կոպեկ կամ տարեկան՝ 100—120 հազար ռուբլի։

Տեղամասի գործունեության ուրիշ այլ օրինակներով հիմնավորելով արտադրանքի ինքնարժեքի իջեցման էությունն ու նշանակությունը՝ պրոպագանդիստ Բ. Հովսեփյանը ասաց, որ այն եկամտաբերության կարևոր աղբյուր է, իսկ եկամտաբերությունը՝ ձեռնարկության աշխատանքի արդյունավետության ցուցանիշ և ժողովրդատնտեսական հրատապ խնդիր։ Նա մատչելի ձևով ցույց տվեց, թե ինքնարժեքի իջեցումն ինչպիսի նշանակություն ունի ձեռնարկության շահութաբերությունը բարձրացնելու և աշխատավորների բարեկեցության աճն ապահովելու համար։

Կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության հաջողությունը, առաջին հերթին, բացատրվում է նրանով, որ կուսակցական ու արհմիու-



թենական ղեկավար մարմիններն ու սկզբնական կազմակերպությունները հետևողականորեն զբաղվում են նրանց հարցերով, ժամանակին բացահայտում նկատվող թերությունները, օգնում դրանց վերացմանը, նպաստում պարապմունքների գաղափարական մակարդակի ու արդյունավետության բարձրացմանը։ 1972 թ. մարտին ՀԿԿ Կենտկոմը քննարկեց Իջևանի շրջանի կոմունիստական աշխատանքի դպրոցների մասին» հարցը և նշեց, որ շրջանի կուսկազմակերպությունը, կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, լուրջ քայլեր է արել այդ դպրոցների արդյունավետությունն ապահովելու համար։ Ունկնդիրների 83 տոկոսից ավելին բանվորներ ու կոլտնտեսականներ են, հիմնականում՝ մինչև 30 տարեկան։ Սևքարի, Սարիգյուղի, Աչաջրի, Այգեհովտի սովխոզների, գորգագործական և «Բենտոնիտ» կոմբինատների, ծխախոտի ֆերմենտացիոն ֆաբրիկայի կոմունիստական աշխատանքի դպրոցներում քաղաքական գիտելիքների պրոպագանդումը զուգակցվում է աշխատանքի առաջավոր մեթոդների, մարդկանց բարոյական դաստիարակության հետ, մեծ ուշադրություն է նվիրվում հատկապես ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների ու նյութերի, կուսակցության տնտեսական ու արտաքին քաղաքականության, իններորդ հնգամյակում ժողովրդի բարեկեցության ու կուլտուրայի աճի ուղիների պարզաբանմանը։

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն միաժամանակ բացահայտեց Իջևանի շրջանի կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության թերությունները, որոնք մասնավորապես վերաբերում էին որոշ կազմակերպություններում պարապմունքների համար պայմանների ստեղծմանը, արտադրական առաջավոր փորձի ուսումնասիրմանը, տեխնիկական-ցուցադրական միջոցների օգտագործմանը։ Մի շարք դպրոցներում (Լուսաձորի, Հախկխլուի կոլտնտեսությունների, Խաշթառակի սովխոզի, փորձարարական գործարանի, կենցաղսպասարկման կոմբինատի) առանձին պրոբլեմներ ուսումնասիրվում են արտադրական կոլեկտիվների կոնկրետ խնդիրներից կտրված, անբավարար է ուսումնասիրվում ու տարածվում առաջավոր փորձը։

ՀԿԿ Կենտկոմի որոշումը էական նշանակություն ունեցավ ո՛չ միայն Իջևանի, այլև Հայաստանի մյուս շրջանների ու քաղաքների կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության բարելավման համար։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, ՀԱՄԽ-ն ու ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները, կուսակցական ու արհմիութենական սկզբնական կազմակերպությունները ևս անդրադարձան կոմունիստական աշխատանքի դպրոցներին և մշակած գործնական միջոցառումներով նպաստեցին նրանց գործունեության արմատական վերակառուցմանն ու արդյունավետության բարձրացմանը։

Սակայն, այնուամենայնիվ, կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության մեջ կան լուրջ թերություններ։ Ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Քոչինյանը, ընթացիկ տարվա ապրիլի 4-ին տեղի ունեցած հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում, այդ դպրոցների մի մասը ձևականորեն գոյություն ունի։ Այդ կարգի թերություններ է բացահայտել ՀԱՄԽ-ի նախագահության ս/թ փետրվարի 23-ի նիստը սննդի արդյունաբերության բանվորների արհմիության հանրապետական կոմիտեի սպասարկած ձեռնարկություններում։ Երևանի շամպայն գինիների, հացի № 1 գործարանների, մսի և կաթի կոմբինատների կոմունիստական աշխա-

տանքի դպրոցների պարապմունքները անցնում են անհետաքրքրական, թեմաների լուսաբանման ժամանակ չի կատարվում «...կոլեկտիվի տնտեսական գործունեության խոր վերլուծություն, ոչ բոլոր ունկնդիրներն են խորապես գիտակցում տնտեսագիտական ուսուցման նպատակը, չեն կատարելագործում աշխատանքի ձևերն ու մեթոդները»: ՀԱՄԽ-ի նախագահությունը պարսավեց այն երևույթը, երբ առանձին հիմնարկ-ձեռնարկություններում (ոչ-ալկոհոլային խմիչքների, կոնյակի գործարաններ, շիննորոգման տրեստ, Լենինականի կարամելի, հացի գործարաններ, Կիրովականի սննդի օբյեկտներ և այլն) բանվոր-ծառայողների թիվը հասնում է զգալի չափերի, սակայն նրանցում կոմունիստական աշխատանքի դպրոցներ չեն ստեղծվել:

Ցավոք, այդպիսի փաստեր կան նաև ուրիշ ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեների սպասարկած հիմնարկ-ձեռնարկություններում և տնտեսություններում: Կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության թերությունները անհոգության ու անտարբերության հետևանք են: Երևանի № 1 տրիկոտաժի ֆաբրիկայի կոմունիստական աշխատանքի դպրոցների պարապմունքների ձախողումներն ու ցածր մակարդակը բացատրվում են ուսուցման այս կարևոր ձևի նկատմամբ կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների ցուցաբերած անպատասխանատու վերաբերմունքով:

ՍՄԿԿ Կենտկոմը կոմունիստական աշխատանքի դպրոցների կազմակերպական ու մեթոդական ղեկավարման պատասխանատվությունը դրել է արհմիութենական կազմակերպությունների վրա: Բայց դա չի նշանակում, թե կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները պետք է աչքաթող անեն արտադրության մարդկանց աշխատանքային դաստիարակության այս կարևոր օղակը: Նրանք պարտավոր են ամենօրյա վերահսկողություն սահմանել կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեության նկատմամբ, հոգան դրանց պարապմունքների խոր բովանդակության ու արդյունավետության ապահովման մասին:

ՍՄԿԿ Կենտկոմը պահանջում է կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեությունն ուղղել աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, աշխատանքի ու սոցիալիստական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակմանը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր պարապմունք անմիջականորեն համընկնի տնտեսավարության, տեսության ու պրակտիկայի ուսումնասիրությանը, ունկնդիրներին խրախուսի աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, խնայողության ռեժիմ կիրառելու սովորությամբ, նպաստի առաջավոր մեթոդների արմատավորմանը: Կուսակցության առաջադրած այս խնդիրների լուծումը կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները, կոմունիստական աշխատանքի դպրոցների պրոպագանդիստները պետք է համարեն իրենց առաջնահերթ պարտքն ու պարտականությունը:

---

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Ս. Հ. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ

Երևանի ալյումինի գործարանը հանրապետության գունավոր մետալուրգիայի արդյունաբերության մեջ էական տեսակարար կշիռ ունեցող ձեռնարկություն է: Նրա արտադրանքն ունի լայն պահանջարկ և կարևոր դեր է խաղում ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի զարգացման ասպարեզում: Երևանյան ալյումինե նուրբ թիթեղներն առաքվում են ՍՍՀՄ հանրապետությունների բազմաթիվ ձեռնարկությունների հասցեներով և լայնորեն օգտագործվում ավիացիոն, էլեկտրատեխնիկական, սննդի, ռադիոտեխնիկական, պոլիգրաֆիական արդյունաբերության և շինարարության մեջ, ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում:

Այդ ձեռնարկության դերն է՛լ ավելի կմեծանա, երբ ձեռք բերվեն նրա մի շարք արտադրությունների նախագծային հզորությունները և շարք մտնեն նոր կարողությունները: Նախատեսվում է հիմնովին վերակառուցել փայլաթիթեղի (ֆոլգա) գլանման արտադրամասը, ստեղծել շինարարական պրոֆիլային իրերի արտադրամաս և այլն: Այս ամենը ձեռնարկության կոլեկտիվից և, առաջին հերթին, կուսկազմակերպությունից պահանջում է լարված աշխատանք, գործին ստեղծագործաբար մոտենալու և արտադրական հնարավորություններն ըստ ամենայնի բացահայտելու հմտություն: Այդ նպատակով գործարանի կուսկոմիտեն սկզբնական կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների, ողջ կոլեկտիվի ուշադրությունը սևեռել է այնպիսի կարևոր հարցերի լուծման վրա, ինչպիսիք են աշխատանքի արտադրողականության բարձրացումը, գիտա-տեխնիկական առաջընթացի արագացումը, ներքին ռեզերվների լիովին օգտագործումը, առանձին տեղամասերի ետ մնալու հաղթահարումը:

Կարելի է բերել հետևյալ օրինակը. 1971 թ. կեսերին, էլեկտրոլիզի վաննաների տեխնոլոգիական պրոցեսները խախտելու պատճառով, պակասեց մետաղի ստացումը: Գործարանն սկսեց թերակատարել ալյումինի ձուլման, դրա հետ կապված նաև՝ թիթեղագլանման և մյուս առաջադրանքները: Ընկավ աշխատանքի արտադրողականությունը, ռիթմը, բարձրացավ արտադրանքի ինքնարժեքը, նվազեցին շահույթները, պակասեցին բանվորների վարձատրության չափերը, զանազան միջոցառումների համար հատկացվող ծախսերը:

Հետևանքը եղավ այն, որ, ի վերջո, տարին փակվեց պարտքով, պետությունը չստացավ մի քանի հարյուր տոննա առաջնային ալյումին, տրվեց մոտ 15 մլն կվտ–ժամ էլեկտրաէներգիայի գերածախս։

Ստեղծված դրությունն այնպիսին էր, որ թվում էր, թե ոչ միայն շաբաթներն ու ամիսները, այլև տարին բավական չեն կորցրածը վերականգնելու համար։ Բայց գործարանի մարդիկ կատարեցին անհավատալին։ Կուսկազմակերպությունը նրանց մեջ արթնացրեց կամքի ուժ և վճռականություն։ Կուսկոմիտեի նախաձեռնությամբ էլեկտրոլիզի արտադրամասում անցկացվեց սկզբնական կուսկազմակերպության ժողով, որին հրավիրվեցին նաև մյուս արտադրամասերի կոմունիստները։

— Ու երեկոյան սկսված ժողովն ավարտվեց հաջորդ առավոտյան,— պատմում է կուսկոմիտեի քարտուղար Հ. Աթանեսյանը,— բայց նրա մասնակիցները տուն չգնացին։ Նրանք ոգևորված էին։ Արտադրության կազմակերպման գործում տեղ գտած թերությունները համարձակորեն քննադատելով, կոմունիստները ճիշտ վճիռ էին հանել. գերադասել էին ալյումինի ձուլման պլանը եռ մեկ-երկու ամսով թերակատարելու գնով սարքավորումները փրկել անխուսափելի «ուժասպառ» լինելուց։

Հենց այդ ժողովում էլ որոշվեց ստեղծել հատուկ բրիգադաներ, որոնք օգնելու էին ետ մնացող արտադրամասին։ Միաժամանակ կուսկոմիտեն, դիրեկցիան, արհկոմը և ԼԿԵՄ կոմիտեն կոչով դիմեցին կոլեկտիվին՝ եռանդուն ջանքեր գործադրել գործարանի ետ մնալը հաղթահարելու համար։ Կարճ ժամանակում կազմակերպվեցին չորս բրիգադաներ, որոնք սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Նախշուն Հակոբյանի ղեկավարությամբ զբաղվեցին վաննաների «բուժման» գործով։ Տարբեր արտադրամասերից հավաքագրված այդ խմբերի մարդիկ օրական մեկ-երկու ժամ անց էին կացնում այստեղ։ Հերթափոխությունների միջև ընկած ժամանակահատվածներում նրանք նախապատրաստում էին վաննաները, բարելավում տեխնոլոգիական պրոցեսները։ Շուտով նախաձեռնությանն արձագանքեցին գործարանի վետերանները։ Նրանք, ովքեր երբեէ աշխատել էին այդ արտադրամասերում, ցանկություն հայտնեցին իրենց փորձով և գիտելիքներով կրկին օգտակար լինել։ «Կամավորների» այդ խմբի մեջ ընդգրկվեցին կոմունիստ Ռ. Քալաշյանը, անկուսակցականներ Ա. Մովսիսյանը, Մ. Մուսայելյանը, Մ. Պետրոսյանը։

Բացի այդ, կուսկոմիտեի և դիրեկցիայի որոշմամբ էլեկտրոլիզի արտադրամաս ուղարկվեցին գործունյա կոմունիստներ, արտադրական-տեխնիկական բաժնի պետը և նրա տեղակալը՝ Լ. Հարությունյանն ու Հ. Փայտյանը, աշխատանքի գիտական կազմակերպման բաժնի, գազամաքրման արտադրամասի պետեր Ց. Մինասյանը, Վ. Ավետիսյանը և այլ պատասխանատու աշխատողներ, որոնք ստանձնեցին բրիգադների ղեկավարությունը։ Բանվորների հետ աշխատելուց բացի, մասնագետները խորությամբ ուսումնասիրեցին արտադրության ու աշխատանքի կազմակերպման գործում տեղ գտած թերությունները, կոնկրետ առաջարկներ արեցին արտադրամասի ետ մնալը հաղթահարելու համար։ Դրանց հիման վրա նորոգվեցին վաննաների մի քանի ագրեգատներ և ալյումինի փայլաթիթեղի արտադրամասի շատ սարքավորումներ։

Միջոցառումները հիանալի արդյունք տվեցին. 1972 թ. առաջին օրերից գործարանն սկսեց կատարել պլանները։ Արտադրությունն ընթացավ համաչափորեն, ձեռք բերվեցին տեխնիկա-տնտեսական նախատեսված ցուցանիշները։



Տեխնոլոգիական պրոցեսների բարելավման ու կատարելագործման գործը շարունակվեց ամբողջ տարվա ընթացքում, բանվորների և մասնագետների շրջանում կոմունիստները կատարեցին բացատրական-մասսայական աշխատանք, արտադրության առանձին օղակներ ամրապնդվեցին փորձառու մասնագետներով։ Հայ ալյումինագործներին եղբայրական օգնության ձեռք մեկնեցին նաև երկրի այլ ձեռնարկությունների կոլեկտիվներ։ Շուրջ երեք ամիս այստեղ առանձին խմբերով աշխատեցին և իրենց փորձը հաղորդեցին Մուրմանսկի, Լենինգրադի մարզերի, Դնեպրոպետրովսկի ալյումինի գործարանների վարպետ էլեկտրոլիզավարները։

Եվ ահա արդյունքը. տարեվերջին ձեռնարկությունը հիանալի ցուցանիշներով նշանավորեց ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը, նրա կոլեկտիվը հաջողությամբ կատարեց հոբելյանի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները և զգալիորեն նվազեցրեց նախորդ տարվա ընթացքում գոյացած ալյումինի թողարկման պարտքը։ Ահա մի քանի բնորոշ թվեր. աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարվեց 104,7, շահույթինը՝ 118,2 տոկոսով, տրվեց ավելի քան կես մլն ռուբլու արտապլանային շահույթ, որը 80 տոկոսով գերազանցեց նախորդ տարվա մակարդակը, խնայվեց 4 մլն 638 հազար կվտ–ժամ էլեկտրաէներգիա։ Մեկ տարում մայրաքաղաքի մետալուրգները 6—6,2 տոկոսով ավելացրին ալյումինե փայլաթիթեղի և լարերի, 11,5 տոկոսով՝ թուջի ձուլվածքի և 31,6 տոկոսով՝ լայն սպառման ապրանքների արտադրությունը։ Նրանք երեք եռամսյակ անընդմեջ իրենց ձեռքում պահեցին ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության և մետալուրգիական արդյունաբերության բանվորների արհմիության կենտկոմի փոխանցիկ դրոշը, իսկ երկու անգամ առաջնություն շահեցին Երևանի ձեռնարկությունների միջև ծավալված սոցիալիստական մրցությունում։ Ալյումինագործների աշխատանքի լավագույն գնահատականը հոբելյանական պատվո նշանն էր, որին նրանք արժանացան ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի տոնակատարության օրերին։

Արիաբար հաղթահարելով ստեղծված դժվարությունները, ալյումինագործները կոփեցին իրենց կամքը, հարստացրին փորձը և հնգամյակի երրորդ՝ վճռական տարին թևակոխեցին ավելի հաստատուն կերպով։

Կոլեկտիվի առջև դրված խնդիրները լուծելու գործում հսկայական նշանակություն ունեցավ 1973 թ. ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը, որը դարձավ ինչպես մեր երկրի ողջ աշխատավորական կոլեկտիվների, այնպես էլ Հայաստանի մայրաքաղաքի ալյումինագործների աշխատանքի մարտական նոր ծրագիրը։ Կուսակցության կոչը լայն արձագանք գտավ գործարանում։ Որոշումը լայնորեն քննարկվեց կուսկոմիտեում, ապա սկզբնական կուսկազմակերպություններում և արժանացավ ջերմ հավանության։ Արտադրամասերի կոլեկտիվները ստանձնեցին կոնկրետ պարտավորություններ։ Կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները մեծ ջանքեր գործադրեցին՝ սոցիալիստական մրցությունն ավելի գործարար ու մասսայական դարձնելու համար։ Նրանք առաջնորդվում են կուսակցության այն ցուցումով, որը յուրաքանչյուր աշխատողից պահանջում է կոմունիստական վերաբերմունք ունենալ գործի նկատմամբ, դրա մեջ ներդնել իր սրտի

և հոգու մասնիկը։ Մասսայական-բացատրական աշխատանքը օգնեց մեծ թվով բանվորների, ինժեներների, տեխնիկների, այլևայլ մասնագետների, ինչպես նաև ծառայողների ընդգրկել սոցիալիստական մրցության մեջ։ Ավելի քան երկու հազար ալյումինագործներ տարեսկզբին ստանձնեցին անհատական սոցիալիստական պարտավորություններ և պայքարում են դրանց կատարման համար։

Մրցության մասսայականության նշանակությունը ակնառու ձևով արտահայտվեց առաջին եռամսյակի ցուցանիշներում։ Այսպես, առաջնային ալյումինի թողարկման երկու ամսվա պլանը կատարվեց 100,7, գլանմանը՝ 108, կոնդենսատորային ֆոլգայի արտադրությանը՝ 110 տոկոսով։ Ապրանքային արտադրանքի թողարկման և իրացման առաջադրանքները համապատասխանաբար գերակատարվեցին 9,6 և 4 տոկոսով։ Մեծ հաջողություն ձեռք բերվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում։ Դրա պլանը կատարվեց 112,8 տոկոսով։ Հատկանշական է հետևյալը. այս տարվա համար նախատեսված է աշխատանքի արտադրողականության 7,1 տոկոս աճ, բայց անցած երեք ամսում այն կազմեց 15,2 տոկոս։ Դա աննախադեպ նվաճում է ձեռնարկությունում։

Արտադրության առաջընթացի համար խոշոր ազդակ են սոցպարտավորությունների կատարման ընթացքի ու արդյունքների պարբերաբար ստուգումներն ու քննարկումները, արտադրության մարդկանց աշխատանքն ըստ արժանվույն գնահատելը։ Այս տարի սահմանվել են միջբրիգադային և անհատական ավելի քան 30 փոխանցիկ վիմպելներ, դրամական մրցանակներ։ Այդ պարգևներին արդեն արժանացել են էլեկտրոլիզի արտադրամասի կոմունիստ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Մ. Մանուկյանի, Վ. Վլադիմիրովի, փայլաթիթեղի գլանման արտադրամասի կոմունիստ Ռ. Քալաշյանի ղեկավարած բրիգադները, արտադրության առաջամարտիկներ, կոմունիստներ, խառատ Ս. Գանձակյանը, զոդող Ջ. Սարգսյանը, անկուսակցականներ, էլեկտրիկ Ն. Ղասաբյանը, հերթափոխի պետ Ռ. Ասատրյանը և ուրիշներ։ Աշխատանքի հիանալի օրինակ է ցույց տալիս փայլաթիթեղ գլանող բանվոր, քաղաքային սովետի դեպուտատ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ռ. Սերոբյանը, որը պարտավորվել է և կոչ արել արտադրամասի բանվորներին՝ հնգամյակը կատարել 50 ամսում։ Մրցության առաջավորի օրինակին հետևում են շատ ալյումինագործներ։

Գործարանի կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները, դրականը խրախուսելու հետ միասին, քննադատական վերաբերմունք են ցույց տալիս թերությունների ու պլան-պարտավորությունների կատարման մեջ թերացողների ու խոտանարարների նկատմամբ։ Նրանք այդ նպատակով լայնորեն օգտագործում են գործարանի ռադիոհանգույցը, պատի թերթը, կայծակ թերթիկները, ազդերը, «Կոմերիտական լուսարձակը» և այլն։ Վերջերս կուսկոմիտեն քննարկեց ռացիոնալիզատորական աշխատանքի վիճակը։ Նիստում վեր հանվեցին թերությունները, քննադատական սուր խոսք ասվեց ռացիոնալիզացիայի և գյուտարարության բյուրոյի աշխատողների հասցեին, որոնք անհրաժեշտ ակտիվություն հանդես չեն բերում ներքին ռեզերվները հայտաբերելու և դրանք տեխնիկական առաջընթացին ծառայեցնելու գործում։ Կուսկոմիտեի որոշումը մասսայականացրին արտադրամասային կուսկազմակեր-



պություններում, որոնք նորարարական գործն աշխուժացնելու համար մշակեցին կոնկրետ միջոցառումներ։

Տեխնիկական առաջընթացի հարցերը մշտապես գտնվում են կուսկազմակերպության ուշադրության կենտրոնում։ Կուսկոմիտեի և սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների նիստերում պարբերաբար քննարկվում են արտադրության վերազինման խնդիրները։ Անցյալ տարվա դեկտեմբերին, օրինակ, քննարկվեց ալյումինե թերթերի գլանման հնացած, ցածր արտադրողական սարքավորումների վերափոխման և մոդեռնացման հարցը, որն աշխուժություն մտցրեց այդ գործում։

— Կարևոր արտադրապրոցես է մետաղի թափոնների վերահալումը,— ասում է տեխնիկական բաժնի պետ Հ. Փայտյանը,— այդ ճանապարհով գործարանը օրական ստանում է մի քանի հարյուր տոննա մաքուր ալյումին։ Սակայն վերահալման գոյություն ունեցող վառարանը բարոյապես հնացել է և մետաղի մեծ կորուստ է տալիս։ Իսկ ստացված նոր վառարանը գործարանի կապիտալ շինարարության բաժնի մեղքով մնում է անօգտագործելի։ Դրությունը փոխվեց կուսկոմիտեի միջամտությունից հետո։ Հատուկ որոշմամբ համապատասխան հանձնարարություններ տրվեցին կապիտալ շինարարության բաժնի և մյուս օղակների աշխատողներին ու մասնագետներին։ Այժմ արագ թափով մոնտաժվում է հզոր վառարանը, որն այս տարվա կեսերին շահագործման կհանձնվի։

Ձեռնարկության մասնագետները ծրագրել են հնգամյակի երրորդ տարում անցկացնել արտադրության վերազինման մոտ 30 միջոցառում։ Ռացիոնալիզատորական առաջարկների ներդրումից կստացվի ավելի քան 200 հազար ռուբլու պայմանական օգուտ։ Դրանց իրականացումը ձեռնարկության կոմունիստները համարում են իրենց հարազատ գործը։ Կուսկազմակերպությունն անհրաժեշտ հսկողություն է իրականացնում նաև պրոֆիլային ալյումինի արտադրամասի շինարարության նկատմամբ։ Դա նպաստել է մոնտաժման արագացմանը։ Նորակառույցը, որը կարտադրի շինարարական կառուցվածքներ, նախատեսվում է շահագործման հանձնել տարեվերջին։ Աշխատանքներ են տարվում կոնդենսատորային ֆոլգայի արտադրամասի տեխնոլոգիական պրոցեսների արագ յուրացման համար, որը հնարավորություն կընձեռի սահմանված ժամկետից շուտ հասնել նախագծային կարողությանը։

Լավ արդյունք է սպասվում մի շարք նորարական առաջարկություններից, որոնք վերաբերում են փայլաթիթեղի ստացման ու մշակման պրոցեսների կատարելագործմանը։ Ձեռնարկության առաջատար մասնագետների ուժերով ստեղծվել և այժմ ներդրվում է ռացիոնալ չափերի ալյումինի ձուլակտորների արտադրության տեխնոլոգիան, որը քիչ թափոններ է առաջացնում, հետևաբար, և ապահովվում է պատրաստի արտադրանքի ավելի մեծ ելք։ Այդ ճանապարհով ստացվում է կոնդենսատորային փայլաթիթեղի չորս տոկոս աճ։ Մեկ այլ օրինակ. պոլիգրաֆիական ձեռնարկություններին մատակարարվող ալյումինաթիթեղների մակերեսները նախապես մշակվում են քիմիական լուծույթներով։ Այս եղանակն ունի մի շարք թերություններ, որոնց պատճառը քիմիական նյութերի օգտագործումն ու ձեռքի աշխատանքն են։ Արտադրամասի կուսկազմակերպության բյուրոն, քննարկելով այդ հարցը, գտավ, որ անհրաժեշտ է փոխել տեխնոլոգիան։ Գործարանի մասնագետները երկրի նախագծային կազմակերպությունների օգնությամբ այժմ պատրաստում են մի մե-

քենա, որը հատիկացման է ենթարկելու թիթեղի մակերեսը և այն պիտանի դարձնելու տպագրական կարիքների համար։ Մեքենայի ներդրումը, որը նախատեսված է 1973—1974 թթ., կապահովի բարձր արտադրողականություն և հնարավորություն կընձեռի վերացնել աշխատանքի աննպաստ միջավայրը, 20—25 բանվորի փոխադրել արտադրության այլ օղակներ։

Ձեռնարկության կոմունիստների ակտիվ մասնակցությամբ լուծվել են աշխատանքի պայմանների բարելավմանը վերաբերող այլ հարցեր ևս՝ էլեկտրոլիզի արտադրամասի թունավոր գազերի նվազեցումը, բանվորների բարձրորակ սպասարկումը և այլն, որոնք մարդկանց առողջությունը պահպանելու և արտադրության մեջ նրանց ուժերն արդյունավետ օգտագործելու չափազանց կարևոր երաշխիք են։

Կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները արտադրության արդյունավետության բարձրացման համար ներքին ռեզերվների օգտագործման լավագույն միջոցներից մեկը համարում են աշխատանքի գիտական կազմակերպումը։ Այդ «բնագավառից» գործարանն անցյալ տարի ստացավ 87 հազար ռուբլու օգուտ։

Բայց, ինչպես ասաց ԱԳԿ բաժնի ավագ տնտեսագետ, կոմունիստ Գ. Մկրտչյանը, էականը միայն ռուբլիները չեն։ Գլխավորը մարդկանց ուժերն ու կարողությունները ճիշտ օգտագործելն է, դրանք արտադրության ռեզերվները հայտնաբերելու և շարժման մեջ դնելու գործին նպատակահարմար ծառայեցնելը։ Արդյունքն ավելի շոշափելի կլինի, մարդկային եռանդի և նյութական միջոցների քիչ ծախսումներով շատ արդյունք կստացվի, եթե աշխատանքի գիտական կազմակերպումը դառնա համընդհանուր ձգտում, կոլեկտիվի բոլոր անդամների գլխավոր հոգսն ու սեփականությունը։

Այդ առնչությամբ ծավալված աշխատանքի շնորհիվ անցյալ տարի ալյումինագործները համատեղեցին մի շարք մասնագիտություններ, որոնք մոտիկ են իրենց բնույթով կամ հանդես են գալիս միևնույն պրոցեսի ընթացքում։ Էլեկտրափականագործը սովորեց եռակցողի գործը, փաթեթավորողը ստանձնեց նաև հսկիչի պարտականությունը։ Հիմա 12 հերթափոխությունների պետեր հաճույքով կատարում են նաև հաշվառիչի աշխատանքը, իսկ երեք բանվորներ բարձում և կառերով փոխադրում են ալյումինի հումքը՝ կավահողը։ Երկար ժամանակ չպահանջվեց, որ էլեկտրոլիզավարը ձեռք բերի փականագործի մասնագիտություն, կռունկավարը տիրապետի ձուլման կաղապարներ պատրաստողի հմտությանը։

Կուսկազմակերպության օգնությամբ և ղեկավարությամբ ԱԳԿ բաժինը իրականացնում է բանվորների աշխատանքի պայմանները բարելավելու ծրագիր։ Տարիներ շարունակ մետաղի ձուլման համար կիրառվող անոդային զանգվածների բարձումը, վայրերբարների (ալյումինաձողերի) դարսումը կատարվում էին ձեռքով, որոնք ծանր աշխատանք են համարվում։ Այժմ դրանք մեքենայացված են։ Հարկ եղավ զբաղվել նաև ձեռնարկության գեղագիտական ձևավորմամբ։ Արտադրամասերի անհրապույր, մռայլ տեսքը, որ գոյացել էր նորոգմանը հատուկ նշանակություն չտալու հետևանքով, չէր նպաստում աշխատողների բարձր տրամադրությանը, հաճելի միջավայր չէր ստեղծում նրանց համար։ Օգնություն ստանալու նպատակով գործարանի մասնագետները դիմեցին տեխնիկական էսթետիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի մասնաճյուղի աշխատողներին։ Նրանց խորհրդով արտադրամասի պատերը, մեքենաները ներկվեցին տեսողությունը հանգստացնող գեղեցիկ գույներով, ավելի հարմար ու ապահով դարձան բանվորական գործատեղերը։

Գործարանում ամուր հիմքերի վրա է դրված ոչ միայն աշխատանքային կարգապահությունը, այլև կոլեկտիվի անդամների ուսուցումն ու հանգստի կազմակերպումը։ Կոմունիստական աշխատանքի 10 դպրոցներում սովորում են 235 բանվոր-ունկնդիրներ, իսկ մեծ թվով ինժեներա-տեխնիկական աշխատողներ և բանվորներ ընդգրկված են տնտեսագիտական ուսուցման խմբակներում։ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված հոբելյանական հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևի զեկուցումից բխող թեմաները, արտադրության կոնկրետ էկոնոմիկան դարձել են նրանց ուսումնասիրության առարկան։ Ունկնդիրները դրանք սերտորեն առնչում են ձեռնարկության կոլեկտիվի առջև դրված խնդիրների հետ։ Հերթափոխի վարպետ, էլեկտրոլիզի արտադրամասի ԼԿԵՄ բյուրոյի քարտուղար Ա. Շեկոյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի դպրոցի պարապմունքի ժամանակ բանվորների մոտ միտք հղացավ պայքարել խնայողության համար։ Այդ մասին նրանք հաղորդեցին կուսբյուրոյին։ Նախաձեռնությունը հավանության արժանացավ. 15 էլեկտրոլիզավարներ իրենց տեղամասերում հաստատել են խնայողության խստագույն ռեժիմ, ձգտում են արդյունավետ օգտագործել աշխատաժամանակը, հումքը, էլեկտրաէներգիան, գործիքները։

Արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով տարվող քաղաքական-կազմակերպչական աշխատանքը ալյումինագործներին օգնեց հնգամյակի երկրորդ տարում և այս տարվա անցած ամիսներին տեղ գրավել հանրապետության առաջավոր կոլեկտիվների շարքում։ Ձեռնարկության մարդիկ որոշել են հնգամյակի վճռական տարում ժամկետից շուտ կատարել արտադրանքի թողարկման և իրացման առաջադրանքները, գերակատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։ Գործարանի կոմունիստները համոզված են, որ քաղաքական աշխատանքն իր բարերար ազդեցությունը կունենա այդ բնագծերը հաջողությամբ նվաճելու, ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար։ Կուսկազմակերպությունն իր պարտքն է համարում օգնել կոլեկտիվին՝ գործով պատասխանելու 1973 թվականը հարվածային աշխատանքի տարի դարձնելու վերաբերյալ կուսակցության կոչին։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Պ. Ռ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

Հայկ. ՍՍՀ խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր, գյուղատնտեսական գիտությունների դոկտոր

## ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԵՎ ՊՏՂԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Խաղողագործությունն ու պտղաբուծությունը Հայաստանում եղել և մնում են որպես գյուղատնտեսության կարևորագույն ճյուղեր։ Դրանց հետագա զարգացման նպատակով նախատեսվում է այգիներ հիմնել այնպիսի հողերում, որոնք ներկայումս օգտագործվում են միամյա դաշտային կուլտուրաների համար կամ կիսաանապատային ձմեռային արոտավայրեր են և նվազ բերրի։*

*Նախատեսվում է զգալի չափով ավելացնել խաղողի և պտղատու այգիների նոր տնկումները։ Հեռանկարում հնարավոր է դրանց տարածությունները հասցնել մինչև 130—135 հազար հեկտարի, խաղողի համախառն արտադրանքը՝ 340, իսկ պտուղներինը՝ 252 հազար տոննայի։ Դրան համապատասխան զգալի չափով կաճի խաղողի և պտուղների մթերումների ծավալը։*

*Այգիների ընդարձակման, բերքատվության բարձրացման, խաղողի և պտուղների համախառն արտադրանքի ու մթերումների ավելացման ասպարեզում նախատեսված ծրագիրը հաջողությամբ կենսագործելու համար մեծ ջանքեր կպահանջվեն։ Նոր այգի հիմնելը և ճիշտ խնամքը հեշտ գործ չէ։ Այն շատ ուժեր ու ծախսեր է պահանջում։ Այդ պատճառով նոր հիմնվող այգիներում պտղաբերման արագացման և բարձր բերքի ստացման միջոցառումների մշակումը կարևոր նշանակություն է ստանում։ Ուստի, անհրաժեշտ է այգեգործությունը վարել գիտականորեն հիմնավորված ձևով, որպեսզի հնարավոր լինի նվազագույն ծախսումներով բարձրացնել պտղաբուծության և խաղողագործության արդյունավետությունը։*

*Ներկայումս Սովետական Միությունում և արտասահմանյան մի շարք երկրների պտղատու տնկարկներում լայն արտադրական նշանակություն ունի թույլ աճող պատվաստակալների վրա խնձորենու և տանձենու գաճաճային ծառերի ստեղծումը։ Ինչպես ցույց է տալիս փորձը, դրանց առավելությունը, սովորական ծառերի նկատմամբ, այն է, որ շուտ են պտղաբերում (տնկման երրորդ-չորրորդ տարիներին)։ Գաճաճածառ պտղաբուծության դեպքում հնարավոր է մեկ հեկտարի վրա տնկել 600, 1200, 2400 և ավելի ծառեր և ութ-տասը տարի հետո հեկտարից միջին հաշվով ստանալ 30—35, իսկ առանձին գոտիներում, մինչև 70 տոննա և ավելի բարձրորակ պտուղներ։ Գաճաճածառ այգիները հեշտ է մշակել, իսկ բերքահավաքի որակն ու արտադրողականությունը մի քանի անգամ բարձր է, քան ուժեղ աճող պատվաստակալների վրա ըստեղծված տնկարկներում։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հանրապետության գյուղատնտեսական 9 գոտիների բնակլիմայական պայմանները միանգամայն նպաստավոր են խնձորենու շրջանացված սորտերը գաճաճային պատվաստակալների վրա աճեցնելու համար։*

*Հատուկ ուշադրության է արժանի նաև պտղաբուծության մեջ ծառերի պալմետային ձևավորումը։ Պալմետային տնկարկների նկատմամբ լավ խնամք տանելու դեպքում բերքատվությունը հեկտարից հասնում է 250—300 ցենտների, որը 2—3 անգամ բարձր է սովորական տնկարկների բերքից։*

*Պտղաբուծության ինտենսիվացման կարևորագույն ռեզերվներից մեկն էլ ծիրանի և դեղձենու խտացված տնկարկների ստեղծումն է, որի համար կան ռեալ հնարավորություններ։*

*Մեր հանրապետությունում արևային էներգիայի առատությունը, ճառագայթման բարձր ինտենսիվությունը, երկարատև տաք աշունը նպաստավոր պայմաններ են ստեղծում ծածկող ճյուղերի համեմատաբար խիտ դասավորությամբ կոմպակտ սաղարթ ձևավորելու և այգում ծառերը խիտ տնկելու համար։*

*Անցյալում կիրառվում էր ծառերի խիտ տնկումը, որի շնորհիվ այգետերերը բարձր բերք էին ստանում։ Հետագայում, աշխատանքների մեքենայացման համար պայմաններ ստեղծելու նպատակով, տնկումները կատարեցին քառակուսի եղանակով՝ շարքերի և ծառերի միջև մեծ տարածություններ թողնելով, որի հետևանքով բերքը զգալի նվազեց։ Այսպես, դեղձենին տեղաբաշխում էին 6×6 և 7×7, իսկ ծիրանը՝ 10×10 և նույնիսկ 11×11 մետր խտությամբ, այսինքն՝ հեկտարի վրա տնկում էին ծիրանի 100 ծառ։ Իսկ եթե տնկված ծառերի մի մասն էլ չորանում էր, ապա գործնականում ոռոգվող տարածության 50 տոկոսից ավելին դատարկ էր մնում՝ 20—25 տարիների ընթացքում։*

*Այսօր արդեն Աշտարակի շրջանի «Սասունիկ», Ուջանի, Զորափի, Հոկտեմբերյանի շրջանի Մյասնիկյանի անվան, Էջմիածնի շրջանի Նորակերտի սովխոզներում և այլ տնտեսություններում հիմնվել են մեծ խտությամբ այգիներ։*

*Փորձերը ցույց են տալիս, որ տնկման լավագույն խտության դեպքում դեղձենու տնկարկներից, նույնիսկ նոր իրացվող քարքարոտ հողերում, կարելի է բարձր եկամուտ ստանալ։ Սակայն, չնայած դրան, սահմանափակ տնտեսություններում կան դեղձենու և ծիրանի խտացված տնկումներ։ Անհրաժեշտ է հաղթահարել այս կարևոր միջոցառման նկատմամբ դեռևս գոյություն ունեցող թերահավատությունը և շեշտակիորեն ավելացնել ծիրանի ու դեղձի համախառն արտադրանքը։*

*Հանրապետության արդյունաբերական խաղողագործության հիմնական գոտիներում առայժմ գոյություն ունեն այգիների մշակության երեք եղանակներ՝ լարային, շարատունկ ոչ-լարային և թմբային։ Լարային այգիներում մեքենայացված են միջշարքային տարածությունների վարը, պարարտացումը, կուլտիվացիան, սնուցումը, հիվանդությունների ու վնասատուների դեմ թունաքիմիկատների սրսկումներն ու փոշոտումները։ Ցավոք, այդ չի կարելի ասել շա-*

բատունկ ոչ-լարային այգիների մասին, որտեղ աշխատանքների մեքենայացման մակարդակը ցածր է։ Թմբային այգիների մշակումը հնարավոր չէ մեքենայացնել։ Այստեղ վազերը 100 և ավելի տարվա են, բերքատվությունը խիստ իջել է։ Այժմ այդպիսի վիճակում է Եղեգնաձորի, Էջմիածնի, Աշտարակի և այլ շրջանների՝ անցյալում փառաբանված այգիների զգալի մասը, որոնք զբաղեցնում են լավագույն ջրովի հողեր։

Ծերացած նման վազերը վաղուց պետք է հանվեին և, ժամանակակից պահանջներին համապատասխան, դրանց տեղը նոր այգիներ հիմնվեին։ Տարատունկ, բայց դեռևս լարերի վրա չբարձրացված այգիներում մշակության ծախսերը շատ մոտ են թմբային սիստեմի ծախսերին։ Ուստի, նման այգիները ևս պետք է վերակառուցվեն և բարձրացվեն լարերի վրա։ Այդ միջոցառումը տնտեսական մեծ արդյունք կտա։

Հանրապետության տնտեսություններում քիչ չեն նաև հին, բարձիթողի, մանր կտորներով պտղատու այգիները, որոնք ապրանքային արտադրանք չեն տալիս։

Պտղաբուծությունը լրիվ ինտենսիվացնելը դժվար է առանց հին այգիները արմատապես նորոգելու։ Տնտեսությունների մեծ մասում դրանք բազմասորտ են, տարբեր ժամկետներում հասունացող, ցածր արտադրանք ունեն։ Աններելի է, որ նույնիսկ մասնագիտացված նոր տնտեսությունների որոշ տարածություններում ծառերի խայտաբղետություն կա։ Շրջանացված սորտերի կողքին տեղ են գտել նաև ցածրարժեք սորտեր։

Պտղաբուծության հաջող զարգացումը շատ բանով կախված է այդ ճյուղի մեքենայացումից, խոշոր, զանգվածային տնկարկներ ստեղծելուց։ Իհարկե, այգիների տարածությունները տնտեսություններում կարող են տարբեր լինել, որը կախված է բնական և տնտեսական պայմաններից, ինչպես նաև նրանց առջև դրված խնդիրներից։ Սակայն փորձը ցույց է տալիս, որ համեմատաբար խոշոր այգիներ ունեցող տնտեսություններում ծախսված յուրաքանչյուր մարդօրվա դիմաց արտադրանքը և եկամտաբերությունը, որպես կանոն, բարձր են, իսկ արտադրանքի ինքնարժեքը՝ ցածր։ Առաջարկվող միջոցառումների իրագործմամբ կապահովվեն ո՛չ միայն այգիների խոշորացումը, մշակության մեքենայացումը, այլև աշխատանքի ճիշտ կազմակերպումը և բերքի պահպանումը։

Խաղողի և պտղատու հին այգիների վերափոխմամբ հնարավոր կլինի վերացնել սորտաշրջանացման, դրանց ընտրության և փոխհարաբերության գործում անցյալում եղած սխալները, ավելի ճիշտ սահմանելու, իսկ այնուհետև իրականացնելու մշակության մասնագիտացումը, պտղատուների ու խաղողի տեղաբաշխումը և սորտաշրջանացումը։

Մոտ ապագայում Երևանը կդառնա միլիոնանոց քաղաք։ Մայրաքաղաքին և նրան շրջապատող արդյունաբերական շրջաններին բարձրորակ կաթնամթերքներով և թարմ բանջարեղենով կապահովի Արարատյան հարթավայրը։ Այդ միտումով մեծ աշխատանք է կատարված խաղողի և պտղատու կուլտուրաների մշակության վերին սահմանները հնարավորին չափ տեղաշարժելու համար։ Այսպես, եթե 1952 թ. նախալեռնային գոտուն բաժին էր ընկնում հանրապետության պտղատու այգիների 28,6, իսկ լեռնային գոտուն՝ 15,2 տոկոս, ապա 1970 թ. դրանք համապատասխանաբար կազմել են 37,1, 22,8 տոկոս։



Իրականում լեռնային շրջաններում աճեցված խնձորենու և տանձենու ձմեռային սորտերն իրենց պտուղների համային և ապրանքային հատկանիշներով, որոշ դեպքերում, գերազանցում են ցածրադիր վայրերում աճեցված համանման սորտերին և աչքի են ընկնում կայուն բերքատվությամբ։ Օրինակ, Ախուրյանի շրջանի Հացիկի սովխոզում 47 հեկտարի վրա ամեն տարի մեկ հեկտարի հաշվով 250—300 ցենտներ խնձոր են ստանում։ Պտղատուներից լավ բերք են ստանում նաև նույն շրջանի Մարմաշեն, Ղարիբջանյան և Ազատան գյուղերի, Արթիկի շրջանի Անուշավան, Սպիտակի շրջանի Լեռնանցք, Սարահարթ գյուղերի կոլտնտեսությունները և ուրիշ տնտեսություններ։

Պտուղների համախառն արտադրանքն զգալի չափով ավելացնելու ռեալ հնարավորություն է ստեղծվել նախալեռնային ու լեռնային գոտիներում, հատկապես Շիրակում, որտեղ մոտակա տարիներին նախատեսվում է պտղատու ծառեր տնկել Կառնուտի ոռոգվող հողերում։ Պտղաբուծության համար մեծ ռեզերվ կարող է լինել նաև Ամասիայի շրջանի Գյուլիբուլաղի հարթավայրը։ Միայն նշված գոտում այդպիսի հողատարածությունները կկազմեն 30—40 հազար հեկտար։

Այս խնդիրների հաջող լուծումն զգալի չափով կախված է սորտերի ճիշտ ընտրությունից և տեղաբաշխումից։ Մեր ինստիտուտը վերջին 25—30 տարիներին զգալի աշխատանք է տարել բարձր լեռնային պայմաններում մշակվող պտղատու և հատապտղատու կուլտուրաների սորտային կազմը ճշտելու նպատակով։ Արտադրությանը երաշխավորվել են տեղական նոր սորտեր, որոնք աչքի են ընկնում ոչ միայն ցրտադիմացկունությամբ, այլև պտուղների որակական ցուցանիշներով և պահունակության տևողությամբ։ Սակայն լինում են դեպքեր, երբ որոշ կոլտնտեսություններ և սովխոզներ դրսից չստուգված տնկանյութ են բերում, նախապես չիմանալով, թե տեղի հողա-կլիմայական պայմաններում այն իրեն կարդարացնի՞ արդյոք։ Անհրաժեշտ է վերջ տալ նման երևույթին և վերանայել տարբեր գոտիների պետտնկարանների պլանները, դրանց մեջ պարտադիր մտցնելով սելեկցիայի ճանապարհով ստացված նոր սորտերը, խստորեն պահպանել պտղատու ու հատապտղատու կուլտուրաների սորտաշրջանացումը։

Պարզված է, որ պտղաբերման պարբերականությունը կախման մեջ է պտղատու ծառի ընդհանուր վիճակից և դրա սնման պայմաններից։ Ցավոք, նախալեռնային և լեռնային գոտիներում բավարար չափով չեն ուսումնասիրվել ու մշակվել ագրոտեխնիկական կոնկրետ միջոցառումներ։ Մինչդեռ, բարձր և կայուն բերք ստանալու համար, անհրաժեշտ է մշակել նշված գոտիների պահանջներին համապատասխան ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքս։

Լեռնային պտղաբուծության զարգացումը ոչ միայն կնպաստի պտուղների արտադրության զգալի ավելացմանը, այլև նախալեռնային և լեռնային գոտիների տնտեսությունների էկոնոմիկայի բարձրացմանը, որոշակի թվով մարդկանց մշտական աշխատանքով ապահովմանը, բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը։

Ինչպես հայտնի է, մեր հանրապետությունը սակավահող է։ 1.386 հազար հեկտար գյուղատնտեսական հողատարածություններից վարելահողերը կազմում են՝ 468, իսկ բազմամյա տնկարկները՝ 89 հազար հեկտար։ Մնացած հողատարածությունները չեն օգտագործվում կամ լավագույն դեպքում օգտա-

գործվում են որպես ցածր արտադրողական արոտավայրեր և խոտհարքներ։ Դրանք հիմնականում լանջային նվազ արտադրողական հողեր են։ Ինչպես ցույց է տվել Իջևանում եղած փորձը, լանջային հողերի մեծ մասը կարելի է օգտագործել բազմամյա կուլտուրաների, հատկապես խաղողի և պտուղների մշակության համար։ Լանջերի իրացման ասպարեզում մեծ աշխատանք է կատարվել այդ շրջանի Լալիգյուղի, Աչաջրի, Այգեհովտի սովխոզներում և այլ տնտեսություններում։ Համանման հողերի հաշվառման համաձայն, իրացման առաջին էտապում դրանց տարածությունը հանրապետությունում կարող է հասնել 20—25 հազար հեկտարի։ Դրանք առանձնապես շատ են Նոյեմբերյանի, Իջևանի, Շամշադինի, Եղեգնաձորի և այլ շրջաններում։ Միայն Նոյեմբերյանի շրջանում այդպիսի լանջերի տարածությունը կազմում է մոտավորապես 7 հազար հեկտար, որոնք գտնվում են ծովի մակերևույթից 650—700 մ բարձրության վրա, միանգամայն նպաստավոր բնակլիմայական պայմաններում։

ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության Մինիստրների սովետը միջոցառումներ են մշակել մոտակա տարիներին հինգ հազար հեկտար լանջային հողերում բազմամյա կուլտուրաներ աճեցնելու համար։

Մեր կարևոր խնդիրներից է նաև աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Չնայած վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել նոր այգիներ հիմնելիս հողի նախապատրաստման աշխատանքների մեքենայացման աստիճանը բարձրացնելու ասպարեզում, այնուամենայնիվ, պտղաբուծության և խաղողագործության մեջ մեքենայացման մակարդակը դեռևս ցածր է։ Եվ այդ այն դեպքում, երբ տնտեսությունների մեծ մասում բացահայտ անհամապատասխանություն գոյություն ունի տնկարկների առկա տարածության ու բանվորական ուժով ապահովվածության միջև։ Այնպիսի աշխատատար պրոցեսներ, ինչպիսիք են այգեթաղը, այգեբացը, միջվաղային և մերձբնային տարածության մշակությունը, պարարտացումը, ծառերի էտը, բերքահավաքը և մի շարք այլ աշխատանքներ, համարյա մեքենայացված չեն։ Խաղողի այգիների մեկ հեկտարի մշակության ընդհանուր ծախսերը կազմում են 600—650 ռուբլի, որից այգեթաղի և այգեբացի վրա ծախսվում է 232 ռուբլի։ Եթե հաշվի առնենք, որ այդ աշխատանքները համընկնում են գյուղատնտեսական գարնանային և աշնանային աշխատանքների ամենալարված ժամանակաշրջաններին, ապա պարզ կդառնա դրանց մեքենայացման կարևորությունը։

Այդ նպատակով որոշ աշխատանք կատարվել է։ Խաղողի այգիները մեքենայացված եղանակով թաղելու համար ինստիտուտը մշակել և արտադրության մեջ ներդրել է վազերի միակողմանի ձևավորումը, իսկ գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացիայի ինստիտուտն ստեղծել է այգեթաղի МЛУ—2—2,5 մեքենան, որը մի քանի տարի է, ինչ փորձարկվում է և տալիս բավարար արդյունք։ Սակայն այգեբացի մեքենաները դեռևս հեռու են ցանկալի արդյունքներից։ Անհրաժեշտ է ձեռք առնել բոլոր միջոցները, որպեսզի արագացվի այգեթաղի և այգեբացի կոմպլեքսային մեքենայացումը։ Հանրապետության խաղողի այգիների մշակությունը մեքենայացնելու գործում կարևոր նշանակություն ունի ВУТ—2,5 ունիվերսալ մեքենայի կիրառումը, որը հնարավորություն է ընձեռում մեքենայացնելու աշխատանքների զգալի մասը։

Աշխատատար պրոցեսներն անբավարար են մեքենայացված նաև պտղաբուծության մեջ, թեև այստեղ կան լրիվ մեքենայացման բոլոր հնարավորությունները, հատկապես տնկարկների ու հողի մշակության, խնամքի համար։



Անհրաժեշտ է արդյունավետ օգտագործել ժամանակակից տեխնիկան և, միաժամանակ, հետևողականորեն կատարելագործել գոյություն ունեցող մեքենաները, դրանք հարմարեցնել հանրապետության շրջանների բնակլիմայական և տնտեսական պահանջներին։ Հայկական գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացիայի գիտահետազոտական ինստիտուտը պետք է ստեղծի մեր յուրահատուկ բնակլիմայական պայմաններում ավելի արդյունավետ գործող մեքենաներ։

Մեր հանրապետությունում վաղուց անհրաժեշտություն է դարձել պտուղների և խաղողի արդյունաբերական ճիշտ պահպանումը, բայց այդ ասպարեզում դեռևս աննշան աշխատանք է կատարվել։ Դանդաղ տեմպերով է ընթանում պտղապահեստների շինարարությունը։ Տարեցտարի չեն կատարվում նոր կարողությունների շահագործման պլանները, չեն բավարարվում տեխնիկական և տեխնոլոգիական պահանջները, որի պատճառով պտուղները փչանում են։ Նման վիճակը հիմնականում բացատրվում է որոշ շրջանների ու տնտեսությունների ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքով, ինչպես նաև հանրապետությունում ինժեներների, սառնարանային արտադրության մեխանիկների, որակավորված մեքենավարների և տեխնոլոգների պակասությամբ։

Պտուղների և խաղողի արդյունաբերական մասշտաբներով պահպանումը նոր և շատ բարդ պրոցես է. այդ գործի հաջողությունը պայմանավորված է առաջադրված միջոցառումների ճիշտ և խելացի իրականացմամբ։

Ներկայումս խաղողի այգիներում գերակշռում են տեխնիկական սորտերը։ Ինչպես հայտնի է, դրանք պիտանի չեն երկարատև պահպանման համար։ Հանրապետության խաղողի այգիներում սեղանի սորտերի տեսակարար կշիռը 4—5 տոկոս է, որը միանգամայն անբավարար է սպառման և պտղապահեստները բեռնավորելու համար։ Համանման վիճակում են գտնվում նաև պտղատու տեսակները։ Այստեղից բխում են պտղաբույծների և խաղողագործների անհետաձգելի խնդիրները. նոր տնկումների ծրագրերն իրականացնելիս անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել արտադրության մեջ հնդավոր պտուղների աշնանային-ձմեռային պահունակ և խաղողի սեղանի սորտերի ներդրմանը, այդ կուլտուրաներից մաքրասորտ զանգվածային տնկարկներ ստեղծելով պտղապահեստների մոտակայքում։

Սովորաբար հավաքված բերքի 30—40 տոկոսը ոչ տեսակային լինելու պատճառով երկար չի պահպանվում։ Հարց է ծագում. ինչպե՞ս օգտագործել պահպանման ոչ պիտանի, սակայն վերամշակման համար օգտակար պտուղները։ Չէ՞ որ պահպանվող 10—12 հազար տոննա պտուղներից ու խաղողից ոչ տեսակային հումքը կլինի 4—5 հազար տոննա։ Չի կարելի հույս ունենալ, թե պահածոների արդյունաբերության և կոոպերատիվ ձեռնարկություններն այդպիսի հումքը վերամշակման կընդունեն։ Ստեղծված դրությունից դուրս գալու ամենաճիշտ ելքն այն է, որ տնտեսություններում կազմակերպվեն պտուղների և խաղողի վերամշակման արտադրամասեր։ Դրանց համար որպես հումք կարող են ծառայել նաև ծառերից թափված պտուղները, որոնք փաստորեն կորչում են։ Նման արտադրամասերում նպատակահարմար է կազմակերպել չորացումը, սուլֆիտացումը (հետագա վերամշակման համար՝ ջեմ, պովիդլո), մրգային պյուրեների, հյութերի, կոմպոտների և այլ սննդամթերքների պատրաստումը։

Գուգարքի շրջանի Շահումյանի անվան սովխոզում արդեն մի քանի տարի է, ինչ գոյություն ունի (փոքր կարողությամբ) պահածոների գործարան, որը եկամտաբեր է և միանգամայն արդարացնում է իրեն: Այդպիսի ձեռնարկություններ կան նաև Կրասնոդարի երկրամասի մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Համանման փոքր կարողությամբ արտադրամաս-գործարանների կազմակերպումը կնպաստի պտուղների և խաղողի զանգվածային պահպանմանը, հումքի կորուստների կրճատմանը, այգեգործության եկամտաբերության և արդյունավետության բարձրացմանը:

Հանրապետության պտղաբուծության մեջ գերակշռում են ծիրանը և դեղձը, որոնց բերքը (սորտաշրջանացման պայմաններում) հասունանում է առաջինը՝ 15—18, երկրորդը՝ 20—25 օրում: Մասսայական բերքահավաքի շրջանում արդյունաբերությունը չի կարողանում ստացված հումքը ժամանակին մշակել և դա այն դեպքում, երբ ձեռնարկություններն ուշ աշնանը, ձմռանը և գարնանը համարյա չեն գործում:

Պահածոների արդյունաբերության մեջ սեզոնայնությունը հաղթահարելու պրոբլեմը վաղուց է զբաղեցրել գիտության և արդյունաբերության աշխատողներին: Նրանք մի շարք առաջարկություններ են արել այդ երևույթը մեղմացնելու համար, հատկապես յուրաքանչյուր գործարանի գոտում պտղա-հատապտղային կուլտուրաների տարբեր տեսակներ մշակելու, յուրաքանչյուր կուլտուրայի սահմաններում այնպիսի սորտեր ընտրելու և ներդնելու, որոնք աչքի են ընկնում հասունացման տարբեր ժամկետներով:

Սակայն պտղատու կուլտուրաների սորտեր ընտրելու, դրանք նախալեռնային շրջանները տեղաշարժելու և կասկադաձև տեղաբաշխելու գործում ռեալ արդյունքներ ստանալու համար տարիներ կպահանջվեն:

Պահածոների գործարանի սեզոնայնությունը հաղթահարելու և պտուղների փչացումը նվազագույնի հասցնելու նպատակով մեր ինստիտուտը կոմպլեքսային ձևով ուսումնասիրել է սառեցման եղանակով դրանց պահեստավորումը, որպեսզի հետագայում պահածոներ պատրաստվեն :

Լավագույն արդյունքներ են ստացվել ծիրանը և դեղձը սառեցված վիճակում պահպանելիս (սառեցումը՝ —40°-ի, պահպանումը՝ —18°-ի տակ): Այդ դեպքում պահպանման հնարավոր ժամկետը հասնում է 8—10 ամսի: Սառեցնելիս և պահպանելիս պտուղների քիմիական կազմի փոփոխություններն աննշան են, միկրոբիոլոգիական երևույթները բացառվում են և պահածոներն իրենց որակով չեն տարբերվում համանուն թարմ պտուղներից վերամշակված նմուշներից:

Պտուղների խոր սառեցման եղանակն արդեն ներդրվել է Այրումի պահածոների գործարանում: Անհրաժեշտ է արագացնել սառեցման արտադրամասերի շինարարությունը հանրապետության պահածոների մյուս գործարաններում:

Վերոհիշյալ խնդիրների բարեհաջող կենսագործումը հնարավորություն կընձեռի զգալի չափով ընդարձակելու այգիների տարածությունը և մեծ չափերով ավելացնելու պտուղների ու խաղողի համախառն արտադրությունը: Այդ բոլորը կնպաստեն այգեգործության բնագավառում լուծելու այն խնդիրները, որոնք մեր առջև դրել է ՍՄԿԿ XXIV համագումարը:

ԳՈՀԱՐ ԳԻՄՈՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ԿԱՆԱՆՑ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը գիտատեխնիկական առաջընթացը դիտում է որպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման գլխավոր լծակ: Այժմ լայնորեն օգտագործվում են էներգիայի նոր աղբյուրներ, արագանում է նորագույն գիտական նվաճումների ներդրումն արտադրության մեջ, բազմապատկվում են ժողովրդական տնտեսության ճյուղերի արդյունավետության բարձրացման տեմպերը:

Արդյունաբերական ձեռնարկությունների հագեցումը նոր տեխնիկայով արմատապես փոխում է աշխատանքի բնույթը, դրա շնորհիվ ավելանում է մեքենայացված աշխատանքով զբաղված բանվորների թիվը, վերանում են ծանր, ձեռքի աշխատանքի շատ մասնագիտություններ: Օրինակ՝ Սովետական Միության միայն տեքստիլ արդյունաբերության գործվածքային արտադրության մեջ, որտեղ հիմնականում կանայք են, ավտոմատացման մակարդակը վերջին տասը տարում 40 տոկոսից հասել է 80-ի, որի շնորհիվ, անշուշտ, բանվորուհիների գործը հեշտացել է:

Այժմ մեծ թվով կանայք տիրապետում են այնպիսի մասնագիտությունների, որոնք վաղուց ի վեր համարվել են «տղամարդու» գործ: Ավտոմատացումը լուծարքում է, այսպես կոչված, միայն տղամարդկանց վերաբերող ավանդական մասնագիտությունները, դրանց մեծ մասը մատչելի դարձնում նաև կանանց: Ծանր, վտանգավոր աշխատանքների մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ ռեալ հնարավորություններ են ստեղծվում ընդլայնելու կանանց գործունեության ոլորտները մեքենայացված արտադրություններում: Այս հանգամանքը խիստ կարևոր է. նախ՝ բարելավվում է աշխատավոր կանանց որակական կազմը, ավելանում հմուտ մասնագետների թիվը և, որ կարևորն է, նրանց վարձատրությունը:

1972 թ. արդյունաբերության մեքենայացված աշխատանքների կեսը բաժին էր ընկնում կանանց: Սա վկայում է նրանց տեխնիկական արտադրական կուլտուրայի և աշխատանքային հմտության կատարելագործման մասին: Ուշագրավ է, որ տեքստիլ ու կարի արդյունաբերության մեջ զբաղված կանանց

տեսակարար կշիռը, աշխատող բոլոր կանանց համեմատությամբ, իջել է մինչև 21 տոկոսի, մինչդեռ հեղափոխությունից առաջ երկրի մասշտաբով այն կազմում էր 61,1 տոկոս։ Միաժամանակ մեքենաշինության ու մետաղամշակման ոլորտում զբաղված կանանց տեսակարար կշիռը 2,4 տոկոսից հասել է 33,5-ի։ Արդյունաբերության բնագավառում մեքենայացված աշխատանքով զբաղված կանանց մեկ երրորդը մասնագիտացել ու աշխատում է բարդ դազգահների, մեքենաների, շարժիչների ու սարքավորումների վրա։

Գիտատեխնիկական առաջընթացի առկա աստիճանում արդյունաբերության բնագավառում կանայք աշխատում են ո՛չ միայն որպես որակյալ բանվորներ, այլև արտադրապրոցեսների մասնագետներ ու ղեկավարներ, ռադիո և էլեկտրոնային, քիմիական և արդյունաբերության այլ կարևոր ճյուղերի տեխնիկներ ու ինժեներներ։

Մինչհեղափոխական Ռուսաստանում, 1897 թ. մարդահամարի տվյալներով, վարձու աշխատող կանանց 55 տոկոսը կապիտալիստների, կալվածատերերի ու աստիճանավորների տնային սպասուհիներն էին, 25 տոկոսը՝ բատրակուհիները, 13 տոկոսը զբաղված էր ձեռնարկություններում ու կառույցներում, այն էլ ամենասև աշխատանքով, միայն 4 տոկոսն էր աշխատում առողջապահության և լուսավորության ցանցում։ Մինչդեռ 1972 թ. բանվոր-ծառայող կանանց ընդհանուր թվի 33 տոկոսն աշխատել է արդյունաբերության և շինարարության բնագավառում, 25-ը՝ առողջապահության, լուսավորության, կուլտուրայի, գիտության ոլորտում (տե՛ս «Вестник статистики», № 1, 1973, стр. 87)։

Սովետական իշխանության տարիներին մեծացել է ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող կանանց թիվը։ 1971 թ. այն 10,5 մլն էր, որը 12 անգամ ավելի էր, քան 1941 թ. և 70 անգամ ավելի, քան 1928 թ.։ Այդ ժամանակամիջոցում կանանց տեսակարար կշիռն ընդհանուր մասնագետների թվում 29 տոկոսից հասել է 59-ի (տե՛ս «Народное хозяйство СССР» 1922—1972, М., 1972, стр. 353)։

Սովետական իշխանության տարիներին բազմաթիվ կանայք առաջ են քաշվել որպես արտադրության կազմակերպիչներ, կոլտնտեսությունների նախագահներ, ձեռնարկությունների դիրեկտորներ։ 1971 թ. ՍՍՀՄ-ում նրանք կազմել են ձեռնարկությունների վարպետների 23, գլխավոր ինժեներների՝ 19, արտադրամասերի պետերի ու նրանց տեղակալների՝ 12 տոկոսը։ Յուրաքանչյուր երրորդ ինժեները կին է։ Գյուղատնտեսության մասնագետների 46 տոկոսը կանայք են։ Մինչդեռ իրենց իսկ՝ ամերիկացիների խոստովանությամբ, 1968 թ. կանայք ԱՄՆ-ի արտադրության ղեկավարների մեջ կազմել են ընդամենը 1,5 տոկոս (տե՛ս «За рубежом», № 10, 1970, стр. 19)։

Կանանց տեխնիկական-մասնագիտական խոր գիտելիքները, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում նրանց ձեռք բերած գործարար աշխատանքի փորձը ցույց են տալիս, որ մենք այժմ ավելի մեծ հնարավորություն ունենք կանանց առաջ քաշելու տնտեսական, պետական պատասխանատու և ղեկավար աշխատանքների։

Կանանց աշխատուժի օգտագործման որակական ու քանակական նման տեղաշարժերը, մեր երկրում սոցիալիստական արտադրահարաբերությունների, արտադրաուժերի զարգացման, առաջին հերթին, գիտատեխնիկական առաջ-



ընթացի արդյունք են։ Հայտնի է, որ կապիտալիզմի օրոք կա նոր տեխնիկայի կիրառման որոշակի սահման, այստեղ էականը շահույթի կորզումն է։ Տեխնիկական առաջընթացն ուժեղացնում է կապիտալի կուտակման տենդենցը, որում կապիտալիզմի հիմնական հակասությունը։ Կ. Մարքսն ընդգծել է. «Մեր ժամանակներում ամեն մի բան կարծես թե հղի է իր հակադրությամբ։ Մենք տեսնում ենք, որ մարդկային աշխատանքը կրճատելու և ավելի արդյունավետ դարձնելու հրաշագործ ուժով օժտված մեքենան տանում է դեպի սով ու ուժասպառում։ Հարստության նորահնար աղբյուրները շնորհիվ ինչ-որ ճակատագրական կախարդանքի զրկանքների աղբյուր են դառնում» (տե՛ս Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, Երևան, 1950, էջ 423)։

Սոցիալիզմի օրոք տեխնիկական առաջընթացն ի սպաս է դրվում ողջ հասարակության շահերին և կոչված է արագացնելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը։ Աշխատավորները շահագրգռված են նոր տեխնիկայի արմատավորմամբ, քանի որ այն հեշտացնում է աշխատանքը, բարելավում նրանց նյութական վիճակը։

Անցյալ հնգամյակում (1966—1970 թթ.) մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում նոր տեխնիկայի բնագավառում ներդրվել է 1.400 միջոցառում՝ տասնյակ միլիոն ռուբլի տնտեսական արդյունքով։ Հանրապետության գիտնականների, ինժեներների ու բանվորների ուժերով մշակվել և ստեղծվել է մեքենաների, սարքավորումների, ապարատների և տարբեր տեսակի սարքերի 415 նմուշ։ Արտադրության մեջ ներդրվել են 73 հազարից ավելի ռացիոնալիզատորական առաջարկություն և գյուտ, որոնց շնորհիվ տնտեսվել է 104 մլն ռուբլի։ Ընդ որում, վաստակավոր ռացիոնալիզատորների շարքում իրենց արժանի տեղն ունեն նաև կանայք։

Գիտատեխնիկական առաջընթացի, աշխատատար պրոցեսների մեքենայացման շնորհիվ զգալիորեն ընդլայնվում է կանանց աշխատանքի կիրառման ոլորտը։ Այսպես, ութերորդ հնգամյակում (1966—1970 թթ.) Հայաստանի թեթև արդյունաբերության ձեռնարկություններում մեքենայացվել է 55 արտադրամաս ու տեղամաս, ներդրվել 60 հոսքային գիծ, տեղակայվել ավելի քան 8 հազար նոր, բարձր արտադրողական տեխնոլոգիական սարքավորում, 650 սարքավորում ծանր և աշխատատար պրոցեսների մեքենայացման համար, ավելի քան 80 անընդհատ գործող փոխարկիչ։ Այդ բոլորի շնորհիվ աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը բարձրացել է մոտ 15 տոկոսով։ Մասամբ դրանով պետք է բացատրել, որ նշված ժամանակամիջոցում այդ բնագավառն ընդգրկվել են մոտ 25 հազար կին կամ 12 տոկոսով ավելի, քան նախորդ հնգամյակում (1961—1965 թթ.)։

Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով ընթացիկ հնգամյակում, առաջին հերթին, լուրջ ուշադրություն է նվիրվում գիտատեխնիկական առաջընթացին։ Հանրապետության գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկտորական կազմակերպություններն ու ձեռնարկությունները ուսումնասիրում են գիտատեխնիկական կարևոր պրոբլեմներ։ Ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են մոտավորապես 15 հազար գյուտ և նորարարական առաջարկություն, որի շնորհիվ մեկ տարում կտնտեսվի ավելի քան 25 մլն ռուբլի։

Ինչպես նշվում է Հայկական ՍՍՀ կենտվիճվարչության հաղորդագրության

*մեջ, 1972 թ. ստեղծվել և արտադրությունում արմատավորվել են նոր նմուշի մեքենաներ, սարքեր, հաշվողական տեխնիկա և նյութեր, առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսներ, կատարվել են արտադրության կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում։ Ստեղծվել են մոտ 60 անուն նոր նմուշի մեքենաներ, ապարատներ ու սարքեր։ Յուրացվել և սկսվել է 57 նոր տեսակի արդյունաբերական արտադրանքների սերիական թողարկումը, արդյունաբերական ձեռնարկություններում տեղակայվել է մոտ 100 մեքենայացված հոսքային գիծ, մեքենայացվել ու ավտոմատացվել են մի շարք տեղամասեր, արտադրամասեր, արդիականացվել է ավելի քան երկու հազար միավոր արտադրական սարքավորում։ Այս բոլորի շնորհիվ 1972 թ. արտադրության մեջ ընդգրկված 45 հազար հոգուց ավելի քան 20 հազարը կամ 45 տոկոսը կանայք են։ Ինչպես ցույց են տալիս մեր մոտավոր հաշվարկները, 1973 թ. հունվարի 1-ի դրությամբ, կանայք կազմում են ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր ծառայողների 43 տոկոսը, այն դեպքում, երբ 1970 թ. 41 տոկոս էր։*

*Աշխատանքի արտադրողականությունը հանրապետության արդյունաբերության մեջ 1971 թ., 1965 թ. համեմատությամբ, բարձրացել է 39 տոկոսով, ընդ որում, թեթև արդյունաբերությունում՝ 45 տոկոսով։ Մեքենայացման և ավտոմատացման շնորհիվ փոխվել է մասնագետների կազմը, մատչելի է դարձել կանանց աշխատանքը մեքենաշինության մեջ, թեթև և սննդի արդյունաբերության և այլ ճյուղերում (տե՛ս* Армения в цифрах, в 1791 г., Ереван, 1972, стр. 39*)։*

*Հայաստանի արդյունաբերության ոլորտում գործող մեքենաների և շարժիչների վրա աշխատողները 1966—1970 թթ. ավելացել են 2 անգամ։ Նույն չափով մեծացել է խառատների, փականագործների, ապարատավարների թիվը։ Մեքենաների և նոր սարքավորումների ներդրման շնորհիվ զգալիորեն պակասել են ծանր ֆիզիկական աշխատանքները նաև շինարարության ասպարեզում, հիմնականում այդ է պատճառը, որ նախորդ հնգամյակում այս բնագավառում աշխատող կանանց թիվն ավելացել է մոտ 8 տոկոսով (տե՛ս* Народное хозяйство Арм. ССР в 1970 г., Ереван, 1971, стр. *110)։*

*Հանրապետությունում աշխատատար պրոցեսների մեքենայացման բնագավառում կառուցվածքային մեծ փոփոխություններ են տեղի ունեցել նաև ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում։ Այսպես, տեխնիկական առաջընթացը զգալիորեն փոխել է գյուղատնտեսական աշխատանքների բնույթը, նախադրյալներ են ստեղծվում այն աստիճանաբար արդյունաբերականի տարատեսակը դարձնելու համար։ 1971 թ. տվյալներով, հանրապետության սովխոզներում ու կոլտնտեսություններում մեկ աշխատողին ընկնում էր 7,7 ձիաուժ էներգետիկ հզորություն, իսկ յուրաքանչյուր 100 հեկտար ցանքատարածության հաշվով՝ 364։ Մասամբ գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման շնորհիվ է, որ կոլտնտեսություններում աշխատողների 51 տոկոսը կանայք են։*

*Գիտատեխնիկական առաջընթացը զգալիորեն ընդարձակեց ինժեներատեխնիկական աշխատողների գործունեության կիրառման ոլորտը, բարձրացրեց նրանց տեսակարար կշիռը բանվոր ծառայողների ընդհանուր կազմում։ Այսպես, եթե ՀՍՍՀ-ում 1965 թ. 1000 բանվոր-ծառայողին ընկնում էր 165 բարձրագույն, միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետ, ապա 1971 թ.՝ 196։*

*1971 թ. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ոլորտում զբաղված բարձ-*



*րագույն կրթություն ունեցողներից 3.800 հազարը կամ 52 տոկոսը կանայք են (տե՛ս* Народное хозяйство СССР *1922—1972,* М., *1972,* стр. *353)։ 1970 թ. 1941 թ. համեմատությամբ, ինժեներների թիվը ՍՍՀՄ-ում ավելացել է մոտ 8 անգամ (195 հազարից մոտ 2.486 հազար, որից 31 տոկոսը կանայք), տեխնիկներինը մոտ 13,3 անգամ (324 հազարից 4.338 հազար, որից 38 տոկոսը կանայք), բարձրագույն և միջնակարգ կրթությամբ գյուղատնտեսներինը, զոոտեխնիկներինը և անասնաբույժներինը՝ մոտ 6,6 անգամ (154 հազարից 1.005 հազար, որից 46 տոկոսը կանայք (տե՛ս* Народное хозяйство СССР, в *1970* г., М., *1971,* стр. *525—526)։*

*Կանանց ընդգրկվածությունը ժողովրդական տնտեսության ճյուղերում տարբեր է։ Կան մասնագիտություններ, որոնց մենաշնորհը պատկանում է կանանց։ Նրանք բացարձակ մեծամասնություն են կազմում նաև արդյունաբերության մի շարք ճյուղերի բանվորների մեջ։ Օրինակ, ՍՍՀՄ-ում 1970 թ. կանայք կազմել են լաբորանտ բանվորների 89 տոկոսը, տեսակավորողների՝ 84, հրակիչների՝ 78, փաթեթավորողների՝ 79, լիցքավորողների՝ 65, օժանդակ բանվորների՝ 64, պահեստավորողների՝ 58 տոկոսը և այլն։ Մինչդեռ ցածր է նրանց տեսակարար կշիռը բարձր որակավորում և մեծ ֆիզիկական ուժ պահանջող աշխատանքներում։ Այսպես, փականագործների 2, բեռնակիրների՝ 4, էլեկտրամոնտյորների՝ 5, կարգավորողների և դարգահագործների՝ 7, փայտամշակման արտադրության բանվորների՝ 15, մեքենավարների՝ 21, ներկարարների՝ 22 տոկոսը կանայք են։*

*Ինչպես տեսնում ենք, նրանք դեռ հիմնականում զբաղված են համեմատաբար ցածր որակավորում պահանջող և օժանդակ աշխատանքներում, հետևաբար, անհրաժեշտ է լուրջ ուշադրություն նվիրել այդ բնագավառի աշխատանքների մեքենայացման մակարդակը բարձրացնելու վրա։*

*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մասնավորապես դեռ ցածր է հանրապետության արդյունաբերության մեջ ընդգրկված կանանց աշխատանքի մեքենայացման աստիճանը։ Այդ բնագավառում զբաղված կանանց 50 տոկոսն է, որ լրիվ աշխատում է մեքենաների ու ավտոմատների օգնությամբ։*

*Այսպիսով, արդյունաբերության մեջ զբաղված բանվորուհիների մոտ կեսը կատարում է էներգիայի մեծ ծախսում պահանջող ձեռքի աշխատանք։ Արտադրապրոցեսների հետագա ավտոմատացումն ու մեքենայացումը հնարավորություն կընձեռեն մեծ թվով կանանց ընդգրկվելու զարգացող ու ընդլայնվող արդյունաբերության տարբեր ճյուղերում։ Այդ նպատակով ընթացիկ հնգամյակում նախատեսված է զգալի աշխատանք կատարելու։ ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց. «Արտադրության արդյունավետության բարձրացման մյուս կարևոր ուղղությունը աշխատանքային ռեսուրսների ավելի ռացիոնալ օգտագործումն է, աշխատանքային ծախսումների իջեցումը՝ նախ և առաջ ձեռքի և ֆիզիկական ծանր աշխատանքի կրճատման հաշվին (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 77—78)։*

*Առաջադրված խնդրի կատարման համար ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվներում նախատեսվել է՝ «Ավելի արդյունավետ օգտագործել աշխատանքային ռեսուրսները։ Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հիման վրա հետևողականորեն կրճատել ձեռքի ծանր, ինչպես նաև չորակավորված աշխատանքի կիրառումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում» (Նույն տեղը, էջ 319—320)։*

Այս նպատակով զգալի գործ է կատարվելու ՀՍՍՀ-ում, քանի որ մեքենայացման մակարդակը արդյունաբերության մի շարք ճյուղերում բավականաչափ ցածր է: Չնայած մեքենաշինությունն աճող ճյուղ է և տարեցտարի ավելանում է կին բանվորների թիվը, այնուամենայնիվ, ցածր է մեքենայացման մակարդակը, և բանվորների մեծ մասը ստիպված է կատարելու ձեռքի ծանր աշխատանք: Նույնն է վիճակը սննդի և քիմիական արդյունաբերության մեջ: Թեև թեթև (այդ թվում տեքստիլ) արդյունաբերության մեջ մեքենայացման աստիճանն ավելի բարձր է, սակայն այստեղ ևս մեծ է ձեռքի աշխատանքով զբաղված կին բանվորների բացարձակ թիվը: Մասամբ աշխատանքի մեքենայացման ցածր աստիճանով պետք է բացատրել կանանց թվի պակասը սև ու գունավոր մետալուրգիայի, փայտամշակման, թղթի ու ցելյուլոզի, ապակու, պոլիգրաֆիական և արդյունաբերության այլ ճյուղերում:

Ժամանակակից բարդ սարքավորումները բանեցնող որակյալ կադրերի պատրաստման գործում զգալի դեր է կատարում հանրակրթական ուսուցումը: Հայտնի է, որ մեզանում իրականացվում է պարտադիր միջնակարգ կրթությունը, որը մեր հասարակարգի խոշոր նվաճումներից մեկն է: Բավական է ասել, որ Հայաստանում 1914—1915 ուստարում գործում էր ընդամենը 459 հանրակրթական դպրոց՝ 35 հազար աշակերտներով, իսկ 1971—1972 ուս. տարում բոլոր տիպի մասսայական հանրակրթական դպրոցների թիվը հասավ 1.542-ի՝ 667 հազար սովորողներով (տե՛ս Армения в цифрах в 1971, Ереван, 1972, стр. 205—207): Հատկանշական է, որ վերջին տարիներին ընդլայնվել է առանց արտադրությունից կտրվելու հանրակրթական ուսուցման ձևը:

Ընդարձակվում է նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցումը: Եթե 1965 թ. պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում սովորել են 8.176 հոգի, որից 1.296-ը աղջիկ, ապա 1971 թ. 17.857 հոգի՝ 4.143-ը աղջիկներ (տե՛ս նույն տեղը, էջ 140):

Ուսուցման վրա պետության կատարած ծախսերն իրենց արդարացնում և կարճ ժամանակամիջոցում փոխհատուցվում են: Ըստ ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինի՝ կրթության շնորհիվ ձեռք բերվող աշխատանքի արդյունավետությունը 27,6 անգամ գերազանցում է ուսուցման վրա պետության կատարված ծախսերը (տե՛ս Проблемы экономик и труда, М., 1957, стр. 163—598): Հայտնի է, որ միջնակարգ կրթություն ունեցող բանվորը հինգ անգամ ավելի ռացիոնալիզատորական առաջարկություններ է անում, քան նույնքան աշխատանքային ստաժ ունեցող իր գործընկերները, որոնք չունեն միջնակարգ կրթություն:

Բանվորների մասնագիտական գիտելիքների բարձրացման գործում մեծ դեր են խաղում արտադրական տեխնիկական խմբային և անհատական ուսուցման զանազան ձևերը, այդ թվում և երկրորդ մասնագիտության ձեռքբերումը: Այսպես, Լենինականի տեքստիլ կոմբինատում, երկրի առաջավոր ձեռնարկությունների օրինակով, լայնորեն տարածված է երկրորդ մասնագիտության տիրապետումը: 1972 թ. կոմբինատի 110 բանվորներ, այդ թվում՝ 76 բանվորուհիներ, տիրապետել են երկրորդ մասնագիտության: 230 բանվորուհիներ սովորել ու ավարտել են արտադրական-տեխնիկական, 18-ը՝ որակավորման բարձրացման կուրսեր, 65-ը՝ ընդգրկվել են անհատական ուսուցման մեջ:

Տարեցտարի ավելանում է հիմնարկություններում, ձեռնարկություններում



և կազմակերպություններում վերապատրաստվող ու նախապատրաստվող բանվորների թիվը, որոնց զգալի մասը կանայք են:

Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ընդգրկված բարձրագույն կրթություն ունեցողների 42 և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների 52 տոկոսը կանայք են: Սակայն անհրաժեշտ է նշել, որ նրանց տեսակարար կշիռը դեռևս փոքր է արտադրության մեջ զբաղված մասնագետների ընդհանուր թվում, հատկապես սովխոզներում ու կոլտնտեսություններում:

Ինչո՞ւ բարձրագույն ու միջնակարգ գյուղատնտեսական մասնագիտական կրթություն ստացած կանանց մի զգալի մասը խուսափում է արտադրության ոլորտում աշխատելուց: Կարծում ենք, որ հիմնական պատճառներից մեկը կենցաղային ու աշխատանքային պայմաններն են: Հավանաբար, բացի վարչական միջոցներից, պետք է նրանց շահագրգռել նաև նյութապես, ստեղծել սոցիալ-տնտեսական ու կենցաղային դյուրին պայմաններ՝ գյուղական վայրերում աշխատելու համար: Այդ դեպքում դժվար թե նրանք խուսափեն գյուղ գնալուց:

Հարկ է նշել, որ կանայք զբաղված լինելով տնային տնտեսությամբ և երեխաների խնամքով, միշտ չէ, որ հնարավորություն ունեն մասնակցելու հասարակական արտադրությանը, այն էլ լրիվ աշխատօրով, իսկ կեսօրը մեզ մոտ քիչ է կիրառվում:

Այդ առթիվ միանգամայն տեղին է նշված ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետվության մեջ՝ «Հարկավոր է մասնավորապես կշռադատել այնպիսի պայմաններ ստեղծելու հարցը, որպեսզի կենսաթոշակառուները, տնային տնտեսուհիները (ընդգծումը մերն է— Գ. Գ.), հաշմանդամները կարողանան կամ տանը անհատական կարգով, կամ էլ միավորվելով կոոպերատիվների մեջ, իրենց համար և հասարակության համար օգուտ բերելով, ուժերը ներածին չափ աշխատել սպասարկման ոլորտում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 71):

Չի կարելի ժխտել այն փաստը, որ կանանց համար պետք է ստեղծվեն այնպիսի պայմաններ, որպեսզի, մայրական ֆունկցիան կատարելու հետ միասին, նրանք ետ չմնան կյանքից, խորանան մասնագիտության մեջ, կատարելագործեն իրենց գիտելիքները և ակտիվ մասնակցեն հասարակական աշխատանքին: Մինչդեռ գաղտնիք չէ, որ կանանց որոշակի մասը, անգամ բարձրագույն կրթություն ստանալուց հետո, սպասարկման ոլորտի անբավարար աշխատանքի պատճառով (կենցաղսպասարկում, հասարակական սնունդ, մանկական հիմնարկություններ և այլն), ստիպված է չաշխատել կամ եթե աշխատում է, աստիճանաբար ետ է ընկնում կյանքի առաջընթացից: Դրա հետևանքով ակամայից անհամաչափություն է ստեղծվում կանանց և տղամարդկանց աշխատանքային որակավորման մեջ:

Ուրեմն, գիտատեխնիկական առաջընթացին զուգընթաց, կանանց հասարակական աշխատանքի ոլորտն ավելի լայն մասշտաբներով ընդգրկելու համար, անհրաժեշտ է ստեղծել տնային աշխատանքը թեթևացնող ավելի նպաստավոր պայմաններ:

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՍԵՐԳՈ ՕՐՋՈՆԻԿԻՁԵՆ ՍԻԲԻՐՅԱՆ ԱՔՍՈՐԱՎԱՅՐՈՒՄ

*«Նա հավատարիմ և գործունյա հեղափոխական է»,— ասել է Վ. Ի. Լենինը կոմունիստական կուսակցության ականավոր գործիչ Գ. Կ. Օրջոնիկիձեի մասին։ Միջազգային պրոլետարիատի առաջնորդի այդ փայլուն գնահատականին Օրջոնիկիձեն արժանացել է բազում տարիների հեղափոխական բարդ ու դժվարին գործունեությամբ։*

*Նպատակ չունենալով ծանոթացնել ընթերցողին ականավոր բոլշևիկի կենսագրության հանրահայտ փաստերին, կպատմենք Ս. Օրջոնիկիձեի կյանքի և հեղափոխական գործունեության սակ այն կողմերի մասին, որոնք առնչվում են Սիբիրում նրա գտնվելու հետ։*

*...Դա տեղի է ունեցել 1907 թվականին։ Ռուսաստանի տարբեր բանտերում պահվելուց հետո Սերգո Օրջոնիկիձեն մշտական աքսորաբնակության է ուղարկվում Ենիսեյսկի նահանգ։*

*Ցավոք, Կրասնոյարսկի պետական արխիվում չի պահպանվել նրա անձնական գործի առանձին ֆոնդը։ Միայն աքսորյալների գրանցման մատյանում Օրջոնիկիձեի ազգանվան դիմաց գրված է հետևյալը. «Քութաիսի նահանգի ազնվականներից է, ուղղափառ, մասնագիտությամբ՝ բուժակ... արտաքին տեսքից 22 տարեկան...*

*Աքսորվել է Թիֆլիսի դատաստանական ատյանի կողմից (նշվում են քրեական օրենսգրքի հոդվածները— խմբ.)...*

*Եկել է 1909 թ. ապրիլի 6-ին[1] և բնակեցվել Ենիսեյսկի գավառի, Պինչուգսկի գավառակի Պոտասկույ գյուղակում»[2]։*

*Գյուղակի անվանումը լրիվ համապատասխանում է իրականությանը։ Ասես թախիծ էր իջել նրա միապաղաղության վրա։ Հարյուրավոր կիլոմետր հեռու երկաթուղագծից, չորս դին անանցանելի տայգա, ընդամենը տեղաբնակների ութ ընտանիք և տասը աքսորյալ,— այսպիսին էր այն։ Ցարական իշխանությունները որոշել էին այստեղ Սերգոյին ընդմիշտ թաքցնել ընկերներից, հարազատներից և ժողովրդից։*

*Գյուղակի աքսորյալները սիրալիր ընդունեցին քսաներկուամյա հեղափոխականին։ Երբ աքսորյալներից մեկը նկատեց, որ այժմ Սերգոն ստիպված է լինելու «թախծել» իրենց հետ միասին, նա պատասխանեց. «Ոչինչ, շուտով այստեղ կթախծեն ու կվշտանան նրանք, ովքեր ուղարկել են մեզ։ Հավատացեք ինձ, ընկերներ»* (З. Орджоникидзе, «Путь большевика», М., 1956, стр. 74):

*Պոտասկույ գյուղակում տակավին կես ամիս չապրած՝ Սերգո Օրջոնիկիձեն հաջողեցրեց տեղափոխվել Անգարայի առափնյա Ռիբնոյե գյուղը, որտեղ ապրում էին ավելի քան երեսուն քաղաքական աքսորյալներ, և անմիջապես վերսկսեց կուսակցական գործունեությունը։ Սերգո Օրջոնիկիձեի ժամանելուց հետո Մերձանգարյան երկրամասի աքսորյալների շրջանում, հատկապես Պինչուգսկի և Կեժեմսկի գավառակներում, մթնոլորտը նկատելիորեն աշխուժանում է։ Այն ժամանակին է վերաբերում Ռիբնոյե գյուղի քաղաքական աքսորյալ Յա. Ա. Կորոստաշևսկու նամակը... «...Նորեկները բերեցին նոր, կենսուրախ տրամադրություն և ինձ վերագտնելու հնարավորություն ընձեռեցին... Ռուսաստանյան հեղափոխությունը տակավին չի ավարտվել։ Այն առաջնում է...»[3]։*

*Երբ Սերգո Օրջոնիկիձեն եկավ աքսորավայր, Մերձանգարյան երկրամասում մեծ թվով աքսորյալներ կային։ Միայն երկու՝ Պինչուգսկի և Կեժեմսկի գավառակներում կային ավելի քան*

1 Բոլոր ամսաթվերը տրվում են հին տոմարով։

2 ГАКК (Госархив Красноярского края), ф. 595, оп. 69.

3 Նույն տեղը, ֆ. 827, ց. 1, գ. 301, թ. 256։



*500 աքսորյալներ[1], որոնց կյանքը ծայրահեղ դժվարին էր։ «Աքսորյալների նշանակալի մասը ձմռանը հագնում է կալանավորի խալաթ և կոտ (հասարակ կոշիկ)։*

*Շատերը, շատ-շատերը չունեն ներքնաշոր. դրեթե ոչ մի տեղ գործ չկա»[2]։*

*Աքսորյալները վատ էին ապրում նաև այն պատճառով, որ միմյանցից զատված էին։ Հարկավոր էր մտածել մեկ միասնական միության մեջ նրանց միավորելու մասին։ Այդ ոչ հեշտ գործին ձեռնամուխ եղավ Սերգո Օրջոնիկիձեն։ Չնայած ոստիկանության արգելքին՝ նա մեկ ամսում ոտքի տակ տվեց Պինչուգսկի գրեթե ողջ գավառակը և պատմեց միության նպատակների ու խնդիրների մասին։ Սերգո Օրջոնիկիձեն շատ արագ հեղինակություն ձեռք բերեց ոչ միայն աքսորյալների, այլև տեղաբնակների շրջանում։*

*«Կրասնոյարսկի վեստնիկ» թերթը գրել է. «Իրենց չափազանց քաղաքավարի վարվեցողությամբ աքսորյալները նվաճել էին տեղի բնակչության համակրանքն ու վստահությունը» (№ 298, 1909, թ. դեկտեմբերի 1)։*

*1909 թ. մայիսի կեսերին Մերձանգարյան երկրամասում ձևավորվեց «Անգարայի քաղաքական աքսորյալների միությունը», որի նախաձեռնողն ու ստեղծողը Սերգո Օրջոնիկիձեն էր (տե՛ս* «Очерки истории Красноярской партийной организации», Красноярск, 1967, т. 1, стр. 136); *Ենիսեյսկի նահանգային ժանդարմական վարչության* (ЕГЖУ) *պետը ոստիկանության դեպարտամենտի դիրեկտորին հղած իր զեկուցում տալիս է այդ միության բնութագիրը։ Նա նշում է, որ «Մերձանգարյան երկրամասում բնակեցված քաղաքական աքսորյալներ Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ն. Վ. Կոմարի, Վասիլի և Նիկոլայ Ռուդնևների, Ս. Յա. Ժուկովսկու մոտ միտք է հղանում Անգարայի քաղաքական աքսորյալների միություն հիմնելու մասին, որը ներկայումս ստեղծված է և ստանում է արտասահմանյան պարբերական հրատարակություն, ինչպես նաև Ռուսաստանից ուղարկված ձախ ուղղության լրագրեր։ Միության գործունեությունը ներառնում է աքսորյալներին ցույց տրվող նյութական, իրավաբանական և բժշկական օգնությունը, լեգալ և անլեգալ գրականության բաժանորդագրությունը, գրադարանների հիմնումը, դասախոսությունների կազմակերպումը, ուժերի տեղաբաշխումն ըստ բաժինների։ Չնայած որ այդ միությունը համարվում է անկուսակցական, բայց փաստորեն նրանում գերակշռում է սոցիալ-դեմոկրատական տարրը, և այն փաստորեն սոցիալ-դեմոկրատական է։ Միության ստեղծողները որոշել են սոցիալ-դեմոկրատների համար հիմնել ագիտատորների, պրոպագանդիստների և կազմակերպիչների դպրոցներ, որպեսզի աքսորի ժամկետն անցնելուց հետո նրանք վերադառնան տեղերը որպես լավ նախապատրաստված կուսակցական աշխատողներ»[3]։*

*Սերգո Օրջոնիկիձեի, Ն. Ն. Նակորյակովի, Յա. Բ. Շումյացկու, Ի. Մ. Շերի և մյուս բոլշևիկների նյութական միավորումը չէր նշանակում, սակայն, գաղափարական միավորում մենշևիկների, էսեռների և մյուս մանրբուրժուական կուսակցությունների ներկայացուցիչների հետ։ Քաղաքսորյալների ժողովի ժամանակ Սերգո Օրջոնիկիձեն իրեն հատուկ անմիջականությամբ, եռանդով ու կրքոտությամբ հարձակվում է լիկվիդատորների, աստվածաշինարարների և մյուս ուղղությունների կողմնակիցների վրա՝ ապացուցելով ռեակցիայի տարիներին բոլշևիկ-լենինյանների գծի ճշմարտացիությունը։*

*Աքսորում Սերգո Օրջոնիկիձեն զբաղվում է գիտական աշխատանքով։ Հրատապ տարբեր թեմաներով նա գրում է ռեֆերատներ, հոդվածներ պատրաստում բոլշևիկյան հրատարակությունների համար, աշխատակցում տեղական թերթերին, իսկ ազատ ժամանակ կարդում քաղաքատնտեսության վերաբերյալ դասախոսություններ։ Սերգո Օրջոնիկիձեի առաջարկությամբ նրա մոտիկ ընկերներից մեկը՝ իշխան Կոնստանտին Է. Անդրոնիկովը, սկսեց ռեֆերատ գրել փիլիսոփայությունից՝ «Փիլիսոփայական տարակարծությունները սոցիալ-դեմոկրատների շարքերում» թեմայով։*

*1909 թ. հուլիսի սկզբներին Մերձանգարյան աքսորյալներն ստացան Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» նշանավոր գիրքը։ Այն ուղարկել էր Սերգոյի ընկեր Ալյոշա Ջափարիձեն։ Վ. Ի. Լենինի գրքի ստացումը քաղաքական խոշոր իրադարձություն էր Սերգո Օրջոնիկիձեի և նրա ընկերների համար։*

*Օրեցօր ընդլայնվում էր Ս. Օրջոնիկիձեի կապը Մերձանգարյան երկրամասի աքսորյալների հետ։ Նա վերահաստատում է կապերը բոլշևիկ Գ. Շկլովսկու և ուրիշների հետ ու առաջարկում ընդունվել «Միության» մեջ։*

*Ենիսեյսկի նահանգային ժանդարմական վարչության պետը գրում է. «Միությանը» հարել են Գ. Շկլովսկին, Մ. Սերաֆիմովիչը, Դ. Ուտկինը և ուրիշներ, որոնք կենտրոնական բյուրոյի համաձայնությամբ ստեղծել են հատուկ խումբ, որը և պարտավորվել է կազմակերպել քաղաքական աքսորյալների փախուստը՝ նրանց ապահովելով անձնագրերով, հանդիպատեղով ու դրամով։ Այդ խումբը կրում է «Աքսորյալների օգնու-*

1 Նույն տեղը, թ. 258։

2 Նույն տեղը, գ. 1953, թ. 56։

3 Տե՛ս նույն տեղը, ֆ. 827, ց. 1, գ. 128, թ. 1։

ղարկվում է Յակուտսկի աքսորավայրը, Լիխտենշտադտը իր օրագրում գրում է. «Այսօր գնաց Օրջոնիկիձեն: Դա մեծ կորուստ է ինձ համար: Ինչպիսի կենդանի, բացսիրտ խարակտեր է, որքան եռանդ ունի և զգայուն է բոլորի հանդեպ: Եվ գլխավորը— մարդն ամբողջ ժամանակ հարստացնում է իր գիտելիքները. միայն նրա հետ կարելի է լուրջ խոսակցություն ունենալ տեսական հարցերի շուրջ, զրուցել կարդացած գրքի մասին... Նա միակն էր, որից կարելի էր սովորել» («Партия шагает в революцию», М., 1964, стр. 337):

Մինչև Յակուտսկ ուղին դժվար էր ու երկար: Սերգո Օրջոնիկիձեն ստիպված յոթ ամիս ապրում է Ալեքսանդրովսկի առաքման բանտում (Իրկուտսկից 75 կմ հեռու)՝ սպասելով նշանակված վայրն ուղարկվելուն:

1916 թ. հունիսի 14-ին ժամանելով Յակուտսկ՝ Սերգո Օրջոնիկիձեն կապ է հաստատում այնտեղ գտնվող բոլշևիկներ Ե. Մ. Յարոսլավսկու, Գ. Ի. Պետրովսկու և ուրիշների հետ և իսկույն ներգրավվում կուսակցական աշխատանքի մեջ: Յակուտսկում Սերգո Օրջոնիկիձեն իմանում է Գ. Ի. Պետրովսկուց Յա. Մ. Սվերդլովի, Ի. Վ. Ջուղաշվիլու (Ստալինի) և մյուսների բնակության տեղը, Մերձանգարյան աքսորավայրից Պ. Ա. Ջափարիձեի փախուստի և ուրիշ նորությունների մասին: Գ. Ի. Պետրովսկին պատմում է նաև Ենիսեյսկ քաղաքում ծանր հիվանդ Ս. Ս. Սպանդարյանի հետ ունեցած վերջին հանդիպման մասին. «—Հանգիստ մնա, ընկեր Պետրովսկի,— ասաց նա (Սպանդարյանը):— Ցարական կառավարությունը կտապալվի, հեղափոխությունը քեզ կազատի» (Сердце, отданное людям, М., 1964, стр. 109):

Փետրվարյան հեղափոխությունն ազատեց աքսորից բոլոր «պետական հանցագործներին»: Մեկնելով Յակուտսկից՝ 1917 թ. մայիսի 23-ին, Սերգո Օրջոնիկիձեն, Գ. Ի. Պետրովսկին, Ե. Մ. Յարոսլավսկին հրաժեշտի գրանցում են անում «Հիշողություն Յակուտսկի աքսորի մասին» ալբոմում. «Մնաս բարով, երկիր տարագրության, երկիր հայրենի: Կեցցե՛ Ռուսաստանյան մեծ հեղափոխությունը: Կեցցե՛ սոցիալական հեղափոխությունը»: Ներկայումս ալբոմը պահպանվում է Յակուտսկի Եմ. Յարոսլավսկու անվան մարզային թանգարանում:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակով, որին Սերգո Օրջոնիկիձեն ցույց տվեց ամենաակտիվ մասնակցությունը, սկսվում է համոզված լենինյանի կյանքի նոր շրջանը:

Վ. Ս. ԷՄԵՔՍՈՒԶՅԱՆ


РЕЗЮМЕ

О жизни и революционной деятельности Серго Константиновича Орджоникидзе — одном из бесстрашных бойцов ленинской гвардии — написано множество статей и брошюр. Настоящая статья посвящена лишь его отважной деятельности во время пребывания в сибирской ссылке, о котором известно очень мало.

В статье говорится о том, что в ссылке Серго Орджоникидзе продолжал революционную деятельность, он поддерживал связь с ссыльными большевиками, готовил статьи для большевистских изданий, сотрудничал в местных газетах, а в свободное время читал лекции по политической экономии. После побега из ссылки и пребывания в Иране, Париже, России Серго Орджоникидзе вновь был арестован и приговорен к 3-ем годам каторги с последующей ссылкой в Сибирь на вечно.

Февральская революция освободила и Серго Орджоникидзе из ссылки.





Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ

Տնտեսական գիտությունների դոկտոր


# ՃԻՇՏ ԿԱՐԳԱՎՈՐԵԼ ՀԱՆՐԱՅԻՆ ՀՈՂՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ներկա էտապը բնորոշվում է նրա ինտենսիվացման արագ թափով: Այն պահանջում է ժողովրդատնտեսական զգալի նյութական և աշխատանքային միջոցների ներդրումներ՝ գյուղատնտեսական շրջանառության մեջ գտնվող հողատարածությունների առավել արդյունավետ օգտագործման նպատակով:

Հայաստանի գյուղատնտեսության կարևորագույն առանձնահատկությունը հողային ֆոնդի սահմանափակությունն է և այդ ճյուղի համեմատաբար բարձր աշխատատարությունը: Այսօր մեր գյուղատնտեսության մեջ (կոլտնտեսություններում, պետական և անձնական օժանդակ տնտեսություններում) զբաղված են շուրջ 280 հազար աշխատողներ: Համեմատության համար նշենք, որ հանրապետության արդյունաբերության ոլորտում այժմ զբաղված են 273 հազար բանվոր-ծառայողներ (արդյունաբերական-արտադրական անձնակազմը): Այսպիսով, ինչպես տեսնում ենք, գյուղատնտեսությունը մեզ մոտ դեռևս հասարակական աշխատանքի կիրառման ամենախոշոր ասպարեզներից մեկն է: Այս ճյուղում, ինչպես հայտնի է պաշտոնական վիճակագրական տվյալներից, իրացվում է հանրապետության ազգային եկամտի շուրջ 13 տոկոսը (արդյունաբերության մեջ 63 տոկոսը):

Գյուղատնտեսական օգտագործման հողային ֆոնդի սահմանափակության, ինչպես նաև համեմատաբար բարենպաստ բնական պայմանների առկայության պայմաններում գյուղատնտեսության զարգացումը մինչև այսօր ընթացել և այսուհետև էլ պետք է ընթանա դրա ինտենսիվացման գործոնների, ամենից առաջ՝ ոռոգման և հողօգտագործման կառուցվածքի փոփոխության հաշվին:

## 1. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐ ԵՎ ԽՆԴԻՐՆԵՐ

Հայկական ՍՍՀ ոռոգելի հողատարածությունները ներկայումս 260 հազար հեկտարից ավելի են (1920 թ. 61 հազարի դիմաց): Դա նշանակում է, որ այսօր մեր հանրապետության գյուղատնտեսական հանդակների յուրաքանչյուր 100 հեկտարից 24-ը ոռոգվում է, իսկ միայն մշակելի տարածություն-

ներից (վարելահողեր և այգիներ)՝ 50 հեկտարը։ Ոռոգման աշխատանքները
լայն թափով են ընթանալու նաև ապագայում։ Բավական է ասել, որ առաջիկա
10 տարում Հայաստանի ջրային ռեսուրսների լրիվ օգտագործման շնորհիվ
հնարավոր կլինի ոռոգել ամբողջ վարելահողերը։

Վերոհիշյալի հետ է կապված նաև գյուղատնտեսության ճյուղային կա-
ռուցվածքի փոփոխությունը։ Այստեղ գլխավորն այն է, որ անցած երեք տասն-
ամյակներում հացահատիկային կուլտուրաների տեսակարար կշիռն ընդհա-
նուր ցանքատարածությունների մեջ 78 տոկոսից իջել է 45-ի, դրա հաշվին
զգալիորեն ավելացել է տեխնիկական, բանջարանոցային կուլտուրաների և
բազմամյա տնկարկների տեսակարար կշիռը։ Բավական է ասել, որ նշված
ճյուղերը, զբաղեցնելով հանրապետության մշակելի հողատարածությունների
շուրջ 20 տոկոսը, տալիս են հանրային գյուղատնտեսության բուսաբուծության
արտադրանքի 85 տոկոսը։ Սա նշանակում է, որ այսօր մեր գյուղատնտեսու-
թյունն ունի ավելի առաջադիմական ճյուղային կառուցվածք, քան նախկինում,
որը և նպաստում է դրա հետագա ինտենսիվացմանը։

Վերջին երեք տասնամյակների ընթացքում (1940—1970 թթ.) ՍՍՀՄ գյու-
ղատնտեսության հողատարածություններն ավելացել են 45 տոկոսով, իսկ հա-
մախառն արտադրանքի ծավալը՝ մոտ 2,2 անգամ։ Հայաստանի գյուղատըն-
տեսության համախառն արտադրանքի ծավալն այդ նույն ժամանակամիջոցում
(հողատարածությունների զգալի կրճատման պայմաններում) ավելացել է
ավելի քան 3, իսկ գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ընդհա-
նուր գումարը՝ 7 անգամ։

Վիճակագրական տվյալների համաձայն, վերջին տարիներին Հայաստանի
գյուղատնտեսության մշակելի հողատեսքերի յուրաքանչյուր հեկտարին ընկ-
նում է 720 ռուբլի հիմնական ֆոնդ, 2,6 ձիաուժ էներգետիկ կարողություն և
675 ռուբլի համախառն գյուղատնտեսական արտադրանք։ Պետք է ասել, որ
դա 1,5—2 անգամով գերազանցում է Միության գյուղատնտեսության համա-
պատասխան ցուցանիշների մակարդակը։

Միաժամանակ, ինչպես արդեն նշեցինք, մեր գյուղատնտեսությունն աչքի
է ընկնում իր համեմատաբար բարձր աշխատատարությամբ։ Այսպես, եթե
ՍՍՀՄ-ում 100 հեկտար մշակելի հողատարածության սպասարկման վրա
զբաղված է 12, ապա Հայաստանում 37 աշխատող։ Այլ կերպ ասած, դա վկա-
յում է մեր գյուղատնտեսության մեջ աշխատանքի համեմատաբար ցածր ար-
տադրողականության մասին։ Դարձյալ մի քանի թվերով ցույց տանք այս
դրույթը։ Եթե ՍՍՀՄ գյուղատնտեսության մեջ ներկայումս զբաղված մեկ աշ-
խատողին ընկնում է 3.000 ռուբլի գյուղատնտեսական արտադրանք, ապա
Հայաստանում՝ 1.590 ռուբլու կամ 47 տոկոսով ավելի քիչ։ Բնակչության
մեկ շնչի հաշվով մեզ մոտ ներկայումս 2 անգամ ավելի քիչ գյուղատնտեսա-
կան արտադրանք է արտադրվում, քան Միության մեջ (համապատասխանա-
բար 175 և 356 ռուբլի)։

Ընդսմին պետք է նկատել, որ վերջին տասնամյակներում այս ցուցանիշ-
ները վատացել են։ Ինչպես նշվեց ՀԿԿ XXV համագումարում, 1959—1970 թթ.
Հայաստանի բնակչությունն աճել է 41,3 կամ միջին տարեկան 3,2 տոկոսով,
մինչդեռ գյուղատնտեսության համախառն արտադրանքինը՝ ընդամենը 2 տո-
կոսով, որի հետևանքով բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական
արտադրանքն այդ ժամանակաշրջանում պակասեց։



Մեր հանրապետության գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու
նպատակով կարևոր քայլ է ընթացիկ հնգամյակի առաջադրանքների կատա-
րումը, ըստ որում, նախատեսված է 32 տոկոսով ավելացնել գյուղատնտեսու-
թյան համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը։ Կապիտալ ներ-
դրումների գումարը գյուղատնտեսության մեջ հնգամյակում կկազմի 844 մլն
ռուբլի կամ, անցած հնգամյակի համեմատությամբ, կավելանա 1,8, իսկ հիմ-
նական ֆոնդերը՝ 2 անգամ։ Սակայն հարկ է ընդգծել, որ գյուղատնտեսության
զարգացման ամենակարևոր և ամենաթույլ օղակը հիմնական արտադրամի-
ջոցի՝ հողի, արդյունավետ օգտագործումն է, որից կախված է նաև մյուս
արտադրամիջոցների օգտագործման արդյունավետությունը։ Հողն ունի այն
բնորոշ առանձնահատկությունը, ինչպես Մարքսն է ասել, որ ոչ միայն չի
մաշվում, այլև ճիշտ վարվելու դեպքում շարունակ բարելավվում է։ Այս առ-
թիվ արժե անդրադառնալ հատկապես այն հարցին, թե արդյոք որքանո՞վ
բանիմաց ենք վարվում մեր հողային պաշարների հետ և ի՞նչ հետևանքների է
բերում դրանց նկատմամբ անիմաց վերաբերմունքը։

## 2. ՀՈՂԱՅԻՆ ՖՈՆԴԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

1940—1970 թթ. Հայաստանի գյուղատնտեսության շրջանառության մեջ
գտնվող հողային ֆոնդը (բոլոր հողատեսքերով) կրճատվել է 705 հազար հեկ-
տարով կամ շուրջ մեկ երրորդով, այդ թվում 124 հազար հեկտար վարելահող։
Այդ տարածությունները դուրս են գրվել գյուղատնտեսական ձեռնարկություն-
ների բալանսներից զանազան պատճառներով՝ իբրև, այսպես կոչված, «ան-
պետք հողեր»։ Միայն վերջին 10 տարիների ընթացքում (1960—1970 թթ.)
վարելահողերի տարածությունը կրճատվել է մոտ 60 հազար հեկտարով։ Սա
ավելի է վատացրել մեր սակավահողությունը։ Այսպես, եթե 1940 թ. հանրա-
պետության բնակչության 1 շնչին ընկնում էր 1,51 հեկտար ընդհանուր հողա-
տարածություն, ապա 1970 թ. արդեն 0,53 հեկտար։ Գյուղատնտեսության մեջ
զբաղված մեկ աշխատողին ընկնող ընդհանուր հողատարածությունն այժմ 6,7
հեկտար է, իսկ դուրս գրված հողերը կազմում են 3,5 հեկտար։ Ինչպես տես-
նում ենք, խոսքն իրականում հսկայական հողատարածությունների մասին է,
որոնց արդյունավետ օգտագործումը մեր գյուղատնտեսության զարգացման
կարևորագույն ներքին ռեզերվներից մեկը պետք է կազմի։ Սա հույժ կարևոր
ժողովրդատնտեսական պրոբլեմ է, չնայած առ այսօր այն պատշաճ ուշադրու-
թյան չի արժանացել ո՛չ վերադաս վարչական մարմինների և ոչ էլ, ցավոք,
նույնիսկ մամուլի կողմից։

Ի՞նչ պետք է անել մեր հողատարածությունների կրճատման այսօրվա վի-
ճակից դուրս գալու, հողն արդյունավետ օգտագործելու համար։

Անդրադառնալով մեծ քանակությամբ հողերի դուրս գրման պատճառնե-
րին, իհարկե, չի կարելի մոռանալ, որ Հայաստանի այսօրվա տարածքի ճըն-
շող մասի բնական պայմանները խիստ անբարենպաստ են գյուղատնտեսու-
թյան համար. լեռնային կտրտված ռելիեֆը, հողերի մանրատվածությունը,
մեծ թեքությունը, քարքարոտությունը և այլն խիստ դժվարացնում են ժամա-
նակակից գյուղատնտեսական մեքենաների գործադրումը։ Բավական է նշել,
որ, ինչպես պարզել են հատուկ մասնագիտական հետազոտությունները, հան-
րապետության օգտագործվող հողատեսքերի 32 տոկոսը քարքարոտ են, իսկ
վարելահողերի և արոտավայրերի մոտ 80 տոկոսն այս կամ այն չափով են-

թեքն են հողատարման (էրոզիայի) կամ դրա վտանգին։ Դա նշանակում է, որ մեր հանրապետության հողատարածությունների յուրաքանչյուր 3 հեկտարից 2-ին հողատարման և գյուղատնտեսության համար անպետքանալու մշտական վտանգն է սպառնում։

Ինչ խոսք, որ բնությունը շռայլ չէ Հայաստանի նկատմամբ։ Բայց ամեն ինչ չի կարելի բարդել բնության վրա և մոռանալ տնտեսական լծակները, որոնցով կարելի է և պետք է պայքարել բնության տարերքի դեմ։ Եվ, իրոք, որքան էլ դաժան են Հայաստանի բնական պայմանները, ոչ ոք չի կարող պնդել, թե վերը նշված 705 հազար հեկտար հողերի դուրսգրումն իբր կարելի է վերագրել բնական պայմաններին։

Կոլտնտեսություններն ու սովխոզները շատ հաճախ դուրս են գրում ո՛չ միայն վատ, հողատարման ենթակա կամ քարքարոտ, այլև միջին որակի, գյուղատնտեսության համար միանգամայն պիտանի հողերը, հրաժարվում դրանց օգտագործումից։ Ավելին կարելի է ասել։ Այսպես կոչված, դուրս գրված «անպետք» հողերի մի զգալի մասն իրականում պիտանի է գյուղատնտեսության համար և նույնիսկ այս կամ այն չափով օգտագործվում է գյուղատնտեսական ձեռնարկությունների կողմից, սակայն էքստենսիվ եղանակով. այդ հողերից վերցվում է այն, ինչ հնարավոր է և ոչ մի ներդրում չի կատարվում դրանց բարելավման նպատակով։ Ո՞րն է այդ երևույթի տնտեսական շարժառիթը։ Պատասխանը պարզ է. տնտեսությունները հրաժարվում են (պաշտոնապես) հողերի մի մասից, հատկապես վատորակ հողերից, որպեսզի չկրեն դրանց օգտագործման հետ կապված որոշակի պարտավորությունները պետության հանդեպ (գյուղատնտեսական մթերքների մթերումների առաջադրանք և այլն), քանի որ մթերումների և մթերման գների գործող համակարգի պայմաններում դա նրանց համար ձեռնտու չէ, բավարար եկամուտներ (հաճախ և ոչ մի եկամուտ) չի ապահովում։ Այդպիսին են մեր հանրապետության լեռնային շրջանների շատ տնտեսությունները։ Հասկանալի է, որ նման վատագույն հողերի վրա աշխատող գյուղատնտեսական ձեռնարկությունները, հատկապես կոլտնտեսությունները չունեն անհրաժեշտ միջոցներ հանրային տնտեսության զարգացման, էլ չենք ասում դուրս գրված հողերի բարելավման նպատակով ներդրումներ կատարելու համար, չնայած որ ժողովրդատնտեսական առումով այդպիսի ներդրումները միանգամայն անհրաժեշտ և արդյունավետ կարող են լինել։ Այդ երևույթին վերջ տալու համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է հիմնականում կարգավորել մթերումների առաջադրանքի պլանավորման, մթերման գների, ինչպես նաև եկամտահարկի ու սովխոզների շահույթներից մասհանումների հետ կապված հարցերը։

Կարելի է հիշեցնել, թե ինչպիսի դրական ազդեցություն ունեցան, օրինակ, գյուղատնտեսական մի շարք մթերքների մթերումների կայուն չափերի, եկամտահարկի նոր կարգի սահմանումը և ուրիշ միջոցառումների կիրառումը վատթարագույն պայմաններում աշխատող կոլտնտեսությունների գործունեության տնտեսական ցուցանիշների բարելավման վրա։ Առանձնապես դրական պետք է համարել այն, որ պետությունը սահմանել է կոլտնտեսություններից գանձվող եկամտահարկի հաշվարկման նոր կարգ, մասնավորապես կոլտնտեսությունների զուտ եկամտի չհարկվող նվազագույն չափը, որի համաձայն Հայաստանի 330 կոլտնտեսություններ այժմ պետությանը եկամտահարկ չեն վճարում (1971 թ. տվյալներով), քանի որ նրանց շահութաբերու-



թյունը 15 տոկոսից չի անցնում։ Սակայն, չհարկվող եկամտի սահմանումն
ինքնին չեն ապահովում վատթարագույն պայմաններում աշխատող տնտեսու-
թյունների նորմալ շահութաբերությունը, հանրային տնտեսության հետզհետե
ընդլայնման հնարավորությունները։ Հայտնի է, որ բոլոր տնտեսություններին
պետությունը գյուղատնտեսական մթերքների վաճառքի-մթերումների առաջա-
դրանք է տալիս կայուն միջինացված գների հիման վրա, մինչդեռ նրանցից
շատերն աշխատում են բնատնտեսական վատ պայմաններում, արտադրում են
բարձր ինքնարժեքով, և արտադրանքի իրացումն այս պայմաններում բավա-
րար շահույթներ չի կարող ապահովել։

Գյուղատնտեսական յուրաքանչյուր ձեռնարկության՝ հասարակության
հանդեպ ունեցած պարտավորությունների ծավալի (չափի) օբյեկտիվ չափա-
նիշը նրա օգտագործած հիմնական արտադրամիջոցի՝ հողի, քանակն ու որակն
է։ Մեր հանրապետությունում, ցավոք, դեռևս ուշանում է հողի տնտեսական
գնահատումը, որն այս հարցի լուծման լավագույն հիմքը կարող է հանդիսա-
նալ։ Սակայն դա չի նշանակում, որ մինչ այդ որևէ հարց չի կարելի լուծել։
Անհրաժեշտ է ունել որոշակի տնտեսական հաշվարկումներից (որոնք հետա-
գայում կճշգրտվեն հողի տնտեսական գնահատման տվյալներով), ավելի
ճիշտ որոշել յուրաքանչյուր լեռնային շրջանի և տնտեսության տեղն ու դերը
հանրապետության գյուղատնտեսական աշխատանքի հասարակական բաժան-
ման ասպարեզում, դրա ապրանքային մասնագիտացումը և դրան համապա-
տասխան տնտեսական պարտավորությունների կայուն և արդարացի չափը
օգտագործող հողատարածությունների մեկ հեկտարի հաշվով, նպատակ ունե-
նալով լուծել այն հարցը, թե պարտավորությունների ինչպիսի՞ համակարգի
դեպքում տվյալ շրջանի տնտեսությունները տնտեսապես շահագրգռված կլի-
նեն՝ լավագույն կերպով օգտագործելու յուրաքանչյուր հեկտար հող և շրջա-
նառության մեջ դնելու գյուղատնտեսության համար պիտանի բոլոր հողատե-
սքերը։ Նման մոտեցմամբ բացառված չէ, որ մի շարք դեպքերում թերևս հարկ
կլինի վատթարագույն հողերի վրա աշխատող ձեռնարկություններին ազատել
կենտրոնացված պարտավորություններից կամ դրանց մի զգալի մասից։

Միաժամանակ անհրաժեշտ է մշակել դուրս գրված գյուղատնտեսական
հանդակների արմատական բարելավման միջոցառումների լայն ծրագիր, որը
պետք է իրագործվի պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշ-
վին։ Այժմ պետությունը միջոցներ չի խնայում գյուղատնտեսության զարգաց-
ման համար։ Բայց առանձին տնտեսություններ միայն սեփական միջոցների
հաշվին ի վիճակի չեն կենսագործելու նման միասնական ծրագիր։ Հողերի
հիմնական բարելավումը, ինչպես ներդրումների, այնպես էլ կազմակերպա-
կան առումով, համաժողովրդական խնդիր է և պետք է լուծվի համաժողովր-
դական կենտրոնացված կարգով ու միջոցներով։

Վերջապես, լեռնային շրջաններում կարելի է որոշ արտոնություններ տալ
նաև կոլտնտեսականների և բանվոր-ծառայողների օժանդակ անձնական տըն-
տեսության չափերը սահմանելիս։ Հայտնի է, որ գյուղատնտեսական արտելի
օրինակելի կանոնադրությամբ հանձնարարվում է անձնական տնտեսությանը
հատկացվող հողամասի չափերը սահմանել 0,15—0,25, իսկ անջրդի շրջան-
ներում՝ մինչև 0,5 հեկտար։ Նկատի առնելով հողի պահպանման շահերը հատ-
կապես լեռնային շրջաններում, մեր կարծիքով, նպատակահարմար է թույլա-
տրել անձնական օժանդակ տնտեսության առավելագույն չափը։ Դա ոչ միայն

կնպաստի այս սեկտորում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, որի անհրաժեշտության մասին խոսվեց ՍՄԿԿ XXIV համագումարում[1], այլև գյուղում աշխատավոր ձեռքի կայունացմանը։

Անհրաժեշտ է շեշտել, որ այս կարգի միջոցառումների վերջնական նպատակն այն է, որպեսզի գյուղատնտեսական շրջանառության մեջ դրվեն տարիների ընթացքում դուրս գրված հսկայական հողատարածությունները, դարձնելով դրանք լիարժեք հանդակներ։ Այսպես, եթե դուրս գրված 705 հազար հեկտարից կարողանանք բարելավել և լիարժեք օգտագործել 500 հազարը (մնացածը հողատարման և այլ պատճառներով թերևս իրոք պիտանի չեն գյուղատնտեսության համար), ապա դա, հանրապետության մեկ շնչի հաշվով, կկազմի 0,2 հեկտար (2000 քմ, որից 500 քմ վարելահող)։ Դա, իր հերթին, շրջանառության մեջ եղած հողերի մոտ 30 տոկոսն է։ Ամենահամեստ հաշվումները ցույց են տալիս, որ եթե այդ «չօգտագործված ֆոնդի» հողերը որոշակի միջոցառումների շնորհիվ վերածվեն միջին բերրիություն ունեցող հողերի, ապա միայն դրա հաշվին կարելի է առնվազն 20—25 տոկոսով ավելացնել մեր հանրապետության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքը։ Դա պահանջում է, իհարկե, հասարակական որոշակի ներդրումներ և, ամենակարևորը, ճիշտ, ավելի ակտիվ օգտագործել գյուղատնտեսության մեջ տնտեսական լծակների համակարգը։ Կարծում ենք և՛ առաջինի, և՛ երկրորդի անհրաժեշտությունը միանգամայն ակնհայտ է։

### 3. ՀՈՂՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ՈՉ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՆՊԱՏԱԿՆԵՐՈՎ

Որ Հայաստանի պայմաններում յուրաքանչյուր հեկտար հող և խորանարդ մետր ջուր ոսկու գին ունեն ու պետք է գտնվեն խիստ հսկողության տակ, դա այժմ ընդունում է ամեն ոք։ Սակայն իրականում ինչպե՞ս ենք գնահատում մեր սահմանափակ բնական ռեսուրսները։ Հանրային հողերի պահպանման և գույքագրման ասպարեզում դեռևս կան լուրջ թերություններ, հողային օրենսդրության խախտումներ։ Արդյունաբերական ձեռնարկությունների և այլ օբյեկտների շինարարության համար դեռևս շարունակում են հատկացնել բարձր արդյունավետ գյուղատնտեսական հողատեսքեր։ Այսպես, միայն 1970—1972 թթ. ոչ գյուղատնտեսական կարիքների համար կոլտնտեսությունների և սովխոզների հողերից հատկացվել է (դուրս է գրվել) 3700 հեկտար, որից շուրջ 2000 հեկտարը վարելահող։ Սակայն շատ ավելի մեծ են սպասվելիք, այսպես ասած, պլանավորված կորուստները։ Հայտնի է, որ Երևանի հեռանկարային զարգացման պլանով նախատեսվում է առաջիկայում շինարարությանը հատկացնել ավելի քան 1300 հեկտար խաղողի և պտղատու այգիներ։ Արարատյան դաշտում են կառուցվելու մի շարք մանր ու խոշոր ձեռնարկություններ, որոնց թափոնները վնասակար են շրջապատի համար։

Այսպիսով, Հայաստանի ամենագլխավոր գյուղատնտեսական գոտին, մի կողմից՝ կրճատվում է էքստենսիվ ճանապարհով, հողատարածությունների անհիմն դուրսգրումների հաշվին, մյուս կողմից՝ մնացած տարածքը արագ վերածվում է հսկայական միջգործարանային բակի՝ ինտենսիվ կերպով ապականվում են օդը, ջուրը և հողը։

---

1 Ներկայումս մեկ կոլտնտեսային ծխին ընկնող տնամերձ (օժանդակ) հողամասի չափը Հայաստանում կազմում է 0,14 հեկտար, որը 2 անգամ ավելի քիչ է ՍՍՀՄ միջինից, 3 անգամ՝ Ուկրաինայի և 4 անգամ՝ Մերձբալթիկայի հանրապետությունների համապատասխան ցուցանիշից (տե՛ս «Հայաստանի ժողովրդական տնտեսություն», 1971, № 5, էջ 78)։



Նշենք, ի դեպ, որ հնգամյա պլանի առաջադրանքով հանրապետության քիմիական արդյունաբերությունն իր արտադրանքի միջին ծավալը պետք է ավելացնի շուրջ 45 տոկոսով։ Քիմիական արտադրությունների տեխնոլոգիայի և մաքրման տնտեսության ներկա վիճակը ցույց է տալիս, որ այս տարիներին շրջապատի բնության ապականման աստիճանը համապատասխանորեն կբարձրանա։

Այսպիսով, ստեղծվում է տարօրինակ իրավիճակ։ Հանրապետությունն ամեն տարի հսկայական միջոցներ է ծախսում նոր հողերի յուրացման վրա (որտեղ հնարավոր է), հետապոտում ստորերկրյա ջրային պաշարները, ընդլայնում ոռոգման ցանցը, գրոհում Արարատյան դաշտավայրի աղուտների վրա, նորագույն տեխնիկայի օգնությամբ դարավանդային եղանակով այգիներ հիմնելու համար պաշարում և վերցնում մինչև այդ անմատչելի լեռնալանջերը և այլն։ Սակայն, միաժամանակ, գյուղատնտեսական շրջանառությունից դուրս են գրում և շինարարության համար օգտագործում արդեն յուրացրած և բազմաթիվ սերունդների աշխատանքով բարձր արգավանդության հասցրած թանկարժեք հանդակները (Երևանում, Կիրովականում, Հրազդանում և այլուր), չնայած այս բոլոր դեպքերում քաղաքաշինության կամ արդյունաբերական շինարարության համար գրեթե միշտ առկա են գյուղատնտեսության համար ոչ պիտանի տարածություններ։

Այս տեսակետից միանգամայն ժամանակին էր ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը, որտեղ մի շարք միջոցառումներ են նախատեսվում բնության պահպանության և բնական ռեսուրսների օգտագործման բարելավման համար։ Սակայն, մեր կարծիքով, այս, ինչպես նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի այս հարցի շուրջ ընդունված մի շարք այլ որոշումների հաջող կենսագործման համար անհրաժեշտ է ուժեղացնել տնտեսական–տնտհաշվարկային լծակների օգտագործումը բնության պաշտպանության և բնական ռեսուրսների խելացի օգտագործման նպատակով։ Մասնավորապես խոսքը վերաբերում է բնական ռեսուրսների՝ հողի և ջրի, տնտեսական գնահատման ու տնտեսական շինարարության ընթացքում դրա հաշվառմանը, որն այժմ բացակայում է։ Ինչ խոսք, մենք հպարտանում ենք մեր քաղաքների ճարտարապետությամբ և շինարարության լայն թափով։ Սակայն դրա հետ միասին պետք է խոստովանել, որ քաղաքաշինությունն այսօր զուրկ է լուրջ տնտեսական հիմնավորումից, քանի որ խարսխված չէ շինարարության զանազան տարբերակների մշակման և տնտեսական գնահատման սկզբունքի վրա (որտեղ պետք է հաշվի առնել նաև հողի տնտեսական գնահատականը)՝ այդ տարբերակներից առավել խելացին և էժանագինն ընտրելու և իրագործելու նպատակով։ Անկասկած, եթե մեր շինարարները կամ ճարտարապետներն իրենց գինանոցում ունենային (ո՛չ թե նրանց ցանկությամբ, այլ օրենքով սահմանված պարտադիր կարգով) մեկ հեկտար խաղողի այգու կամ, ասենք, վարելահողի տնտեսական գնահատականը (գինը), այն ժամանակ նրանք հազիվ թե այդքան անհոգ և «թեթև» լուծեին հիշյալ հանդակների կառուցապատման հարցը, ինչպես անում են այժմ։ Դա բացասաբար կանդրադառնար նրանց գերատեսչական, տնտհաշվարկային շահերի վրա։ Այս դրույթը պարզաբանելու համար բերենք հետևյալ օրինակը։

Որոշ հաշվումների համաձայն, Երևանում բնակարանային շինարարության կապիտալ ներդրումները, մեկ հեկտար հողատարածության հաշվով կազմում են մոտ 143 հազար ռուբլի։ Սակայն այդ գումարում հաշվի չի

առնված հողի տնտեսական գնահատականը։ Ուստի, եթե հաշվի առնենք նաև այս վերջին հանգամանքը, ապա պատկերն էապես կփոխվի. լավագույն հողերի, օրինակ, խաղողի այգիների, տեղը կառուցապատելու դեպքում շինարարության արժեքը կբարձրանա մինչև 220—225 հազար, վարելահողերի վրա զբաղեցրած բանջարանոցային կուլտուրաներինը՝ 170—175 հազար ռուբլու[1] և այլն։ Միայն գյուղատնտեսության համար բոլորովին ոչ պիտանի հողերի վրա կատարվող շինարարությունն ամենաէժանը կլինի, քանի որ այստեղ հողի գինը չնչին կլինի։ Այս դեպքում շինարարները հավանաբար չեն ցանկանա շինարարությունը կատարել թանկարժեք հողերի վրա և կրել դրանց դուրս գրման հետ կապված լրացուցիչ ծախսերը, քանի որ դա կթանկացնի շինարարությունը և նախագծողներին ու շինարարներին կզրկի միջոցների խնայումից ու դրանից սպասվելիք պարգևատրումներից։

Բացառված չէ, իհարկե, որ վատագույն հողերի կառուցապատման դեպքում շինարարները և նախագծողները պետք է որոշակի լրացուցիչ ծախսեր նախատեսեն գյուղատնտեսության համար ոչ պիտանի տարածություններում կոմունիկացիաների անցկացման, ռելիեֆի հետ կապված դժվարությունների հաղթահարման նպատակով և այլն։

Սակայն ում պարզ չէ, որ ժողովրդատնտեսական առումով նման ծախսերը շատ ավելի ձեռնտու են, քան, ասենք, խաղողի կամ պտղատու այգիների օգտագործումը շինարարության նպատակներով։

Իսկ ինչպե՞ս պայքարել շրջապատի (բնական միջավայրի) աղտոտման դեմ։ Արդյոք հնարավոր չէ՞ այստեղ էլ դիմել նույն տնտեսական լծակին՝ բնական ռեսուրսների, օրինակ, ջրի տնտեսական գնահատմանը։ Հնարավոր է և խիստ անհրաժեշտ։

Երևանի սինթետիկ կաուչուկի գործարանը Հրազդան գետն է թափում տարեկան 20—21 մլն խմ աղտոտված ջուր, որը, քաղաքի մյուս կեղտաջրերի հետ միասին, հասնում է 30—31 մլն խմ-ի։ Քիչ ներքև գործում է Մխչյանի ջրհան կայանը, որտեղից Արտաշատի և Արարատի շրջանների դաշտերն է մղվում տարեկան 175—180 մլն խմ ոռոգելի ջուր, որը և նույն չափով թեթևացնում է Սևանի «հոգսը»։ Հիշեցնենք, որ Մխչյանի ջրհան կայանը շինարարների մեծ ջանքերի շնորհիվ նախատեսվածից երկու տարի շուտ գործարկվեց։ Բայց այս հաղթանակը, ինչպես շուտով պարզվեց, շատ թանկ նստեց գյուղատնտեսական արտադրանքի որակի վրա։

Ներկայումս Երևանի շուկաներում գնորդները խույս են տալիս այդ շրջաններից բերվող բանջարեղենից և կանաչուց. դրանց գետերի ձուկն արդեն պի-

[1] Հողի տնտեսական գնահատման ընթացքում մենք, ինչպես և մի շարք սովետական տնտեսագետներ, ելնում ենք երկու հանգամանքներից՝ առաջին, հողի գյուղատնտեսական յուրացման ծախսերի, և երկրորդ, դրանից ստացվող զուտ եկամտի, այդ թվում և հավելուրդային եկամտի (ռենտայի) հաշվառումից։ Սակայն մեր պայմաններում (տվյալ դեպքում խոսքը Արարատյան դաշտի մասին է), անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն դիֆերենցիալ, այլև մի շարք դեպքերում նաև մոնոպոլ բնույթի ռենտայի գոյացման փաստը։ Բոլորին հայտնի է, որ խաղողի կամ դեղձի առանձին տեսակների աճեցումը հնարավոր է ոչ բոլոր հողերի վրա, նույնիսկ Հայաստանի պայմանների սահմանափակումով։ Այստեղից անխուսափելիորեն բխում է մոնոպոլ ռենտայի գոյացումը, որն իրացվում է գլխավորապես պետության կողմից, գինեգործական, ինչպես նաև, որոշ դեպքերում, անձնական օժանդակ տնտեսությունների արտադրանքի շուկայական վաճառքից։ Չխորանալով այս հարցի էության մեջ, նկատենք, սակայն, որ նման թանկարժեք հողերը հատկացնելով շինարարությանը, մեր հասարակությունն ըստ էության անհատուցելի, բացարձակ կորուստ է կրում։



տանի չի սննդի համար, իսկ հոգնած աշխատողը կամ անցորդը չի կարող նստել ու հանգստանալ որևէ գետակի ափին, քանի որ գարշահոտություն է փչում։ Կոլտնտեսային գյուղատնտեսները տագնապով նշում են, որ հողն աստիճանաբար ծածկվում է ջրի բերած քիմիական թափոնների սև շերտով, որը սպառնում է խախտել դարերով գոյացած նրա կառուցվածքը, իսկ մի քանի տարի հետո կարող է անդրադառնալ Արարատյան դաշտի ամենաթանկարժեք պարգևի՝ խաղողի և պտուղի համի ու որակի վրա։ Եթե Արարատյան դաշտում, ինչպես երևում է վերը բերած թվերից, մեկ լիտր աղտոտած ջուրը ապականում է 5—6 լիտր մաքուրը, ապա ավելի վատ է վիճակը հանրապետության մյուս վայրերում։ Օրինակ, Ոխչի գետն են թափվում Քաջարանի կոմբինատի կեղտաջրերը՝ տարեկան 18—20 մլն խմ, որը ապականում է ամբողջ գետը (380 մլն խմ), այլ կերպ ասած, մեկ լիտրը փչացնում է 19—20 լիտր։

Ինչպե՞ս որոշենք ժողովրդատնտեսական այս վնասի «գինը»։ Հաշվարկները ցույց են տալիս, որ հանրապետության ջրամբարներում կուտակված 1 խմ ջրի «գինը», այսպես կոչված տեսակարար կապիտալ ծախսերը կազմում են մոտ 50 կոպ., իսկ առաջիկայում նոր կառույցներում կհասնի 1 ռուբլու։ Այստեղից դժվար չէ որոշել, որ Մխչյանի ջրհան կայանի մատակարարած ջրի պայմանական գինը, մեկ տարվա հաշվով, կկազմի առնվազն 87,5 մլն (175×0,5), իսկ Ոխչիինը՝ 190 մլն ռուբլի։

Համեմատության համար նշենք, որ հանրապետությունում նախագծված մաքրման կայանների նախահաշվային արժեքը կազմում է շուրջ 120 մլն ռուբլի։ Այսպիսով, միայն նշված երկու օբյեկտների կողմից մեր տնտեսությանը հասցվող ուղղակի վնասը (չէ՛ որ կան նաև վնասներ, որոնց ուղղակի հաշվարկելն ավելի դժվար է. օրինակ, մարդկանց առողջությանը հասցվող վնասները) կազմում է 277 մլն ռուբլի, մինչդեռ հանրապետության տարածքում թափվող կեղտաջրերը մաքրելու համար անհրաժեշտ է ծախսել 2,4 անգամ ավելի քիչ գումար։ Ուրեմն, նույնիսկ զուտ տնտեսական նկատառումով չի կարելի արդարացնել այն երևույթը, որ մաքրման կայանների շինարարությունը հանրապետությունում ձգձգվում է տարիներով, իսկ դրանց տեխնիկան և տեխնոլոգիան դեռ շատ հեռու են ժամանակակից պահանջներից։

Մեր մտքով անգամ չի անցնում հողի տնտեսական գնահատման միջոցով կանխել առհասարակ բարձրարժեք հողերի դուրս գրումն ու օգտագործումը ոչ գյուղատնտեսական նպատակների համար։ Ասենք, որ դա հնարավոր էլ չի։ Մեր օրերում արդյունաբերության և տրանսպորտի զարգացումը, դրա հետ կապված ժամանակակից ճանապարհաշինության ընդարձակումը, տնտեսական առաջընթացի հոմանիշ են և անխուսափելիորեն կապված են գյուղատնտեսության հանդակների որոշ մասի դուրս գրման հետ, որքան էլ բարձրարժեք լինեն դրանք։ Սակայն խոսքն այն մասին է, որ այդպիսի դուրս գրումը լինի, նախ՝ գիտականորեն հիմնավորված, հիմնված լինի տարբեր հողերի դուրս գրման և շինարարության տարբերակների տնտեսական գնահատման հետ, և երկրորդ՝ հողի տնտեսական գնահատումը հանդիսանա տնտեսական քաղաքականության ակտիվ միջոցներից մեկը և ուղղված լինի գյուղատնտեսական շրջանառության մեջ գտնվող բոլոր հողերի արդյունավետ օգտագործման նպատակին, հանրային հողօգտագործման կարգավորմանը։

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

## ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԷԱԿԱՆ ՄԻՋՈՑ

Ամենուր՝ թե՛ քաղաքում և թե գյուղում մեր պատանիները հիացնում են հարազատներին, շրջապատի մարդկանց, ջերմացնում նրանց սրտերը։ Բայց առանձին ծնողների անտարբերության ու անպատասխանատվության, հնից եկող խոտելի սովորույթների, երբեմն նկատվող վատ օրինակի դեմ տարվող անբավարար պայքարի հետևանքով և այլ հանգամանքների բերումով առանձին տեղերում որոշ պատանիներ (որոնք ընդհանուրի համեմատությամբ չնչին թիվ են կազմում) շեղվում են ճիշտ ճանապարհից, դուրս մնում ընդհանուր հսկողությունից, թույլ տալիս հակահասարակական արարքներ։

Նմանների դաստիարակության և, առհասարակ, անչափահասների անխնամության ու անապաստանության վերացման, նրանց հանցավոր իրավախախտումների ու հակահասարակական արարքների կանխման գործում հսկայական դեր են խաղում ներքին գործերի մինիստրության շրջանային (քաղաքային) բաժինների մանկական սենյակները և հանրապետական ընդունիչ-բաշխիչ կայանը։ Դրանց նպատակն է դաստիարակչական հետևողական միջոցների կիրառմամբ պայքարել դեռահասների իրավախախտումների դեմ՝ այդ գործում ներգրավելով շահագրգռված հիմնարկ-ձեռնարկությունները։ Մանկավարժական կոլեկտիվների և ծնողների կապի պահպանմանը նպաստելը, պատանեկության շրջանում տարվող կազմակերպչական աշխատանքը մանկական սենյակների և ընդունիչ-բաշխիչ կայանի առաջնային պարտականությունն են։

ՆԳՄ շրջանային (քաղաքային) բաժինների մանկական սենյակների և ընդունիչ-բաշխիչ կայանի գործունեության ոլորտում կարևոր նշանակություն ունի սիստեմատիկ կապը կասկածելի վարքագիծ ունեցող պատանիների ու աղջիկների ծնողների, հանրակրթական և հատուկ դպրոցների, պրոֆտեխնիկական, միջնակարգ-մասնագիտական ուսումնարանների, դաստիարակչական-աշխատանքային մանկական գաղութների, հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների հետ։ Այդ ամենն արվում է անչափահասների հակահասարակական արարքների դեմ մանկավարժական պայքար ծավալելու նպատակով։

Անչափահասների հանցագործությունները կանխող և դաստիարակչական միջոցառումներ իրականացնող մանկական այս հիմնարկությունները, չնայած որ իրենց գործունեությամբ հետապնդում են միևնույն նպատակը, սակայն խնդիրներով ու միջոցառումների բնույթով տարբերվում են իրարից։ Այսպես, միլիցիայի մանկական սենյակները կոչված են նախ՝ անչափահասների անխնամության և իրավախախտումների դեմ իրականացնել նախազգուշական միջոցառումներ, երկրորդ՝ ժամանակավորապես անխնամ մնացած, ինչպես և կյանքի շիտակ ճանապարհից մոլորված անչափահասների նկատմամբ ձեռնարկել տարբեր բնույթի միջոցներ (վերադարձնել ընտանիք, համապատասխան աշխատանքի տեղավորել և այլն)։ Վերջին երկու տասնամյակում հետաքրքրական ու նպատակասլաց է դարձել մանկական սենյակների գործունեությունը։ Այժմ հանրապետության մանկական սենյակներում աշխատող տեսուչների 80 տոկոսից ավելին ունի իրավաբանական կամ մանկավարժական բարձրագույն կրթություն. իրենց գործին՝ մատաղ սերնդի դաստիարակությանը, նվիրված մարդիկ են նրանք։ Եվ այդ բնական է. միլիցիայի մանկական սենյակի տեսուչը պետք է օժտված լինի անչափահասի ներաշխարհը թափանցելու հոգեխույզ կարողությամբ, ունենա մանկավարժական նուրբ վարվելաձև, մատաղ հոգիների վրա ներազդելու, հեղաշրջելու ձիրք։

Միլիցիայի մանկական սենյակի լավ տեսուչը ջանում է գտնել պատիժը դաստիարակչական ներազդող միջոցներով փոխարինելու ձևեր ու միջոցներ, իրավաբանականն ու մանկավարժականը, ֆիզիկականն ու հոգեկանը զուգորդելու հնարներ ու մեթոդներ։ Այս առնչությամբ, խոսելով անչափահասների հետ տարվող աշխատանքի առանձնահատկությունների մասին, պրոֆ. Գ. Կոչկարյովը իր Աշխատում ենք և՛ երեխաների, և՛ ծնողների հետ գրքում նշում է, որ ամեն ոք չի կարող, ի վիճակի չէ աշխատել անչափահասների հետ։ Խոր է նրանց հոգին, դժվար է դեռահասներին միանգամից հասկանալ, բոլոր պարագաներում հնարավոր չէ ցանկացած ուղղությամբ ծռել նրան։ Միլիցիայի մանկական սենյակի տեսուչը և, ընդհանրապես, դեռահասի հետ գործ ունեցող ամեն ոք պետք է օժտված լինի մանկական ներաշխարհն զգալու, հասկանալու կարողությամբ, համառորեն աշխատելու, շատ բան համբերությամբ կրկնելու ունակությամբ։ Անշուշտ, այդ ամենը վերուստ չի տրվում և միանգամից ձեռք չի բերվում. այդպիսին դառնալու համար պետք է հետևողականորեն սովորել, փորձ ձեռք բերել, անսահման սիրել իր գործն ու պատանիներին։ Եթե պատանին շեղվել է, գնա՛ նրա հետևից կեռմաններով, ոչինչ, դա նվաստացում չէ։ Հետո նա քեզ, ոչ թե դու նրան կհետևես։

Միլիցիայի մանկական սենյակի աշխատակիցները, հատկապես ավագ տեսուչը, պետք է լինեն հմուտ մանկավարժ, քաղաքական խոր համոզմունքի, աշխարհայացքի տեր անձինք՝ օժտված չափահասների ու ծնողների—մարդկանց վրա ներազդելու, նրանց համոզելու ունակությամբ, կարողանան վերադաստիարակել հանցավոր արարքներ թույլ տված պատանիներին։ Դրա համար նրանց իսկ անհրաժեշտ է անդուլ սովորել, զարգանալ, կարդալ քաղաքական, իրավաբանական, մանկավարժական գեղարվեստական գրականություն, տիրապետել մարքս-լենինյան ուսմունքին, բազմակողմանի ծանոթ լինել գիտության ու տեխնիկայի այժմյան աննախադեպ առաջընթացին, այդ ամենին իրազեկ դարձնել հատկապես անչափահասների ծնողներին կամ նրանց փոխարինողներին։

Ուշադիր, համբերությամբ ուսումնասիրելով մանկական սենյակ բերված կամ իր հսկողության տակ գտնվող անչափահասի անձնական հատկանիշները՝ բնավորությունը, հոգեկան խառնվածքը, հակումներն ու ձգտումները, ընտանեկան, նյութական վիճակը, ընկերական միջավայրը, շրջապատը, նոր միայն տեսուչը կարող է ձեռնարկել համապատասխան նախազգուշական միջոցներ։ Այս տեսակետից հատկապես լավ են գործում Երևանի Սպանդարյանի և Շահումյանի շրջանների միլիցիայի մանկական սենյակների աշխատողները, որոնք քաջ գիտեն իրենց սպասարկած տերիտորիայում բնակվող անչափահաս քաղաքացիների մեծ մասին և ճանաչում են առանձին վտանգավոր արարքներ գործած անչափահասներին։ Վերջիններս գրանցված են մանկական սենյակում, հսկողության տակ են։ Այդ առումով լավագույն աշխատանքի օրինակ են ցույց տալիս Երևանի 26 կոմիսարների, Սպանդարյանի, Լենինյան և Ղուկասյանի, Ապարանի, Շամշադինի, Ստեփանավանի շրջանային մանկական սենյակները, ուր հանցագործ անչափահասների թիվը վերջին 4—5 տարիների ընթացքում զգալիորեն նվազել է։ 1971—72 թթ. հանրապետությունում գործնական միջոցներ են ձեռնարկվել անչափահասների հանցագործությունները ժամանակին կանխելու և նախազգուշացնելու նպատակով։

Հատկապես 1972 թ. ընթացքում անչափահասների շրջանում ծավալվող նախազգուշական աշխատանքում լավ արդյունքի հասան և Կիրովական քաղաքը, Արտաշատի, Իջևանի, Ամասիայի, Ղափանի ու Սիսիանի, Երևան քաղաքի Շահումյանի շրջանները։ Այլ էր պատկերը Հոկտեմբերյանի, Աշտարակի, Արտաշատի, Մարտունու շրջաններում, Կիրովական ու Հրազդան քաղաքներում, որտեղ 1967 թ. համեմատությամբ 1969—1970 թթ. հանցագործություն կատարած անչափահասների թիվն աճել էր։ Հատկապես անհանգստացուցիչ է, որ վերջին 5—6 տարիներին վերոհիշյալ շրջաններում զգալիորեն մեծացել էր նաև պարտուսից դուրս մնացած անչափահասների թիվը, մի բան, որ պետք է խիստ մտահոգի միլիցիայի մանկական սենյակների աշխատողներին։

Հարկ եղավ այդ օրգաններում մի անգամ ևս լրջորեն զբաղվելու ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1968 թ. նոյեմբերի 19-ի ՆԳՄ գործունեության բարելավման մասին որոշման կատարման հետ կապված խնդիրներով, վերը նշված եռ մնացող շրջանները ձեռնամուխ եղան անչափահասների շրջանում տարվող նախազգուշական աշխատանքների բարելավմանը։

Ուսումնասիրությունները հաստատում են, որ անչափահասների հանցավոր արարքների կանխման գործում մեծ է շեֆական կազմակերպությունների դերը։ Մինչդեռ չափազանց թույլ է հանրապետության մի շարք մանկական սենյակների և ուսումնական օջախների ու հիմնարկ-ձեռնարկությունների կապը։ Տեղին է նշել, որ որոշ հիմնարկ-ձեռնարկությունների

ղեկավարներ, կոմերիտական աշխատողներ, արտադրամասի պետեր ու բրիգադավարներ անչափահաս բանվորների հետ հանդիպում են միայն աշխատապրոցեսում, ասես թե նրանց ամենևին չի հետաքրքրում անչափահասների արտաաշխատանքային առօրյան։ Նրանք չեն լինում բանվորական հանրակացարաններում, երիտասարդների համար չեն կազմակերպում զեկուցումներ, կոլեկտիվ կինոդիտումներ և այլն։ Պակաս կարևոր չէ նաև անչափահասների ուսման և դաստիարակության առումով դեռևս անբարենպաստ պայմաններում գտնվող ընտանիքների հայտաբերումը, այդպիսիների նկատմամբ համապատասխան միջոցառումների գործադրումը։

ՆԳՄ շրջանային բաժինների մանկական սենյակները մեծ անելիքներ ունեն պայմանական ուղղիչ աշխատանքի դատապարտված, վարչական պատասխանատվության ենթարկված և անչափահասների դաստիարակչական-աշխատանքային գաղութներից վերադարձած դեռահասների հայտաբերման, հաշվառման մարզում։ Այս գործում, սակայն, կան զգալի թերություններ, որոնց հետևանքով և որոշ անչափահասներ դառնում են կրկնահանցագործ։ 1967—1968 թթ. ընթացքում ազատազրկման հետ չկապված պատժատեսակների դատապարտված և դաստիարակչական աշխատանքային գաղութից վերադարձած դեռահասների միայն 50 տոկոսին են հաշվառման և հսկողության վերցրել մանկական սենյակները։ Դաստիարակչական-աշխատանքային գաղութի աշխատողները ՆԳՄ բաժիններին երբեմն ժամանակին չեն հայտնում գաղութից ազատված ու բնակավայր վերադարձած անչափահասների մասին։ Մինչդեռ այս գործի պատշաճ կազմակերպումը, գաղութից ազատված անչափահասների նկատմամբ հսկողության իրականացումը մեծ չափով կնպաստեն կրկնահանցագործությունների կանխմանը։ Գաղութից վերադարձած անչափահասների կրկնահանցագործությունն ինքնին վկայում է գաղութում տարվող դաստիարակչական աշխատանքի ցածր մակարդակի մասին։ Չափազանց մեծ նշանակություն ունեն նաև անչափահասների հանցագործությունների և իրավախախտումների դրդիչների ու կազմակերպիչների հայտաբերումն ու նրանց պատասխանատվության ենթարկելը։

Ինչպես տեսնում ենք, բազմաբնույթ է միլիցիայի մանկական սենյակների գործունեությունը, իսկ դրա ընդգրկման ոլորտը՝ լայն ու համակողմանի։ Մանկական սենյակի տեսուչը պետք է լինի այնտեղ, ուր անչափահասն է— դպրոցում, տեխնիկումում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում, կինոթատրոններում, զբոսայգիներում, մարզահրապարակներում... Նման վայրերում մանկական սենյակի տեսչի ուշադրության կենտրոնում պետք է լինեն, առանձնապես, կասկածելի վարքագիծ ունեցող անչափահասները, իսկ պրոֆիլակտիկ միջոցառումների նպատակը՝ բնականաբար, նրանց կոլեկտիվին ձուլելն ու վերադաստիարակելն է։

Ինչպես ասացինք, դժվար է գերագնահատել մանկական սենյակներին ցույց տրվող շեֆական օգնության դերը՝ անչափահասների հանցավոր արարքների կանխման, նրանց դաստիարակության գործում։ Ահա մի բնորոշ օրինակ. 1971 թվականի նոյեմբերի 15-ին տասնչորսամյա մի պատանի գրանցվել է 26 կոմիսարների շրջանի 2-րդ մանկական սենյակում (որի ավագ տեսուչն է Ազատուհի Մովսիսյանը)՝ դպրոց չհաճախելու և մանր գողությամբ զբաղվելու համար։ Երեխայի հայրը լքել էր ընտանիքը, մայրն աշխատում էր և ոչ մի ազդեցություն չուներ պատանու վրա. Նրա շեֆությունն ստանձնեց հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտում աշխատող կոմերիտական Սերյոժա Միքայելյանը։ Մեկ տարի անց անճանաչելի շրջադարձ կատարվեց պատանու կյանքում. նա սկսեց հաճախել դպրոց, այժմ օրինակելի, առաջադեմ աշակերտ է և մոր օգնականը՝ տնային գործերում։

Շեֆական աշխատանքի հիանալի օրինակ են տալիս հատկապես մեր հանրապետության բուհական կոմերիտական կազմակերպությունները։ Ահա մի այլ օրինակ. 1967 թ. ապրիլի 3-ին Շահումյանի շրջանի մանկական սենյակ է բերվում մի պատանի։ Նրան վերցնում են հաշվառման ու հսկողության։ Դպրոցից-դպրոց է տեղափոխվել նա ու մի օր էլ փախել տնից։ Մանկական սենյակի տեսուչ Ս. Աղաջանյանը, ուսումնասիրելով նրա ընտանեկան պայմանները, դիմում է տղայի հոր հիմնարկությանը։ Տեսչի միջամտությամբ ու խնդրանքով պատանու վերադաստիարակության շեֆությունն ստանձնում է նույն շենքում բնակվող, պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետի մի ուսանող։ Շուտով տղան վերադառնում է հայրական օջախ, սկսում կանոնավոր դպրոց հաճախել, ամեն օր դասերը պատրաստել։ Դպրոցի մանկավարժական կոլեկտիվն այսօր գովասանքով է խոսում նրա մասին։

Հսկայական է մանկական սենյակի դերը նաև փողոցային երթևեկության կանոնների պահպանման գործում։ Մանկական սենյակի տեսուչը դպրոցում՝ աշակերտության, հիմնարկ-ձեռնարկություններում՝ ծնողների համար պետք է հաճախակի զեկուցումներ, զրույցներ կազմակերպի այդ հարցերի շուրջ։

Անչափահասների հակահասարակական արարքների կանխման գործում, ինչպես նշեցինք, մեծ անելիքներ ունի հանրապետության ՆԳՄ ընդունիչ-բաշխիչ կայանը, որը կոչված է իր խնա-



մակալության տակ առնելու և դաստիարակելու այն բոլոր անչափահասներին, որոնք դժբախտ դեպքերի բերումով դարձել են թափառաշրջիկ, հեռանալով ընտանիքից՝ հանցագործություն են կատարել և փախուստի մեջ են։

Մանկական ընդունիչ-բաշխիչ կայանը ևս իր գործունեության ընթացքում սերտ կապ է պահպանում ընտանիքի և ծնողների, հիմնարկ-ձեռնարկությունների, պրոֆտեխնիկական ուսումնարանների, հատուկ դպրոցների, բուժ-սանիտարական հաստատությունների, գիշերօթիկ դպրոցների, միլիցիայի մանկական սենյակների, մանկական դաստիարակչական-աշխատանքային գաղութի, ՆԳՄ շրջանային (քաղաքային) բաժինների, մանկատների, միութենական հանրապետությունների մանկական հաստատությունների, առանձին քաղաքացիների հետ։

Խնամազուրկ, հսկողությունից դուրս մնացած անչափահասը մանկական ընդունիչ-բաշխիչ կայանում պահվում է նրա ընդունման օրից մինչև մեկ ամիս։ Այդ ժամանակամիջոցում կայանի ղեկավարությունը պարտավոր է հայտնաբերել անչափահասի ծնողներին (փոխարինողներին), կամ այն մանկական հաստատությունը, որտեղից դուրս է մնացել կամ հեռացել է դեռահասը և հայտնել նրանց՝ երեխայի կայանում գտնվելու մասին։ Կայանում գտնվելու ժամանակամիջոցում երեխան ստանում է ձրի սնունդ, հագուստ, բժշկական օգնություն, ապաստան, մանկավարժ-դաստիարակները համապատասխան դասարանի ծրագրային նյութերի սահմաններում անց են կացնում ամենօրյա 4—5-ժամյա պարապմունքներ, կազմակերպում զրույցներ ու զեկուցումներ, կինոդիտումներ ու ներկայացումներ, կուլտուրական հանգստի զանազան միջոցառումներ՝ միշտ հաշվի առնելով հավաքագրված երեխաների հոգեկան խառնվածքը, տարիքային առանձնահատկությունները, բնավորությունը։ Օրինակ՝ 1969—1970 թթ. հանրապետական մանկական ընդունիչ-բաշխիչ կայանը կազմակերպել է զրույց Վ. Ի. Լենինի, Մ. Գորկու, Ե. Չարենցի մանկության ու պատանեկության, նրանց քաղաքական-հասարակական և գրական գործունեության շուրջ, ցուցադրել Ա. Մակարենկոյի մանկավարժական աշխատանքի, նրա ղեկավարած մանկական գաղութներին նվիրված ֆիլմեր, կազմակերպել հարց ու պատասխանի, սրտաբաց զրույցի երեկոներ և այլն, որոնք իրենց իսկ՝ պատանիների ու աղջիկների խոստովանությամբ, շատ հետաքրքրական և ուսանելի են եղել։

Կայանում ամենակարևորը դաստիարակչական և բժշկական միջոցառումներն են, որոնք իրականացվում են դաստիարակների և բուժաշխատողների կողմից՝ ավագ դաստիարակի և բժշկի գլխավորությամբ, նրանց ցուցումներով։ Նրանք են իրականացնում սանիտարա-հիգիենիկ և գեղագիտական-դաստիարակչական միջոցառումները։ Հատկապես մեծ են դաստիարակ-մանկավարժների դերն ու ազդեցությունը, նրանց անձնական օրինակը։ Դաստիարակ-մանկավարժների՝ կայան բերած անչափահասների հետ մանկավարժական նուրբ մոտեցման, կոլեկտիվիզմի, ընկերասիրության, ազնվության, շիտակության, աշխատասիրության, մեծերի նկատմամբ հարգանքի, օրինակելի կենցաղի մասին կազմակերպվող զրույցների նպատակը պետք է լինի՝ վերադաստիարակել մոլորված անչափահասին, դարձի ճանապարհ հարթել դեպի առողջ միջավայրը, դպրոցական ընկերների շրջապատը։ Մանկավարժ-դաստիարակը պետք է ջանա հոգեբանական նուրբ մեթոդներով վերադաստիարակել ինքնասիրությունը վիրավորված, ընկճված, ծնողներից ու հարազատներից հիասթափված անչափահասներին, նրանց համակել ապագայի նկատմամբ հավատով ու լավատեսությամբ, հաստատակամությամբ։ Դրանով իսկ նա կկարողանա ներգործել անչափահասի վրա, ստիպել զգալու իր տխուր անցյալի անիմաստությունը։ Արտաքուստ հեշտ թվացող այս վերափոխումը, սակայն, շատ մեծ դժվարությամբ է իրականացվում։ Շատ կարևոր է անհատական մոտեցումը անչափահասի նկատմամբ, հոգատարությունը, պատժի տեղին գործադրումը։ Պատիժը, սակայն, չպետք է ինքնանպատակ լինի։ Այս առումով տեղին է հիշել Մակարենկոյի այն տեսակետը, թե անչափահաս գողի և ռեցիդիվիստի կաշին քերթելով իսկ չես կարող ո՛չ իր սխալն զգալ տալ, ոչ էլ ճիշտ ճանապարհի վրա կանգնեցնել։ Իսկ մանկավարժակա՞ն մոտեցումը, դաստիարակչական հնարնե՞րը, նրբորեն պատանու հոգու խորքը թափանցե՞լը— դրանք միջոցներ են, ամենակարող զենք, որ ծնկի են բերում ցանկացած «անուղղելի» հանցագործին։ Եթե դիտողությունը, նկատողությունը, նույնիսկ հարկադրանքը մերկապարանոց են, եթե դրանք չեն ուղեկցվում մանկավարժական, հոգեբանական, դաստիարակչական միջոցառումներով և չեն հետապնդում վերադաստիարակության նպատակ, ապա դժվար որևէ դրական ներգործություն ունենան։

Չի կարելի պատիժները չարաշահել. դրանք չեն կարող բարոյական դաստիարակության հիմնական մեթոդների դերը խաղալ։ Սակայն, եթե կոլեկտիվում առաջացած կոնկրետ իրադրությունը թելադրում է պատժի այդպիսի ձև գործադրել, պետք է այդ անել վճռականությամբ և հետևողականությամբ (տե՛ս Մանկավարժության դասախոսությունների դասընթաց), Երևան, 1969, էջ 468)։

Մանկական աշխարհը չափազանց բարդ է ու խոր։ Ուստի, անհրաժեշտ է, որ մանկական ըն-

Գինը 25 կ.:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼՅԱՐԴԻ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲՈՒԺՄԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴ

Հունգարական մի խումբ բժիշկներ աշխատում են լյարդի զանազան հիվանդությունների բուժման նոր մեթոդի վրա։ Դրա էությունն այն է, որ հիվանդ լյարդը ժամանակավորապես «անջատում» են մյուս օրգաններից և նրա ֆունկցիաները հանձնում ուրիշ օրգանիզմից վերցված «փոխարինող» լյարդին։ Մինչ օրս օգտագործվել է սպանդանոցից բերված խոզի լյարդը։ Այն «միացվում» է մարդու օրգանիզմին, մինչև բժիշկները դեղամիջոցներով կամ վիրահատությամբ բուժում են հիվանդ լյարդը։ Ամենայն հավանականությամբ այդ մեթոդը կկիրառվի նաև այլ օրգանները բուժելիս։

## ԵՐԹԵՎԵԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԱՎՈՐԻՉԸ

Օմսկում փողոցային երթևեկությունը կարգավորում է էլեկտրոնային հաշվիչ մեքենան։ Այնտեղ այլևս խաչմերուկներում կանգնած չէ պոստային միլիցիոները, որը կարգավորում է միայն իր տեղամասի երթևեկությունը՝ անտեղյակ հարևան, մանավանդ քաղաքի հեռավոր տեղամասերի իրադարձություններին։

Երթևեկության նոր, էլեկտրոնային կարգավորիչը, որը կոչվում է «Քաղաք», բազում տվիչների ու ավտոմատների միջոցով հավաքում և կենտրոնին է հայտնում տեղեկություններ խաչմերուկներում, հրապարակներում, փողոցներում տրանսպորտի շարժման ինտենսիվության, կուտակման, խցանման մասին։ Կենտրոնի վահանակի վրա քաղաքի տրանսպորտի շարժման վիճակի ամբողջական պատկերն է, որը հնարավորություն է ընձեռում որոշելու շարժման ամենահարմար ուղիներն ու արագությունները։ Կարգադրությունները վահանակից հասնում են արագացույցներին և լուսանշաններին։

«Քաղաքը» բաղկացած է տիպային մոդուլներից, որոնցից յուրաքանչյուրը հրսկում է առանձին տեղամասի։

## ՉՔԱՅՈՂ ՓԱԹԵԹԱՆՅՈՒԹ

Սովորական պոլիէթիլենը և փաթեթավորման այլ նյութեր բնական պայմանների ազդեցությամբ չեն քայքայվում և աղտոտում են շրջապատը։ Շվեդական «Ակերլունդ էնդ Ռաուզինգ» ֆիրմայի լաբորատորիան, ավելացնելով մի քանի քիմիական նյութեր, ստացել է պոլիէթիլենային փաթեթանյութ։ Որոշ ժամանակամիջոց անց այն փխրունանում է և խոնավության, անձրևի ու քամու ներգործությամբ փոշիանում։

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԲՈՒԺՔՈՒՅՐԸ

Վարշավայի բարձրագույն տեխնիկական դպրոցում ստեղծել են բժշկական մի նոր սարք՝ կարդիոմոնիտոր։ Այն միաժամանակ վերահսկում է հիվանդանոցում գտնվող մի քանի հիվանդների սրտի գործունեությունը։ Սրտի աշխատանքի խանգարման դեպքում սարքն անմիջապես ազդանշան է տալիս։

## ՌԵՆՏԳԵՆ՝ ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑՈՎ

Արևմտագերմանական «Սիմենս» ֆիրման նախագծել է մի սարք, որի օգնությամբ ռենտգենյան լուսանկարները կարելի է հաղորդել հեռուստացույցով։ Ամենաարժեքավորն այն է, որ այդ դեպքում կարելի է ջնջել այն, ինչ նշանակություն չունի ախտորոշման համար և առանձնացնել կարևորը։

## ԹՈՒՂԹ ՏԻԵԶԵՐՔԻ ՀԱՄԱՐ

ԳԴՀ-ում ստեղծվել է թղթի մի տեսակ, որը չի այրվում նույնիսկ թթվածնի բարձր պարունակություն ունեցող մթնոլորտում, իսկ վակուումի մեջ չի փխրունանում։ Նոր թուղթը լավ է վերցնում ներկը և կարելի է դրանից քարտեզներ ու մատյաններ պատրաստել տիեզերանավերի համար։